Hovhannes V, Catholicos of Armenia, d. 925

554

Patmutiwn Hovhannu Katoghikosi

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ
Տ. Տ. ԳԷՈՐԳԱՅ
ՆՈՐԸՆՏԻՐ ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ
ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

464 p.

ՀՐԱՄԱՆԱՒ

Տ. Տ. ԵՍԱՅԵԱՅ ՍՐԲԱԶԱՆ
ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ
ԵՒ ՊԱՏՐԻԱՐՔԻ Ս. ԵՐՈՒՍԱՂԷՄԱՅ

ԵՒ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍՈՅ
Տ. Տ. ՊՕՂՈՍԻ ՍՐԲԱԶԱՆ
ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ



Ի ՏՊԱՐԱՆԻ
ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՅ Ս. ՅԱԿՈՎԲԵԱՆՑ
ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

—1867—

# ԱԶԴ

Երկրորդս այս տպագրութիւն պատմութեան Յովհաննու կաթողիկոսի եղեւ ի վերայ վեց գրչագիր օրինակաց, յորոց երկուքն համաձայնէին իբր ի միոյ բնագրէ առեալ, իսկ միւս չորեքին օրինակք, որոց այլ եւ այլ էին նախագաղափարք, թերեւս եւ նօտրագիրք ամենայն եւ ոչ հնագոյնք ժամանակաւ, այլ յընտիր օրինակաց գաղափարեալք էին, որոց եւ մեք հետեւեցաք յերկրորդումս յայս տպագրութեան ի ստորին լուսանցսն նշանակելով զտարբերութիւնս: Երկուք եւեթ յայսցիկ ունէին բաժանմունս գլխոց, այլ տարբերք ի միմեանց. իսկ զվերնագիրս գլխոցն ունէր միակ օրինակ, յորմէ առեալ եւ մեք եդաք:



ուածիւ խորհրդոց պատկանաւորեցին՝ յարձանագրութիւնս բանից մատենագրելով զնախնական պատմութիւնն, զոր յաւէտ պատուասիրելիք և փափաքելիք և կենցաղօգուտք ինձ իմանին։ Այսպէս և ես ատանօր զանձն 'ի ներքս արկի 'ի կարգ բանիս՝ որ առաջի կայ ինձ ասել. ոչ միահաւած հպարտութեամբ ըստ իմում ինչ կամի, այլ փառն զի ծանեայ զաւ 'ի յինէն խնդրողացն զանդուլ նոցայն հայւոյն շարժմունս իմացուածոց, այնուհետեւ հարկեալ եմ 'ի նաւապետէ իմեմնէ՝ սրախորհեցայ Թիափոք 'ի մակոյկի ձառիս, և զայս պատմութիւն առնել տաղակացեալ տագնապեցայ։

Այսպէս ոչ ըստ գեղջկաց անարուեստից երկրորդել զայն ինչ՝ զոր նախ քան զմեզ քաջքն և բանաստեղծք արգոյակայք և զարմանալիք զարժանի բան պատմութեանն անսուտ 'ի վերուստ արձանագրեցին զյայտապատումն իրս Թագաւորաց, և զպայազատութիւն իշխանաց, և զհանգամանս պատերազմաց, և զշինանիստ շինուածս քաղաքաց և գաւառաց, գեօղից և գերդաստանաց, և զգործս արեաց և անարեաց, կամ զխռովութեանց և խաղաղութեանց. զի մի առզայաբար ինչ յանդգնեալ զմիանգամ գր-

ընտալոն երկրորդեցից, և դքերմողացն ա-
րաւթիւնս տասպալեցից, և զայնս մերձա-
նալոյ ծիծաղելիս Յարկացուցից :

Եւ արդ՝ մի եւս 'ինձ այլ յետս յառա-
ջաբանութեանս եղիցի ծախեալ զժամանա-
կըս, վասն զի ծերութիւն ցաւագին մահ
առ դուրս պատրաստ ունի, և տագնապ
տարակուսիցս հալածեալ տոյ պատմել զանցս
անցից ալեկոծիցս, և անհնարին խռովու-
թեանց հասելոց կայսերոյ զմեզ : Արդ՝ այ-
սուհետեւ յորահետ և յաղքատիմաց՝ քան
թէ խնդրս մնաց յառաջ ձգեցից բան երա-
գնադիր դարի գրչութեանք : Եւ նախ՝ զգր-
բովք հարցն եկեալ բառ նախապատում
նոցայն հանդիսի ծանօթս կայուցից սակա-
ւուք[1] ինչ զնախնական սկզբունս բոլոր ազ-
գաց և ազանց՝ որ յորդւոյն Նոյի, և ապա
զմերն Յաբեթ յերկուցն 'ի բաց հատեալ
որոշեալ : Եւ թէ ոչ մերս միայն ազգ 'ի Նո-
մանէն, այլ և բազում եւս ցեղից արմատ
նա Հանաչիւր : Եւ ապա ըստ բոլոր Յաբե-
թեան ցեղապատմութիւնս վայր իջեալ մինչ-
'ի մերն Թորգոմ, և այն արասքս ինոց բա-
նից թողեալ, զծննդոցն՝ որ ազգաբանու-
թիւն սուղ ինչ շարայարեցից . և թէ ոք

(1) Ամենայն որք . անհին սակաւուս :

'ի նոցանէ չհնութեան պատրաստեալ, և կամ որք քաղաքական և բարեզարդեալ բարուց, և կամ որք ոմանք 'ի նոցանէ նախ սկիզբն գըտան թագաւորելոյ 'ի վերայ մեր, և կամ թէ զինի նոցա Վաղարշակ պարթեւ թագաւորէ յանուն Թորգոմեայ, և զինի նորուն սերունդք մեր միապետեալ: Եւ թէ 'ի ժամանակս նոցա սփռեալ տարածեցաւ ընդ ոլորտս երկրի քրիստոնէական կարգ հաւատոյ սրբոյ, և առաւել եւս 'ի հայկական գլոհք, 'ի Բարդողիմէ առաքելոյ որ մի է յերկոտասանիցն, և 'ի Թադէոսէ առաքելոյ որ յեօթանասնիցն, որք և վկայեցանն իսկ 'ի Քըրիստոսէ Փրկչէն մերմէ աշխարհիս մերոյ քարոզք և վարդապետք: Ընդ որոց և զսուրբ Լուսաւորիչն մեր Գրիգոր զինի չարաչարեցից սակաւուք ինչ բանիւ (1), որ եկեղց և բավանդակեաց իսկ զառաքելական քարոզս նոյա, 'ի լոյս ածեալ անցուցեալ զթորգոմեան ազն 'ի խորին կռապաշտութենէ չարութէ: Զկնի յարադրելով զորդիս և զթոռունս նորա՝ որք արժանի գտան կալ յաթոռ սրբութե նորա. այլև զայլ եւս զյաջորդս նոցունց մինչեւ ցայսօր ժամանակի, և որ ինչ 'ի նոցանէն և կամ յայլոց ոմանց յաւուրս նոցա

(1) Եւ․ օրէ․ սակաւ ինչ:

կացք և հաշտակաւորք՝ հարուստք և անուա-
նիք և քաջք յայտնեցան 'ի նորին աւուրս ։ Պարծեալ և զարմանալի շինուածք որ 'ի հարաւա-
կողմն Հայաստանու հասին հասարակաց հալա-
ծանք, որոց վկայութիւն և սատակումն և սով
և գերութիւն և բնաջինջ լինել ոլորտեցի աշ-
խարհին Հայոց ։ Այլ և զուարճանաւոր մահ
արքային Սմբատայ ըստ մարտիրոսական հան-
դիսից 'ի բազմախողխող երկաթոյն խանդէ-
ղեան ։ Ուր կամ թէ նախ քան զզրաւումն (1)
կենաց թագաւորին, զխայրդ տաճկանն հնար-
իմաց չարիւ արկանէր սուր թշնամութեան
ընդ արքային Սմբատայ, և ընդ մեծ իշխանն
Գագիկ քեռորդի նորուն, թագ նմա կա-
պեալ և հակառակ թագաւորեցուցեալ ։ Կամ
թէ՝ զխայրդ յետ մահուան արքային Սմբա-
տայ երբեքեան միանդամայն թագաւորեն՝
Գագիկ Արծրունի, և Աշոտ որդի Սմբա-
տայ, և համանուն նորա որդի սպարապետին
Շապհոյ՝ հակառակ ընդդէմ միմեանց ։ Կամ
զարդէս արքայորդին Աշոտ քուէր գնայր առ
կայսրն Կոստանդին, և գեղեցկապէս 'ի նմա-
նէն զահընկալեալ վայելչապէս գերակայու-
թեամբ՝ բազում ընծայիւք բարեմասնութեան
մեծ և յաղթական յիւրական աշխարհն ։

(1) Երկու օրի · զզրկումն ։

և 'ի Քամայ, զմերն Յաբեթի ըստ կարգի բանիս սակաւուք ինչ յայտարարութեամբք ասացից: Վասն զի և ոչ իսկ պիտոյ է այժմու ճառիս, այլ այլում տեղւոյ և ժամանակի թողլի է:



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՅՈՎՀԱՆՆՈՒ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

## ԳԼՈՒԽ Ա.

### Յաղագս ծննդոց Նոյի։

Յետ երկնասաստհանացն հեղեղաց, եւ անդնդաարտաքոյ (1) ջրահեղձն լինելոյ բոլոր շնչաւորաց, եւ յետ ապականեալ կամաւ նաւարկութեանն Նոյի եւ 'ի ցամաք ելանելոյ 'ի Հայս ըստ հրամանի Տեառն՝ որդւովք եւ կանամբք հանդերձ եւ այլովք եւս ընդ նորին անբան կենդանեօք, սկիզբն ապա դարձեալ առնու աստուածային այցելութեամբն աճելութիւն ծննդոց երկրի։ Եւ 'ի միջոյն Յաբեթէ նախ ծնանի որդի եւ անուանի Գամիր, ուստի 'ի նորուն անուն աշխարհ կալուածոց նորա կոչեցաւ Գամիրք։ Զկնի ծնանի Մագոգ, եւ սերունդք Մագոգայ՝ Կեղտք եւ Գաղատացիք։ Եւ ապա զՄադայ, որ զաշխարհ տոհմի իւրոյ յիւր անուն Մարա

(1) Ձեռ. օրէ. անդնդաարտաքոյն։

անուանեաց։ Եւ տարս զԹոբէլ, յորմէ Թետալք ազգն անուանիւր, և զՄոսոք՝ որ պայազատէր զՄ խուրթկաց։ Իսկ վեցերորդ զԹիրաս՝ յորմէ մերն իսկ Ասքանազ, և Թորգոմ՝ որ զմխապետեալն իւր աշխարհ յիւր անուն յորջորջէր Թրակացիս, և զԲիտիիմ՝ որ զՄակեդոնացիս նուաճէր ընդ ինքեամբ։ Իսկ որդիք Թիրասայ Ասքանազ՝ յորմէ Սարմատք, և Ռիփատ՝(1) յորմէ Սորամատք, և Թորգոմ՝ որ ըստ Երեմիայ զԱսքանազեանս գունդ յիւր անուն նուաճէր, տուն Թորգոմեայ(2). զի նախ Ասքանազ իսկ էր յիւր անուն սահմանեալ զձերաշխեալս ըստ երիցութեանն սակի, զոր յիւրումն տեղւոջ ասացից։ Իսկ Յաւանայ նախնւոյն Յունաց Եղիշա՝ յորմէ Սիկելացիք և Աթենացիք, և Թարսիս՝ յորմէ Վիրք և Տիւրենացիք, և Կիտիիմ՝ յորմէ Հռովմայեցիք։ Այլ սատ թէպէտ և ՚ի հարկէ շարադրական բանս յառաջ բերաւ բոլոր ծննդոցն Յաբեթի պատգամատութեան, սակայն չափ և եթ. զի սուղ ինչ յայտարարութեամբ ծանօթացին քեզ հարազատութիւնք գրոհի մերոյ ՚ի միոյ միայնոյ ծննդոց գոլ այսչափ նահապետութեց և ազգաց։ Զի թէ ոչ բան ինչ յայտնին և

(1) Եղնո օրի. Եւրիփատ։ (2) Եղնո օրի. Թորգոմեայ։

ոչ յայտնութիւն ինչ իրիք եղելոյ բացերեւակի քեզ լինէր լեալ, 'ի տարակուսանս զքեզ հատեալ տարեալ անցուցեալ մղէր, և ինքնահաճոյ արդարեւ 'ի միտս և 'ի բանս և 'ի գործս զիս դսլովեալ։

Եւ արդ՝ եթէ զաջնութիւնս իմ 'ի շնորհակալութիւս քեզ ընկալցիս, ով ընթերցասէրդ (1), և պարտ վարկցիս յայլոցն հարազատ ազգացն 'ի բաց զիս տարեալ տրոհեալ, որ ոչ իսկ փոյթ այժմու բանիս, և միայն զժամանակս և եթ ծախէ, 'ի մերն Թորգոմ ըզբանիս իմոյ դարձուցից ոճ, ըստ միանգամ առ յինէն ճառելոյն (2)։ Թիրաս որ երրորդ էր Յաբեթէ՝ ծնաւ երիս որդիս, զԱշքանազ, զՌիփաթ, և զԹորգոմ. և վասն զի զԹորակացիս ինքեան անձին առանձին Թիրաս պայազատէր, պարտ վարկաւ՝ զի զայլ եւս վիճակեալն իւր սահմանս յերիս հատուածս բաժանեալ տայցէ 'ի կալուածս որդւոց իւրոց. ուստի այպս իմաստն զգործն կատարէր։ Եւ Աշքանազեայ՝ որ նախ զմերազնեայս յիւր անուն Աշքանազեան անուանեաց, զՍարմատս նմա պայազատէր. իսկ Ռիփատայ զՍորամատս։ Իսկ Թորգոմայ ըզ-

(1) Ցեւլ. օրի. ոսկեաւէ՝ ով ընթերցասէրդ և պարտ վարկցիս։
(2) Մի օրի. ճառելոցն ։

մերաձնեալս սեպհականեալ, յորում տի-
րեալ՝ զԱսքանազեանն նախ անուանեալ յիւր անուն Նուաճէր տուն Թորգոմայ։

Արդ՝ այսպէս խմա Ասքանազեան զմեզ և տուն Թորգոմայ, և այսպէս. քեզ հաւաստա- մացին որ վասն նահապետութեան ազգիս մերոյ է բան, Թէպէտև ոմանք այլազգաբար, և ոմանք այլաբանաբար զրուցաց վէպս տան։ Իսկ եԹէ աստուածայինն Մովսէս զմերոց ասէ զմիոյ միոյ ոչ մերագրէ զժամանակս, անպարժանս իմն համարեալ բանի պատմուԹեան, սակայն ըստ ազգաբանուԹեանն Սեմայ զմերն Յաբեթ կցուագատեալ՝ գտանին մինչև ցԹորգոմ, և ցանկիգըն[1] պայազատուԹեան որդւոյ նորա Հայկայ՝ ամք ն (400)։ Իսկ Յաբեթէ մինչև 'ի Նախնին մարդն Ադամ՝ ամք սմխբ (2242)։ Արդ՝ որպէս մերազոյնն ճառեցաւ, աստուածային գիրք մինչև ցմերն Թորգոմ մեզ բացատրեալ ըն- պատմուԹիւնս, անպարժանս փարկաւ զյիշատակ ծննդոց նոցա բանիւ տարորոշել, Թէ որով կամ ուսմամբ, կամ զխարդ, կամ ոյք ոմանք ափրեցին աշխարհիս Հայոց, կամ ուստի նախարարուԹիւնք սորա միապետեցան։

Այլ ոմն յազգէ Ասորի՝ Մարիբաս Կա-

(1) Զորս օրի՞ ցանկղեան։

տէնս անուն, հրամանաւ մերոյն Սաղարշա-
կայ երթեալ ՚ի դիւանս Թագաւորացն Պար-
սից. որ ուշիմ և փարժ էր միօք՝ քաղդէա-
ցէն և յունարէն դպրութեամբ, ՚ի խոյզ և
՚ի խնդիր եղեալ գտանէ անդ մատեան մի
վաւերական, զոր հրամանաւ Աղէքսանդրի
որդւոյ Նեքտանեբայ ՚ի քաղդէացի գրոց՝(1)
՚ի յոյն փոխարկեալ էր. որ թէպէտ զբա-
զում ազգաց զրոյցս հարստապէս ՚ի նմա ծա-
խացուցեալ էր, սակայն նա զայլոյն քերթե-
ւ պնդաս պարապոյ լքեալ թողեալ, զմիայնոյ
մերոյս գրոհի հանեալ բերեալ մատուցա-
նէր Սաղարշակայ։ Եւ այնուհետեւ յայնմանէ
ծանուցաւ մեզ մերոյն անվրէպ զրուցաց հա-
ւատալիք, և խմացեալ գիտացաք զարի սկսա-
ապոց ախոյեանն գեղեցիկ զՀայկն գոլ որդի
Թորգոմայ, և Նախնի նահապետ և սերունդ-
ազգի մերոյ։ Եւ զայն զոր գիտէ քանն ընդ
վէթխարի սկզբիցն միաբանեալ գործել ըղ-
բարձրաբերձ ամբարտակին շինուածս ամ-
բարտաւանութեանն, որ կարծեին կարել
կատարել զամբարտաւանութեննախորհուրդ։
Եւ ըստ աստուածայնոյն պատուհասութեանց՝
հողմ ահագին գոչցես քան աստուածային
հրամանաւն շնչեալ. զքուրդն բարձրաբերձ

(1) Եւս. Ժէ. գրչ.։

'ի վայր հոսեալ կործանէր, զնոցայն ցուցեալ մնավաստակ տքնութիւնս ։



## ԳԼՈՒԽ Բ.

### Յաղագս ժողովրդեանն Հայկայ ընդդէմ Բելայ, և սերնդոց նորա ։

Յայնուհետեւ ապա Նեբրովթն որ է Բէլ՝ խրոխտաբար ձեռներէց լեալ. և 'ի վեր զինքն ամբարձեալ միապետել հնարէր առ հասարակ 'ի վերայ ազգացն և սկայիցն ։ Իսկ մերոյն Հայկայ ուժեղակաբար[1] ընդվզեալ, և արտաքս զինքն 'ի հնազանդութենէ Բելայ բերեալ, գայ հասանէ վաղվաղակի յայս աշխարհ մեր՝ Արամանեկաւ որդւով իւրով, զոր ծնաւն 'ի Բաբելոն. և այլ եւս դստերբք և թոռամբք և ընտոծնեօք և եկօք յարելովք 'ի նա ։ Իսկ Նեբրովթն որ է Բէլ, զկնի հետամտեալ Հայկայ հանդերձ իւրովքն, եւս հրոսակօք արամբք կորովեօք յաղեղն և 'ի սուսեր և 'ի տէգ նիզակաց, և բախեալ 'ի դիմի հարեալ միմեանց 'ի ձորադաշտակի միոջ ահագին իմն դղրդմամբ,

(1) Երեւ. օր. ուժեղաբար ։

իբրեւ ընդ զատ 'ի վայր հեղեալ զսաստիկ ուղխից վրդովումն . այսպէս ահս իմն պակուցանօղս և սարսափելիս զմխմեամբք շահատակելովն արկանէին ։ Իսկ մերոյն Հայկայ լայնալիճ աղեղամբ զերեքթեւեանն նետ դիպեցուցեալ երկաթագամ տախտակի կըրծիցն Նեբրովթայ , Թափանցանց ընդ Թիկունս յայնկոյս յերկիր հարստէր , և այնպէս զնա սատակեալ՝ ինքն տիրէ հայրենատուր վիճակեալ աշխարհի իւրոյ , յիւր անուն ըզ-սա անուանելով Հայք ։

Եւ յետ այսորիկ բազում գործս քաղաքականս յարդարեալ , և շինութեց աշխարհի պարապեալ , և կեցեալ ամս ոչ սակաւս՝ մեռանի . հաւատալով զաշխարհս մեր Արամանեկայ որդւոյ իւրոյ ։ Իսկ Արամանեկայ միապետեալ պմերազնեայս , երթեալ դարեալ դադարեալ բնակէ 'ի գեղեցկատեսիլ դաշտի միոյ , որ իբրեւ պարսպեալ 'ի նմանէ բարձրադագաթն սպիտակափառ լերամբք . յինքն ունելով զգնացս գետոց երագագունից ,(1) հոսելոց անցելոց ընդ երկայնութի դաշտին խոխոջելով խոտոչացեալ . և ապա զծործորս լերինն հիւսիսոյ շինեալ՝ յիւր անուն զբա-ռըն յորջորջէ Արագած , և զկապուածս 'ի

(1) Ընթեռ. ուղ. երագագնացից ։

ստորոտս նորա՝ Արագածոտն։ Ծնանի տա-
յա Արամանեակ որդի զԱրմայիս, և յու-
լով քան թէ սակաւ ամս կեցեալ՝ մեռանի։
Իսկ Արմայիս ՚ի նմին խաղ դաշտի բլուր մի
առ եզերբ գետոյն Երասխայ՝ շինէ քաղաք
և տուն բնակութեան իւրոյ, եղաստոյ մե-
ծոք. զնա հրաշակերտեալ, և անուանէ զնա
Արմաւիր։ Սորա արիական քաջամարտու-
թեան հանդէպք բաւական քեզ յառաջնո-
ցըն քան զիս մատենագրացն պատմի։ Սո-
րա հարուստ ինչ ամաց ՚ի մէջոյ անցելոյ
կենաց՝ ծնանի որդի զԱմասիա, և յետ ծը-
նանելոյ նորա (1) զնա՝ փոքր ինչ յետոյ կեցեալ
մեռանի։ Իսկ Ամասիա ՚ի նմին խաղ յԱրմա-
ւիր բնակեալ, և շինեալ զհարաւակողմ
լերինն ստորոտս, զլեառնն յիւր անուն Մա-
սիս յորջորջէ, և զգաւառն ՚ի ծործորս լե-
րինն՝ Մասեաց ոտն. և սորա յետ ամաց
ինչ ծնանի զԳեղամ, ինքն փոխադրեալ ըն-
կեաւս իւր։ Իսկ Գեղամ չուեալ երթեալ
անցեալ գնացեալ զլերամբն արևելեայ հիւ-
սիսոյ յեզր ծովակի միոյ, և շինեալ անդ
գեօղս և գերդաստանս՝ լրոյ իւր իսկ ան-
ուան զլեառն կոչէ Գեղամ, և զծովեզերեայ
շինանիստն՝ Գեղարքունի. և ծնեալ սորա

(1) Երէ+ օրէ. սորա։

երկուս որդիս զՀարմա և զՍիսակ. Եւ Հար-մայի հրաման տայ յԱրմաւիր բնակել, և միապետել զոյն հայրենի։ Իսկ Սիսակայ 'ի բնակութիւն տայ՝ սկիզբն կալեալ 'ի ծո-վեզերէն զհարաւակողմն արեւելեան մինչ 'ի դաշտ մինչ ցնոյն որ հասեալ անցանէ գե-տոյն Երասխ, յորձանուտ խոխոջիւք վազա-ռեալ և Թափ անկեալ ընդ (1) Նեղ և ընդ-նուրբ խոխոմս քարանձաւի միոյ, զոր այ-ժըմ 'ի բազմաց Բարաւաղ անուանի։ Իսկ Գեղամայ դարձեալ անտի՝ շինէ զդաստա-կերտն մեծ և գեղեցիկ զԳեղամի՝ որ յետոյ Գառնի 'ի Գառնկայ անուանիւր, և նոյն մեռանի։ Բայց Հարմա ծնանի զԱրամ, և յետ ամաց ինչ մեռանի։

Արամայ բազում՝ արութիւն քաջու-թեանց մրցմանց պատմի, և ընդարձակեալ սորա հարստահարութեանց (2) բազմաւ ըն-սահմանս Հայոց հասարակ ընդ. չորեսին ու-ղորդս երկրի. զի բաց քաջախիւպ հանդիպի-ան զօրութեան որք շուրջ զմեօք են ազգք 'ի նորին անուն յարակցաբար Արմենեակս զմեզ անուանեն։ Սա ոչ միայն զայլս ոմանս դիւրադաւս, այլ և զԿապադովկեցիս եւս բազում արիական քաջամարտութեամբ ընդ

(1) Երէ. օր. Թափանցեալ։ (2) Մէ օր. հարստութեանք։

իւրեաւ նուաճեալ սեփականէր. և զկղզիմայն զայն և զՊռոպոնտիս ըստ իւրում իսկ անուանն՝ Արմենի անուանէր, որ մինչեւ ցայսօր այս անուն Յունականաց անտի աշխարհին այնմին անուանի։ Իսկ յԱրմենէն յայնմանէ կոչեցելոյ մինչեւ ցկողմանս Պոնտացւոց՝ առաջին Հայք զաշխարհն անուանեաց, և 'ի Պոնտոսէ մինչեւ ցոլորտս քաղաքին Մելիտինոյ՝ երկրորդ Հայք, և 'ի Մելիտինոյ մինչեւ ցսահմանս Ծոփաց՝ երրորդ Հայք. և 'ի Ծոփաց մինչեւ ցքաղաքն Սամոսատաց և յաշխարհն Աղձնեաց արեւմտեաց՝ (1) չորրորդ Հայք. այս մինչեւ ցսահմանս բնիկ տէրութեան իւրոյ, իսկ զսեփական և զբնիկ աշխարհ իւր հաստատարան՝ զոր Մեծ Հայք անուանէ։ Այս յետ ամաց ինչ կենաց ծնանի զԱրայն Գեղեցիկ, և զկնի այլ եւս ամս բազումս կեցեալ մեռանի. Իսկ Արայի զշինութիւն աշխարհի տեսօրինեալ՝ յիւր անուն ըզ-բնակութե իւրոյ վասն կոչէր Արարատ։ Իսկ յետ ամաց ինչ վաւաշն այն և տռփոտ կաթոտն Շամիրամ իմացեալ 'ի համբաւոյ ըզգեղապէշ գեղեցկութի նորա, բազում անգամ հրեշտակագնացութք ծիրս առատաձեռն և բազմապարգեւ բարութիւնս նմա

(1) Եղէն օրէ. արեւմտեայ։

խոստանայր, միայն թէ հաւանեսցի գալ առնուլ զնա 'ի կնութիւն, կամ կատարել գանէ զկամս ցանկութեան ։ Որում ոչ հաւանեալ՝ հապճեպ տայր փաղփաղակի հասանել յերկիրն Հայոց ընդդէմ Արայի. ոչ այնչափ 'ի հալածել կամ 'ի սպանանել զնա դէմ եդեալ, քան որչափ 'ի նուաճել և ըզբռանք ածել՝ առ 'ի լնուլ զկամս կամեցողին հեշտ ցանկութեանն. յոր թէպէտ ըզգուշացուցանէր զզօրս իւր կենդանի պահել զցանկալին իւր, սակայն նա 'ի մէջ պատերազմի մարտկացն անգիտաբար մեռեալ. Թողու իւր որդի զԿարդոս ։ Իսկ շուայտատըն Շամիրամ սակս առաջին իւրոյ խանդաղատանացն առ Արայն, կոչէ զանուն Կարդոսի յանուն հօր իւրոյ Արայ, կարգելով զնա 'ի վերակացութիւն աշխարհիս Հայոց, որ և մեռաւ իսկ 'ի պատերազմի ընդ Շամիրամայ. Թողլով իւր որդի բազմահնարուստ և քաջահանճար յոր և 'ի քան զԱնուշաւանն Սօսանուէր, որ երբեմն զանուն ինչ աշխարհիս, և սակս զօրլոս իսկ նուաճեալ պայազատէր ։ Սա յետ ամաց յոլովից կենաց մեռանի ։ Ի զարմից սորա և զաւակաց՝ (1) ոչ տիրեալ զանուանսն հայրենեաց նահապետու-

(1) Երկու օրէ. և 'ի զաւակաց ։

ջեանցն, այլ այլք ունանք բռնակալեալք ոչ ըստ ազգի՝ այլ ըստ յառաջադիմութե տիրեալ թորգոմեանս գրոհի, որոց անուանքըն են այսոքիկ. Կարնո, Աղբակ, Զաւան, Փառնակ, Սուր. առ սոքա Յետոյ ժառանգեցուցանէր Խորայէլի վերկերին աւետեաց: Զկնի սորա Հոնակ, Սիմբակ, Անակ, Նորայր, Վաստամ, Կար, Գոռակ,(1) Հրանտ, Ընձակ, Գեղակ, Հաւան: Զարմայր, որ յԱքիլեսէ սպառակալին ընդ Եթովպացի զօրուն մեռանի: Պերճ, առ որով Գրուժ արքայն Խորայէլի. Արբուն, Բազուկ, Հոյ, Յուսակ, Կայպակ, Սկայորդի. ցեա ամենեցուն այսպ Պարոյր անուանյազգէ Հայկայ:



## ԳԼՈՒԽ Գ.

Յաղագս թագաւորելոյ Պարոյրի և յաջորդաց նորա մինչեւ ի Վահէ:

Սուտանեօր զանազանութիւն ի բաց լեալ հեռքեալ, և զնահատութիւն ազգի իւրոյ վերստին նորոգեալ պայծառացուցանէր: Սա ձա-

(1) Հին գր. Գոռակ:

Ճոխաբար պսակի թագընկալութեամբ ընդ ա-
ռաջին 'ի Հայս. զի Վարշակէս գաւառով
Սեղուացի. 'ի քաջաց ազատաց բարեկամս իւր
կազմեալ առատութեամբ բազկաւ, ընդ
որս և զքաջն և զաջողակն մեր Պարոյր յին-
քըն յանկուցեալ՝ ձեւ և շուք թագաւո-
րութեան նմա դնէր, և նոքօք հանդերձ
յինքն գրաւեալ 'ի Սարդանապաղայ զթա-
գաւորութիւն՝ տիրէ Ասորեստանի և Նի-
նուէի։ Յայսմ հետէ 'ի պարծանս զաւակաց
ազգիս մերոյ միոջ իմ որցեալ (1) զիս բերէ
դեգերել 'ի ներբողութիւն. զի ոչ նահապետս
այսուհետև, այլ թագաւորս մերազնեայս
չարաչարել իմն պատուահի պանծալի պատ-
մանօք։ Նա սովաւ Արծրունիք յորդւոցն
Սենեքերիմայ բնակեալ 'ի Հայս բարեպաշտութեամբ
'ի Պարուրաց եղեն։ Իսկ Պարոյր յետ մա-
հուան իւրոյ թողու իւր որդի զՀրաչէ,
բազ արժանի անուանն և տեսակ դիմացն,
վասն զի՝ յաւէտ իմն զուարթատեսիլ և
բոցականագոյն նա տեսողացն երեւիւր։ Սո-
սովաւ պերճեալ գիտէ գիրն զՀրէաստան
'ի Նաբուգոդոնոսորայ։

Իսկ Հրաչեայ 'ի գլխաւոր գերեացն զմի
ոմն 'ի Նաբուգոդոնոսորայ հայցեալ զՇամ

(1) Եղծ. օր. որցեալ։

բաթ անուն, բնակեցուցանէ յերկրիս մերում մեծապատիւ շքեղութեամբ. եւ 'ի ծննդոց սորա սերեալ ազգք Բագրատունեաց։ Իսկ յետ Հրաչէի Փառնաւազ զցեղապետութիւն ազգիս պայազատէ։ Եւ յետ նորա Պաճոյճ, և յետ նորա Կոռնակ, յետ որոյ Փաւոս։ Եւ զկնի Փաւոսայ՝ միւս Հայկակ. իսկ յետ սորա՝ Երուանդ, որ փոքր ինչ 'ի նահապետութեանն կեցեալ՝ ծնանի զմեծն Տիգրան։ Եւ այսքան անուանք և զրոյցք թէ հարցեալ լինի՝ յորմէ գոլ. գիտել գիտասցէ՝ զի Քաղդէացւոց մատեանքն մեզ ընձեռեցան, որք կան 'ի Նինուէ և Եդեսիա, առ Տիբերիւ գրեալ։ Բայց Տիգրանայ առաւել եւս քան զնա թագաւորս մեր իմաստայեղց հարստութեամբ խոհեմամբ երեւեալ. անցեալ զանցեալ զամենեքումբք լինէր։ Սա յետ, բազում առաքինի քաջութեան, և զբազում գործս քաջաքականս յարդարելոյ, զՄարացն 'ի բաց բարձեալ զիշխանութիւն՝ պայազատէր զնա։ Եւ զՅոյնս ոչ սակաւ ժամանակս ինչ. ընդ իւրեաւ հնազանդեալ նուաճէր. և զԱժդահակ սպանեալ՝ զարքունիս նորա 'ի գերութիւն վարէր, և օժանդակեալ եւս յանուշ մօրէն վիշապաց, և կալեալ զՄիւրոս՝ յինքն զեշ-

խանութիւնն Սարայ և Պարոյր գրաւեալ յանկուցանէր, և զսահմանս հայրենի գրոհին 'ի հինն մեր հաստուցանէր յեզերս ծայրի բնակութեանց. և զազգս մեր եւս քան զեւս բարձրացուցեալ ճոխացուցանէր. և որք ընդ լծով հարկի այլոց ոմանց էին կացեալք, ամենեցունց նոցա լծագիր և հարկապահանջ լինէր: Եւ 'ի սմանէ ասեն լինել զՄատանիկ ազատութիւն բարձին, որ այժմ դեռեւս կայ և պահի անուամբ, իբր Թագաւորական իմն զարմ զնոսա իմացեալ: Այսպէս էր սա մեծիմաստ և պարկեշտ և մեծաջան, և նազելի 'ի գնացս և 'ի գործս զկեանս իւր էր քաղաքավարեալ. այլ և 'ի հաւատարափքութիւն (1) առ ամենեսեան զինքն կշռադատեալ: Այսպէս և անդր եւս քան զայլս ընդեալ էր սորա բարի մրցանաց հանդէսք. և բան գովեստից սորա բազում ճառից պիտոյ է, այլ շտապ տագնապի տարակուսանացս ոչ ներէ ինձ ծախել զժամանակս 'ի ներբողումն սորա, քան թէ փութալ յայլ ինչ որ առաջի կայ:

Տիգրան ծնեալ որդի զԲաբ, Տիրան, Վահագն, զոր 'ի կտնասցահար աղէբախս ընդ վիշապաց համբաւէին կռուել նմա և

(1) Չոր օր, 'ի հաւատարութիւն:

յաղթել։ Եւ ընդ քաջին Հերակլեայ նա-
հատակութեանցն գնա համեմատեալ, ասի
բան զՎահագնէ (1) թէ՝ 'ի նահանգին Վը-
րաց ըստ չափ հասակի. Նորա անդրի կանգ-
նեալ պատուէին զոհիւք, և 'ի զարմէ սորա
սերին Վահունիք։ Սա ծնանի որդի, և 'ի
կրտսերոյ որդւոյ նորա Արաւենէ՝ Արաւե-
նեանք ցեղապետին։ Իսկ յԱրաւենայ ծը-
նանի Ներսեհ, և 'ի Ներսեհէ՝ Զարեհ,
յորմէ ազգ Զարեհաւանեան։ Իսկ 'ի Զա-
րեհէ Արմոգ. յԱրմոգայ՝ Բայգամ, 'ի Բայ-
գամայ՝ Վան, 'ի Վանէ՝ Վահէ։ Սա խոյս-
տաբար անդրայեալ ընդդէմ Աղեքսանդրի
Մակեդոնացւոյ՝ սպանանի 'ի նմանէ։ Յայսմ
հետէ ոչ գտանի ստուգաբան պատմու-
թիւն ինչ ցեղապետութեանցն կացելոց՝
մինչեւ ցԹագաւորել պարթեւին Վաղար-
շակայ. զի սամանորդիկս շփոթութեամբ զմի-
մեամբք ելեալ. և այր ընդ առն 'ի կռիւ կա-
քուեալ՝ մինչեւ զիւրամուտ զօրայածինն
'ի բնակութիւնս իւրեանց առնելին, եւ
անյայտ զկարեանցն գրոցս։ Արդ՝ այր մի
եւս ստահոր ինձ աշխատութիւն. հասու-
ցանել, որ զհամառօտութիւն բանի և զհա-

(1) Զորս. օրէ. զՎահագնի՝ զԲուր Տիրանայ։ Երէս օրէ. ուէջն. մ.կոյն՝ զԲուր Տիրանայ։

ւաստութիւն և զարգաքանութիւն մեծա պատուել գիտեմ։ Բայց ամենեցունց սո-ցա թուականք ժամանակաց ՚ի մերոյն Հայ-կայ մինչեւ ցթագաւորել Վաղարշակայ, գտանին ամք, ամէ, (2297).։

## ԳԼՈՒԽ Գ.

### Յաղագս Թագաւորելոյ Վաղարշակայ Պարթեւի և Երկրագործութեանց նորին և յաջորդացն մինչեւ ցառա-ջին Տիգրան Բ։

Նախ եւ յայսմ՝ Հետուէ սակաւաւորքինչ զթա-գաւորելն Վաղարշակայ ՚ի վերայ մեր շա-րայարեցից. և որք յետ նորա ՚ի նորին սեր-մանէ փոխանորդեցին զթագաւորութիւնն, որք և Արշակունիք անուանեցան. և զաւե-լորդն որ յայլոց ոմանց եղեւ պատմեալ. ՚ի նոսա հրաւիրեցից գիտել՝ թէ պիտոյէ քեզ։

Աղեքսանդր Փիլիպպեայ տիեզերակա-լեալ բազմաց՝ տայր տէրութիւն կտակաւ, զի ՚ի վերայ ամենեցունց միապետեսցէ, իւրն ա-նուանեսցի իշխանութիւն։ Իսկ սորա մե-ռեալ՝ Սելեւկոս զինի թագաւորէ Բաբե-լոնի, զՊարթեւս, եւս ընդ իւրեաւ Հնա-

ղանդեալ պատերազմաւ սաստկիւ (1)։ Եւ սո-
րա եւս մեռեալ, առնու զԹագաւորութիւն
Անտիոքոս՝ որ և Սովտերն։ Եւ այսպէս սո-
քա Թագաւորեալ ընդ փոքր և ընդ շատ
իբրեւ ամս վաթսուն, ապա ապստամբին
Պարթեւք 'ի Մակեդոնացւոց։ Իսկ Արշակ
քաջ 'ի զաւակէ Աբրահամու 'ի Քետուրա-
կան ծննդոց, զոր յետ մահուանն Սառայի
էառ իւր կին, Թագաւորէ 'ի վերայ Պար-
թից և Մարաց և Բաբելացւոց, և անուա-
նի Պարթեւ, այսինքն Բռնութիւն։ Սա
բազում պատերազմօք ընդդէմ քաջաց ան-
յաղթ գտեալ, ընդ իւրեաւ զամենայն Թա-
գաւորութիւնս նուաճէր. և վասն զի տի-
եզերականութեամբ իմն ձեռներէց լինէր
ինքնիշխանաբար, ապա Թագաւորեցուցա-
նէ Հայաստանեայցս զՎաղարշակ եղբայր
իւր, զայր բարեխորհուրդ և խոհեմ և քաջ։

Սա յետ բազում մրցական յաղթանակաց
ընդդէմ Թշնամեաց, բազում գործս քաղա-
քականս և կենցաղօգուտս յարդարեալ կազ-
մէր վայելչական կարգօք։ Նախ՝ անձինն եդեալ
շուք Թագաւորութեան բոլոր իսկ պերճա-
պաճոյճ վարուց հանդիսիւ. յետ որոյ նա-
խարարութիւնս ընդ ձեռամբ հաստատեալ

(1) Եղծեալ օրի. սաստիւ։ Մէ օրի. սաստկաւ։

կացուցանէ 'ի դրան արքունի և ընդ ոլորտըս եւս իւրոյ տէրութեան. և զարս պատուականս և պիտանիս հաստատէր 'ի նահապետութիւնս բազմօրինակ մասամբք 'ի զօրմից Հայկայ և յայլոց եւս աջողակաց արանց: Նախ՝ զՆագարատ որ 'ի Շամբաթայ Հրէէ էր, զորմէ համբաւեն լինել յազգէ Դաւթի, թագադիր թագընկալութեան իւրոյ գոլ հաստատէր. վասն զի՝ նա նախ զանձն ընծայ մատուցանէր քան զայլս բազումս. այլ եւս ասպարապետ և իշխան բիւրուց և հազարաց զնա կացուցանէր: Յետ որոյ քաջապէս վանեալ զՅունականսն, եւ նուաճեալ կարգէ ընդ իւրով ձեռամբ ըզՊոնտոս և զԿեսարիա որ կոչի Մաժակ՝ հանդերձ շրջագայեալ գաւառօքն: Եւ անտի դարձեալ ընդ ծովեզերեայն առ ստորոտով լերինն Կովկասու, հրաման պատուիրանի տայ շղուրտաքարոյ վայրենի ազգացն այնոցիկ 'ի բաց քեցել յանձանց զաւազակութիւն և զմարդադաւութիւն և զբարս չարակեղոս. և հրամանաց և հարկաց արքունի հպատակ կալ, և բարձի և ցեղապետութեանց յարքունուստ արժանի գտանել:

Այսպէս սորա զարտաքոյս արքունեացն յարմարապէս հոգածեալ, ապա յօրինէ կար-

գրս վայելուչս իւրում եւս պալատանն, որ ինչ օրէն է թագաւորութեան, և որ պիտակ է թագաւորութեան, և որ բագձաճէ զթագաւորութիւնն։ Եւ նախ թագադիր իւր ըստ սկզբանց(1) առաջելոցն կացուցանէ. ապա զդեցուցանօղս արքայի և թիկնապահըս, և ապա որսօնս խոկ երէոց և հաւուց ՚ի դէտս խորակաց, և դարձեալ սպահիկս(2) և դահնաւորս և հաղորդապետս զոհարանաց, և ապա մատռուակս և արծուէկիրս(3) և բազէկիրս, և պատրաստիչս ձեռն ամպրանոցաց և համբարածուս ձմերանոցաց, և ըեդէոն պահպանակ թիկնոցաց, և դռնապանս դրանց արքունի, այլև ներքինիս խզեալ. ապա երկրորդ եւս թագաւորութեանն իւրոյ կացուցանէր ՚ի զաւակէ Մարացւոյն Աժդահակայ, որ այժմ Մուրացանդ անուանի։ Այսպէս յարդարեալ սորա զարքունականն պետոյիցն զհանգամանս, կարգեալ կացուցանէ այնուհետեւ կողմնակալս, կուսակալս. նահապետս. սպասալարս, զօրագլուխս. կարգէ և բդեաշխս՝ մի յերկրին Գուգարաց հիւսիսոյ, և միւս եւս յարեւմտից հարաւոյ յաշխարհին Աղձնեաց։ Որոշէ և ժամս յարքունի-

(1) Մի օրի. ըստ այնմ սկզբանց առելոյն ։

(2) Մի օրի. սպասիկս ։ (3) Երկու օրի. արծուակիրս ։

ալըն մատանեկըդ, և ժամանակս խորհրդոյ, ե-
րաստից և խրախճանութեց պատրաստէ.
և յիշեցուցանողս երկուս, միումն զնարի յի-
շողութիւնն ընդ ուշի կապեալ, և յանիրաւ
հրամանս Թագաւորին զեկուցանել զիրաւն
և զմարդասիրելն, իսկ միւսումն զվրէժխնդ-
րութիւն չարացն և զհասս իրաւանցն ցու-
ցանել։ Իսկ զքաղաքացիս նախապատիւս
քան զգերզրուկս համարել հրամայէ. այլեւ
քաղաքայնոց ոչ խապառ ՚ի վերայ գեղջկայն
ընդվզեալ և սպերճանալ. և այսպէս կենահա-
ղորդս լինել ընդ միմեանս աննախանձ եղ-
բայրութեամբ, որ է առիթ շինողութեան
և խաղաղութեան։ Որդ՝ սա յետ այսպի-
սւոյ գեղեցկայարմար կարգաց յօրինուա-
ծոց և բարի և բարգաւաճ անուան՝ մեռա-
նի ՚ի Մծբին Թագաւորեալ ամս իէ (22)։

Յետ սորա Արշակ որդի նորուն ընդ
նորա Թագաւորեալ հետեւող հայրենի մըր-
տընջենաբարոյ մըցմանցն գատանիւր։ Այս իսկ
և իսկ մարտուցեալ (1) ընդ Պոնտացիս և
վանեալ զնոսա. պատմի եթէ զանգ նիզակի
իւրոյ զոր արեամբ օծից ասեն մխեալ, նշա-
մուցանէր հարուստ խորութեամբ յարձա-
նի միում՝ Թողեալ նշան սերնդոցն զնո

(1) Զօրս ժէ. մարտ տուեալ։

իւրում քաջութեանն ։ Յաւուրս սորա հաստուածեալք ոմանք ’ի Հրէից բնակելոց ’ի Բուլկարս՝ որ ’ի ծործորս Կովկասու, եկեալ բնակէին առ ’ի սորբեւ (1) Կողայ ։ Նու-երկուք ոմանք ’ի նոցանէ չարչարեալք սակս ոչ պաշտելոյ զդիսն՝ որով կատարեցան ’ի վերայ հայրենի օրինացն ըստ Եղիազարու սրբոյ և որդւոցն Շմոնեայ ։ Բայց Արշակայ թագաւորեալ ամս ժգ (13)· փոխանորդէ զթագաւորութիւն նորա Արտաշէս որդի նորա ։

Նա ոչ տուեալ տեղի Արշականայ Պարսից արքայի ըստ օրինի առաջնոյ ունել զնախապատուութիւնն, և հարստահարութբ զնա ընդ իւրեաւ հնազանդեցուցեալ, զի Արտաշէսի Արշականն զնախապատուութիւնն հաստատոյր՝ զերկրորդն ինքն ունելով զգահ ։ Նա բազում զօրօք խաղացեալ գնացեալ յարեւմուտս ’ի վերայ Լիդիացւոց, և ձերբակալ արարեալ զԹագաւորն Կրեսոս, հրամայէ հանել զնա ’ի տանջանարան երկաթեղէն տապակի ։ Իսկ Կրեսոսի զքանոնն Սողոնի ’ի յիշատակ իւր ածելով՝ ասէ · Ոչ պարտի մարդ երանել զպարեբաղդութիւն իւր մինչեւ ’ի վախճան ։ Դարձեալ Արտաշէսի

(2) Մէ օրէ · առ սորբեւ ։

ծովագնացութեամբ ընդ երկիր բերեալ՝ առնու զՊոնտոս և զԹրակէ։ Կործանէ և զՄակեդոնացիս. փախստեայ առնէ և զՓռ-կեացիս. անձնատուր լինին նմա և Ռոդացիք. զոհս ընդ դիւցազանցն մատուցանէ Միհրդա-տա։ Եւ 'ի վերայ այսր ամենայնի ոչ եւս բա-ւացեալ նորա յինքեան միայն հպարտութե̃, այլ աստուածելով առնէր. Եւ այդ փառացս անցաւորի։ Յետ այսորիկ ջան 'ի մեծի եղեալ ծառայեցուցանել իւր զբոլոր իսկ արեւմ-տեայն,. ընդոր զԱմփիպանոս բազում նաւաց բազմութեամբ՝ սակս նաւարկելոյ 'ի վերայ ազգաց բազմաց։ Իսկ անդ ահագին լինի աղ-մուկ շփոթի 'ի մէջ իւրոց զօրացն լեալ՝ ըն-միմեանս սատակէին. ընդ որս և Արտաշէս որ այնչափ յաղթանակեաց զբազում ազգ, խողխողի յիւրոցն զօրաց՝ Թագաւորեալ ամս իե̃ (25)։



## ԳԼՈՒԽ Ե.

Յաղագս Թագաւորելոյ Տիգրանայ Երկրորդի և Գործոց նորա, և Արտաւազդայ, և Արշամայ։

Իսկ զկնի Արտաշիսի Թագաւորէ երկ-րորդն Տիգրան որդի նորուն։ Սա գումար-

տակ բազում ընդդէմ Յունականացն 'ի վերայ եկեղեցւոյն նորա կազմեալ՝ 'ի վերջ կոյս ընդ նոսա նախանձէր, և 'ի քեռայր իւր Միհրդատա զՄաժակ և զայլ միջերկրեայն հաւատացեալ՝ դառնայ յաշխարհն իւր: Նոյն Միհրդատ երթայ առնու եւս և զԱմասիա, որ բազում ամօք յառաջ շինեալ էր յԱմասեայ եղբօր որդւոյ Նեքտանեբայ՝ հրամանաւ Աղեքսանդրի որդւոյ Նեքտանեբայ (1), և յընդարձակագոյնս զնա պարսպեաց, և գրաւելով զնա ի Հայս՝ տիեզերասահմանն քաղաք զնա յարդարեալ կոչէ: Շինէ 'ի նմա և արքունիս ըստ հիւսիսոյ կողմանէ Ալիս գետոյ: Իսկ յարեւելից դիմաց քարանձաւին չիրիմս քարակոփս և ուռնս բրածոյս յօրինէ. համանմանն ձեւակերտին Շամիրամայ, որ 'ի Վան և 'ի Խաղնամթդեզիս: Նայց Տիգրան յետ բազում կարգաց և յօրինուածոց իւրոց դիմէ 'ի վերայ Պաղեստինոյ՝ առեալ գերի բազում 'ի Հրէից: Յայնժամ ապա և Պոմպէոս Հռոմայեցի գայ հասանէ 'ի վերայ Միհրդատայ, որ թէպէտ և ահագին մարտս ընդդէմ նորա գումարտակ դնէր, սակայն յաղթեալ 'ի բազմութենէն՝ փախըս-

(1) Ցեղէոս օր. պատմէ՝ հրամանաւ Աղեքսանդրի որդւոյ Նեքտանեբայ:

տակաւ 'ի կողմանս Պոնտոսի անկանէր ։ Իսկ Պոմպէոս առեալ զՄ՛իժակ, և կալեալ զոր-դին Մ՛իհրդատայ զմանուկն Մ՛իհրդատ՝ ըստ անուան հօր իւրոյ, զփոխանորդականն Մ՛իհրդ-դատ 'ի ձեռն խարդաւանութեան հօրն Պի-ղատոսի սպանանէ թունաւոր դեղովք, և տայ զպատանին ընծայմանն 'ի ձեռն Գա-բինոս Հռովմայեցւոյ. իսկ Գաբինանէ առ Տիգրան քեռի իւր առաքէ զպատանին ։ Իսկ յետ սակաւուց ինչ արհամարհութիւն գը-տեալ Մ՛իհրդատայ 'ի Տիգրանայ քեռւոյ իւր-մէ, և հատուածեալ 'ի նմանէ անկանի առ Կեսար. և Կեսարու առեալ զՄ՛իժակ Մ՛ի-հրդատայ, շինէ զնա եւս ընդարձակագոյն և պայծառ շինուածով, և 'ի պատիւ Կեսարու կոչէ զնա Կեսարիա. և յայնմ հետէ ոչ ե-ղեւ այն քաղաք ընդ իշխանութեամբ Հայոց ։

Բայց Տիգրանայ խօթութիւն յինքեան կրեալ, կացուցանէ 'ի նախարարութիւն Հայոց զԱրգափրայ Արծրունեաց և նահա-պետ նմա կացուցեալ զՊնէլ ումն յազգէն Գնունի, առաքէ 'ի Պաղեստին և յԵրուսա-ղէմ զօրու մեծաւ ։ Իսկ նոցա բազում ինչ և մեծամեծ քաջութիւնս և արութիւնս անդ ցուցեալ, զՀերովդէս փախստական առնէին, և զԱնտիգոնոս միաբանակ նոցա

թագաւորեցուցանէին, և զՀիւրկանոս քահանայապետն Հրէից կապեալ ածէին Տիգրանայ հանդերձ այլեւս գերութեամբ մեծաւ։ Յետ այսորիկ Տիգրանայ փոքր ինչ ժամանակ կենաց 'ի վերայ անցեալ վախճանի՝ թագաւորեալ ամս լդ (34)։ Ապա յետ մահուանն Տիգրանայ, Անտոնիոս թագաւոր Հռովմայեցւոց առաքէ զօր բազում յԵրուսաղէմ, որք և պաշարեալ իսկ և առեալ զնա սպանանեն զԱնտիգոնոս, և զՀերովդէս դարձեալ թագաւորեցուցանեն առ հասարակ Հրէաստանի։

Յետ այսորիկ ապա Արտաւազդ որդի Տիգրանայ թագաւորէ Հայոց։ Սա ոչ ինչ ըստ սակի հօրն քաջափայլ փառաց պերճապայծառ գործ արութեան ցուցեալ, քան թէ միայն պորտաբոյծ և որովայնապարար լեալ, և թափառեալ զհետ որսոյ և խրախճանեաց զաղքիս մեծացուցանէր։ Սասն որոյ յանդիմանեալ յիւրոյնոցն, և եթէ խիթանալին ընդդիմացեալ բանիւ. և 'ի քինոյ զայրացեալ, և բազում զօր գումարեալ խնաղայ 'ի Միջագետս, և զորս յափշտակեալն էր առ 'ի նմանէն Անտոնիոս արքայ Հռովմայ, փախեալ հալածէ անտի զզօրս Հռովմայեցւոց։ Իսկ Անտոնիոս զայն լուեալ, և

իւրովի առեալ զբազմութիւն զօրացն՝ գազանաբար յարձակի 'ի վերայ, ոչ միայն 'ի մերն (1) Արտաւազդայ, այլ և յայլոց եւս ազգաց և թագաւորութեանց առ հասարակ անտերունչ զամենեսեան թողեալ. ընդ որս և զմերն Արտաւազդ ձերբակալ առնէ 'ի Միջագետս, առ հասարակ զզօրս Հայոց և Պարսից սատակելով։ Իսկ զԱրտաւազդ հանդերձ ընչիւք բազմօք յանկածէ (2) պատերազմին պատրաստեալ տայ Կղէոպատրեայ՝ որ յԵրուսաղէմ։

Այնուհետեւ ժողովեալ զօրք Հայոց հրամանաւ Արտաշիսի թագաւորին Պարսից կացուցանեն թագաւոր ինքեանց զԱրշամ որդի Արտաշիսի եղբօր Տիգրանայ։ Իսկ ամանէ կալաւ սկիզբն մանաւորս ինչ հարկել Հայոց 'ի Հռովմայեցւոց. զի ինքն Արտաշէս արքայ Պարսից վախճանեալ, և Արշաւիր որդի նորուն տղայ փոքր թագաւորեալ՝ ոչ զօրէր գալ 'ի Թիկունս, և ոչ ոք այլ գոյր նմա հաւանչութեանց։ Սատանոր Անտոնոս Օգոստանոս, որ արձակեացն զՀիւրկանոս 'ի Հրէաստանէ՝ զոր 'ի Տիգրանայ էր գերեալ և տարեալ, վասն այսորիկ ընկեցաւ 'ի պատուոյն իւրմէ և եդաւ 'ի բանտի. և վասն զի նա հաստատեալ Կղէ-

(1) Մի օր. 'ի վերայ մերն։ (2) Հինգ օր. ամփոփէ.

դունեաց ։ Ուրա քաւթիւն յականջս Ար-շամայ հասուցանէր և բանն զօրանայր առ 'ի հաւատալ, հրամայէ պէսպէս տանջա-նօք խոշտանգել զնա, զի կամ թողեալ զօրէնս հրէութեանն երկիր պագցէ կռոց, կամ կա-խեալ զփայտէ բնաջինջ լիցի ազգաւ ։ Եւ զմի 'ի նորին ազգականաց սպանեալ, և զոր-դիս նորա մատուցեալ 'ի տեղի սպանմանն, եւ 'ի չժուժել մահուան որդւոյն՝ կատա-րէ զկամս արքային հանդերձ բոլոր համազ-գեօքն, և յաւիտենին պատիւն հասանէր ։

## ԳԼՈՒԽ Զ.

Յաղագս Թագաւորելոյ Աբգարու և հաւատալոյ նմա 'ի Քրիստոս՝ և գործոց նորին, և լուսաւո-րութեան աշխարհիս Հայոց.

Բայց Արշամայ թագաւորեալ ամս քսան, որդի նորուն Աբգար փոխանորդէ զթա-գաւորութիւնն ։ Սա կոչին զի նեղիկ էր խոնարհութեամբ, Աւագ այր յառաջնոցն ան-ուանիւք, զոր Ասորւոց և Յունաց քան մե-րումս լեզուի ոչ բաւեալ ուղղախօսել ։ Աբգար զնա անուանէին ։ Աստանօր ամե-

նայն Հայք հարկեցան Հռովմայեցւոց հը-րամանաւ Օգոստեայ կայսեր՝ յաւուրս աշ-խարհագրին, յորում ժամանակի ծնեալ լի-նի Փրկիչն մեր Յիսուս Քրիստոս 'ի Բեթղե-հէմ Հրէաստանի։

Բայց 'ի մէջ Արգարու և Հերովդէի ոչ փո-քր ինչ խռովութիւն և աղմուկ չփոթի պա-տերազմաց յուզէր, և վասն զի 'ի Քրիստոս համարձակութեան Հերովդէի և կոտորելոյն զտղայսն 'ի Բեթղեհէմ, յանհնարին ցաւս յաքանեալ էր և ոչ կարէր անձամբ մերժել ինչ։ Նոյն աւուրք զոմն եղբօր որդի իւր զօ-րօք բազմօք, որոյ հասեալ 'ի Միջագետս, և տուեալ պատերազմ ընդ Արգարու, մեռա-նի 'ի նմանէ։ Իսկ և իսկ վախճանի Հերով-դէս, և Արքեղայոս որդի նորուն փոխարկեալ զտեղին։ Նոյն և Արշաւրի արքայի Պար-սից եւս փոխանորդեալ՝ աղմուկ չփոթի 'ի մէջ որդւոց նորա լինի, թէ ով ոք ընդ հօրն կա-րասցէ թագաւորեսցէ։ Իսկ Արգարու եր-թեալ իբրեւ զայր խնամուն՝ համոզէ 'ի մէջ նոցա, անկեալ 'ի նոսա զհաշտ խաղա-ղութիւնն՝ թագաւորեցուցանէ զԱրտաշէս։ Իսկ զայս եղբարս նորա հանդերձ քերբն՝ երիս ցեղս որոշէ կոչմամբք այսպիսեօք. Կարենի Պալհաւ, Սուրենայ Պալհաւ, և

քոյրն Ասպահապետի Պալհաւ. որ ապա յետ ժամանակաց ինչ՝ սուրբ լուսաւորիչն Գրիգորիս Սուրենեանն Պալհաւ շարժեալ շառաւիղ սոս որդւոյն Քրիստոսի. և Կամսար՝ յորմէ կամսարականք ՚ի Կարենեանն Պալհաւէ. և այսպէս սորա անուանեալ լինին Թագաւորազուն բողբոջք:

Բայց Աբգարու ապականեալ լինէր մարմինն չարաչար ախտիւ. Եւ վասն զի Աւ-րինկալք բդեշխն Աղձնեաց, և Համշապրան նահապետն Ապահունեաց, և Անան հաւատարիմ արքային Աբգարու ելեալք յԵրուսաղէմ, և տեսեալ զքանչելի բժշկութիւնսն (1) Քրիստոսի Աստուծոյ՝ մերոյ՝ եկեալ պատմեցին Աբգարու. սոքա պատմէին գրէ Թուղթ աղաչանաց գալ՝ առ նա, և բժշկել յախտէն յայնմանէ, զոր ոչ ոք երբէք ՚ի մարդկանէ եգիտ բժշկութիւն. (1) որ և ընկալեալ Փրկչին մեր. և արժանի պատասխանւոյ զնա համարեալ, գրէ առ նա առաւել երանելով զայնոսիկ, որ ոչն տեսեալ իցեն զնա և հաւատասցեն. և ՚ի կատարելում, զկամս առաքչին իմոյ, առաքեցից քեզ զմի յաշակերտաց իմոց, զի զցաւս քո բժշկեսցէ, և կեանս շնորհեսցէ քեզ՝ և որք

(1) Երեւ օրէ. բժշկութիւնսն:

ընդ քեզ են ։ Իսկ զԹուղԹ Փրկչին բերեալ առ Աբգար Անանայ սուրհանդակի , ընդ նմին և զկենդանագրուԹիւն փրկչական պատկերին , որ կայ մինչև ցայսօր (1) Եդեսիա քաղաքի ։ Ապա յետ համբառնալոյ Փրկչին մերոյ յերեսներորդի ամի Թագաւորութեանն Աբգարու , Թովմաս առաքեալ մի յերկոտասանիցն՝ առաքէ զԹադէոս յեօԹանասնիցն ընտրելոց (2) , բժշկել զԹագաւորն Աբգար ըստ խոստման Փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի , զոր և արժանի վարկաւ իսկ գրով տալ աւետարանական աւետիսն ։ Որոյ ապա եկեալ 'ի տուն իշխանին Տուբիայ Բագրատունւոյ , որ ցայն վայր կայեալ մնացեալ էր հայրենի օրինօքն ։ Իսկ իշխանին Տուբիայ առեալ ածէ զառաքեալն առ արքայն , և նշան հրաշալի 'ի դէմս առաքելոյն արքայն տեսանէր . և ապա ընդգձեալ 'ի ծունկս երկիր պագանէր նմա 'ի վերայ երեսաց երկրի ։ Իսկ առաքեալն զձեռն 'ի վերայ եդեալ Աբգարու՝ բժշկէր զնա . այլ և զբոլոր իսկ զհիւանդս և զախտաժէտս որք 'ի տան արքայի

(1) Երկ. օր. ցայսօր ժամանակի ։

(2) Չորր. օր. այսինքն՝ Աբգարու . առաքէ Թադէոս մի յերկոտասանիցն ընտրելոցն ։

և յամենայն քաղաքին՝ բժշկէր․ և մկրտեցաւ ինքն Աբգար և ամենայն քաղաքն․ և որ ըստ օրէ բազմանային հաւատացեալքն ՚ի տէր։ Իսկ սրբոյն Թադէի զԱդդէ ոմն խոյրադիր ձեռնադրեալ․ և փոխանորդ իւր թողեալ յԵդեսիա, և ինքն գայ առ Սանատրուկ քեռորդին Աբգարու՝ աւետարանել վիճակելոցն նմա զՔրիստոսի աստուածութիւնն։

## ԳԼՈՒԽ Է․

Յաղագս Սանատրկոյ ուրացութեանն և Հայոց, և նահատակութեանն Թադէի և Սանդխտոյ, և ընկերոց Ոսկեանց և Սուքիասեանց։

Բայց Աբգար մեծի յուսոյ զանձն տուեալ, և կենահաղորդ գտեալ փառացն Աստուծոյ, և հետևեալ ՚ի խոստովանութիւն անշարժ յուսոյն՝ վախճանի, վերաթեւեալ ՚ի վերին աշտարակն Սիոն։ Իսկ ապա ՚ի հայս նորին իսկ քեռորդին Սանատրուկ կացեալ լինի թագաւոր, որ թէպէտ և ի սկզբան քարոզութեամբն Թադէոսի ա-

ռաքելոյ հաւատաց 'ի Քրիստոս, սակայն 'ի հրապուրս Նախարարացն հարեալ՝ դարձեալ ուրանայ. և յետ փոքր ինչ ապա բազում չարչարանօք և սրով կատարեալ զսուրբ առաքեալն. ընդ Նմին և զդուստրն իւր ըն Սանդուխտ վճարէ 'ի կենացս, որք 'ի լոյս կենաց անվախճանից վերափոխեցան (1) ընդ աջմէ փառացն Աստուծոյ: Իսկ զկնի այսորիկ ապա և Բարդուղիմէոս մի յերկոտասանից անտի՝ որ Հայաստան աշխարհիս 'ի Տեառնէ վիճակեցաւ, իսկոյն յայսմ ժամանակի 'ի Սանատրկոյ կատարի չարչարանօք, և արեամբ չափ նահատակեալ 'ի Հայս յԱրաբենոն քաղաքի, ուր և եդան իսկ նշխարք ոսկերաց նորա 'ի պարծանս Հայաստանեայցս և 'ի բժշկութիւն ամենայն ախտամետաց:

Իսկ յետ քառասուն և երից ամաց կատարման սր̃ առաքելոյն Թադէոսի, յաւուրս Արտաշիսի Հայոց արքայի, աշակերտք սրբոյ առաքելոյն. յորում գլխաւորն Ոսկի ճանաչիւր, և բնակեալ էին յակունս Եփրատ գետոյ, աշակերտեալ մկրտէին զարս ոմանս յԱլանաց՝ 'ի հարազատութենէ Սաթենկայ տիկնոջ, որ էր կին Արտաշիսի: Եւ վասն զի օր ըստ օրէ զմկրտեալսն հաստատէին 'ի

(1) Երկու օրի. վերագրեցան:

հաւատս Բանին կենաց, վասն այսորիկ ա-
պա խանդացեալ ընդ Նոսա որդւոյն Սա-
թենկայ, որով վճարեցան 'ի կենաց առաջ
սուրբքն Ոսկի՝ հանդերձ այլ եւս ընկերօքն
իւրովք: Իսկ ազգականքն Սաթենկայ որք 'ի
Քրիստոս մկրտեցան, ընդոստուցեալք իմն
վասն մահուան որբոցն, հատուածեալք գը-
նացին 'ի բաց, երթեալ դղեալ թագու-
ցեալ 'ի Ջրաբաշխն լերին՝ խստաբուռ ճա-
րակօք շատացեալ. եւ ըստ մերկութեան ան-
ձանց նոցա 'ի ցօղոյ երկնից գեստ արձակեալ
մարմնոցն, որ եւ 'ի պատահմանէ անուն Բօշք
անուանեցան: Եւ վասն զի յետ ամաց
բազմաց սպանեալ թագաւորն Հայոց Խոս-
րով յԱնակայ, եւ անիշխանութեան երկիրս
Հայոց, ապա Բաղրահա (1) ումն եկեալ յԱլա-
նաց դրանէ, եւ 'ի խնդիր ելեալ գրով վը-
կայիցն, եւ գտեալ զնոսա 'ի Ջրաբաշխն կոչե-
ցեալ լերին, եւ հարց եւ փորձ արարեալ ընդ
նոսա վասն սա 'ի Քրիստոս հաւատոցն, սուր
'ի վերայ եդեալ կոտորէ: Եւ լեառնն ա-
պա յայնմ հետէ յանուն Սուքիանոսի գըլ-
խաւորի սրբոցն Սուկաւ անուանի:

(1) Եղեւ օրէ. Բաղրահլայ:

## ԳԼՈՒԽ Ը.

Յաղագս սպանման խորհրդոյ արքային յԱնակայ, և ծագման որդւոյն Գրիգորի, և վերոյին լուսաւորութեան աղբեր Հայոց։

Բայց երբեւ սպանաւ Արտաւան արքայ Պարսից յԱրտաշրէ Ստահրացւոյ, բարձեալ անտի զթագաւորեալն յԱրշակունեաց, և ինքն փոխանակ թագաւորէր։ Իսկ Անակ որ 'ի Սուրենականն Պահլաւայ էր և 'ի Պարթեւականն Արշակունի տոհմէ, 'ի քաղում և 'ի պէսպէս խոստմունս Արտաշրի հրապուրեալ, և երբեւ հաստուածեալ իմն առ 'ի նմանէ զինքն ցուցեալ, գայ առ Արքայ Հայոց Խոսրով. զի 'ի ձեռն ազգականութեան[1] փախստի զնա վստահացուցեալ, և կեղծաւորեալ սիրով զդաւեն դիւրաւ տարասցէ։ և հասցէ խոստմանց Արտաշրի, որպէս լիապէս իսկ քեզ ուսուցանէ աջողակ պատմագիրն Ագաթանգեղոս։ Եւ յայսպիսի իմն պատճառանաց հաստուածեալ եկեալ երեկօթս առնէ յԱրտազ գաւառի։ Եւ ըստ երկնային այցելութեանն պատահի սմա[1] տեղի օթեւանի 'ի քնարանի սրբոյ առաքելոյն 'ի ներքսագոյն տապանի խորանին, և անդ

(1) Մի օր. ազգականութեան։ (2) Երկ օր.. սորա։

ապա լինել առ յղութիւն մօրն սրբոյն Գրիգորի ։ Եւ յետ սահմանեալ աւուրցն՝ ապա և ծնունդ նորուն 'ի նմին տեղւոջ կատարեալ լինի , զի յորում զլինելութիւնն կրէր , ընդ որին խաղ լցցէ զհոգեւոր մշակութիւնն ։ Բայց Անակայ յետ երկեամ մի ամաց յիշելով զուխտն որ ընդ Արտաշրի , բապանանէ զխոսրով , և ինքն և իւրքն առ հասարակ սատակին . զմինն միայն պահեալ շնորհաւն Աստուծոյ , որ զառաքելութեան իւրոյ զշնորհս 'ի ձեռս տայր նմա սուրբ առաքեալն յարգանդի մօրն , որպէս Յովհաննու Մկրտչի զկարապետութիւն Քրիստոսի ։ Որ ապա ըստ չար հինին հասեալ՝ դայեկաց ոմանց զերկուս զուստր(1) մանկունս սնեալս ըստ անշուշտ պատմագրին՝ յաշխարհն Յունաց փախուցեալ տանէին , զմինն 'ի Թագաւորական հրահանգս վարժեալ , իսկ զմիւսն յառաքելական հանդէս և 'ի պաշտօնս լուսաւորութեան մերոյ ։ Իսկ ապա երկոքեան սոքա սնեալ , և 'ի զարգացումն անձնութեան հասեալ , մինն ըստ ախորժակի իւր և աջողակ զինուորութեանն և պատերազմական մրցմանց 'ի Թագաւորութիւնն հայրենի հասանէր յերրորդ ամի Դիոկղե-

(1) Եւնոյ օրէ · զերկուս զաւակս ։

տխմանսափ կայսեր։ Իսկ միւսն յետ բազում և անտանելի չարչարանացն, և անհնարին և՛ դառն կտտանաց, և զհնգետասան ամ լինելոյ ՚ի խոր վիրապին՝ ՚ի դղեկ բերդին որ յԱրտաշատ, ելեալ ՚ի խորոց թունաւորացն արտափայլեցաւ ՚ի փրկութիւն մեզ. և զանձառելի և զանպարագիր Երրորդութեանն հոգեզուարճ բղխումն յինքն ճառագայթափայլեալ՝ զբոլոր Արմեանս ազն բուժեաց յախտից և ՚ի կռապաշտութենէ։ Եւ յեօթն և ՚ի տասներորդ ամի արքայութեն Տրդատայ նստաւ յաթոռ սրբոյ առաքելոյն Բարդուղիմէոսի և Թադէոսի, սրբութեանցն գոլեալ քահանայագործող և ծնող մեր ըստ աւետարանին, և՛ նախահայր աստանօր արձանագրելով։ Յետ այսորիկ ապա գնացեալ ևս ընդ արքային Տրդատայ յաստուածակարգ կայսրն Կոստանդիանոս, բաղձօք իմն և՛ նուազելի և վայելուչ մեծարանօք պատուէ զսուրբ Հայրապետն իբրև զկենդանի մարտիրոս, առաջի անկանելով և աղօթս նուիրականս և օրհնութիւնս ՚ի նմանէ հայցելով։ Եւ այսպէս զնա պատուասիրեալ, և Տրդատաւ հանեալ յոսկիապատ կառս՝ մեծաւ շքեղութեամբ յուղարկէ ըղճանապարհայն ։

## ԳԼՈՒԽ Թ.

### Յաղագս ժողովոյն Նիկիոյ վասն Արիոսի, և առանձնանալոյ սրբոյն Գրիգորի։

Այսու ժամանակաւ յայտնեցաւ չա-նէր Արիոս աղէքսանդրացի, որ դաւաճանեալ(1) 'ի դիւէ անտի՝ ոչ գոլ ասէր զՈրդի 'ի բնութենէ Հօր, և ոչ հաւասար նմա, և ոչ յառաջ քան զյաւիտեանս 'ի Հօրէ ծնեալ, այլ արարած և յետ ժամանակի գոյացեալ։ Վասն այսորիկ իսկ ապա ժողով եպիսկոպոսաց լինի 'ի հրամանէ Կոստանդիանոսի 'ի Նիկիա Բիւթանացւոց. ընդ որըս և մերն Արիստակէս կոչեցաւ։ Եւ անդ հարք նոցա, յԺԸ, ըստ Հոգւոյն սրբոյ տուչութեան 'ի քակտել զաղանդն Արիոսի, նզովեալ մերժեն զնա 'ի հաղորդութենէ եկեղեցւոյ. իսկ նորա զարժանի ամբարշտութեան կրեալ հատուցումն, և խառն ընդ գարշելիսն 'ի վայր զփորոտիսն վայթեալ սատակէր։ Իսկ ապա մերն Արիստակէս դարձեալ անտի գայր բերելով(2) ընդ իւր զարժանընկալն քանոնական կանոնեալ զգլուխս 'ի

(1) Չորս օրի. յաւէլեալ՝ դաւաճանեալ լինէր։

(2) Չորս օրի. բերեալ։

ժողովոյն. ընդ որ յաւէտ խրախ լեալ սրբոյն Գրիգորի՝ յաւելոյր այլ եւս գլուխս ՚ի նոյն ՚ի զգուշութիւն վիճակելոց իւրոց: Բայց յորժամ հետէ եկն սուրբն Արիստակէս ՚ի ժողովոյն Նիկիոյ, այլ ոչ եւս յաւել երեւել սուրբն Գրիգորիոս մինչեւ ցվախճան կենաց, այլ երթայր բնակէր լռելեայն ՚ի Մանեայ այրս, ըստ գրեցելումն թէ՝ ՚ի նաւահանգիստ փութայ նաւ խռովեալ, և անձն ժուժկալ խնդրէ զանապատ: Իսկ այսպ լուսաւորութեանս մերոյ նահապետի սրբոյն Գրիգորի և առաքելական աթոռոյ նախաշաւիղ ճանապարհի՝ ՚ի սկզբանց անտի կալեալ յաթոռ հայրապետութեան մինչեւ ցայն վայր՝ յորում ոչ եւս յաւել ումեք երեւել, ունին ամք երեսուն:

## ԳԼՈՒԽ Ժ.

### Յաղագս մահուան սրբոյն Արիստակէսի և Տրդատայ Թագաւորին.

Իսկ սուրբն Արիստակէս ժառանգ հայրենի աթոռոյն, ամենայն իրօք զհետ երթայր սուրբ և արդար վաստակոց, ջա-

նացեալ քրիստոսադիր կիտիւն նուաճել զհօտ իւր 'ի կամս Քրիստոսի, զոմանս հաւանողականաւ, իսկ զոմանս բռնաւորականաւ կարգաւ ջանայր պահել յակատանքի. և իբրեւ զսուր ինչ յազդեր միշտ ունելով զհոգւոյն շարժմունս, յանդիմանէր զորս գտանէր 'ի չար գործս հակառակ հոգւոյն։ Ընդ որոյ ապա և Արքեղայոս ոմն կուսակալ Ծոփաց աշխարհին կշտամբեալ 'ի նմանէ սակս չար գործոց իւրոց, ըստ դիպմանց իմն ճանապարհի ուրեմն աշխարհին Ծոփաց, ժպրհեալ սխորտ իմն մտօք սպանանէ ըդսուրբն սրով, և փախստեայ ինքն գնացեալ յարեւմուտս Տաւրոսի։ Զոր ապա բարձեալ զնշխարեալ մարմինն նորուն աշակերտացն, տարեալ հանգուցին յԵկեղեաց 'ի Թիլն աւանի։ Կացեալ ինքն յաթոռ հայրապետութեան ամս եւթն. ոչ թաղումն թերեւս զնորայն վարկեալ իմն, այլ վերափոխումն յաշխարհէ յայսմանէ յաշխարհն կենդանեաց, ուր ոչ լոի համբաւ մահու՝ այլ մշտնջենաւորական ուրախութիւն։ Իսկ զկնի սորա անդրանիկ եղբայր սորուն Արսթանէս՝ յաջորդէ յաթոռ նորուն, որպէս և հաճոյ թուեցաւ Հոգւոյն սրբոյ։

Բայց հոգեւոր ճառագայթն մեր սուրբն

Գրիգոր ամս բազում կեցեալ յայրին Մանեայ, վախճանի անգիտաբար իմն. Թաղեալ 'ի հովուաց, իբր գտեալ զնա 'ի կարգ իմն աղքատաց: Այս զկնի բազում ամաց գտանէ զոսկերս մարմնոյն նորա Գառնիկ ոմն ճգնաւոր՝ աստուածային իմն գուշակես տեսչութեամբ. և տարեալ դնէ 'ի գեօղն Թորդան յիւր իսկ 'ի զբօսանոց պարտիզկանն:

Զկնի ամաց ինչ ապա և սուրբն Տրդատ արքայ յանհամբերութիւն բարուց և յանհնազանդից ճարտարութեան խարդաւանեալ խորամանկութեամբ, և տուեալ նմա յարքունումն մահու. զոր տարեալ հանգուցանեն զմարմին նորա 'ի նմին աւանի 'ի նոյն պարտիզան, մերձ եղեալ 'ի քնարանս սրբոյն Գրիգորի. որ համեմատ ընդ նմա իսկ զամենեսեան արտորոշէր 'ի ճանապարհաց չարաց, վերակացու երկրորդ լեալ լուսաւորութեանս մերում: Իսկ մեծն Վրթանէս մինչդեռ էր 'ի Տարօն գաւառին 'ի մատրանն Յովհաննու Մկրտչի և Աթանագինեայ վկայի, մահ սպառնացեալ լինէր նմա 'ի ծածուկ իմն 'ի բնակչաց Սիմ լերին, որք վասն ապիրատ և անաղդակ չար գործոց միշտ յանդիմանեալ առ 'ի նմանէ էին (1): Իսկ նա-

(1) Եղիշ. որ. լինէ լն:

քա զգացեալ ապա և տեղի՝ տուեալ չարին . գնայ փախստեայ 'ի գաւառն Եկեղեաց . անդ կալեալ իւր կայեան բնակութեան :

Իսկ յետ մահուան որբոյն Տրդատայ անօրէնն Սանատրուկ երկրորդ՝ ազգաւ Արշակունի տանէ , զոր կացուցեալ էր նահապետ Տրդատայ 'ի Փայտակարան քաղաքի , և յետ մահուան նորա ապստամբութեամբ բազմաւ թագ իւր կապեալ . ըստ ամբարիշտ հրամանի նորա բարբարոս հիւսիսական ազգքն այնորիկ զսքանչելի մանուկն Գրիգորիս , զոր եպիսկոպոս Աղուանից կացուցեալ էին 'ի տոհմէ որբոյն Գրիգորի , սպանանեն ձիախռոխտ ընթացութեամբ 'ի Վատնեան դաշտին , և տարեալ հանգուցանեն զսուրբ մարմին նորա 'ի գեօղն Ամարաս՝ որ 'ի փոքր Սիւնիս :



## ԳԼՈՒԽ ԺԱ.

Յաղագս Թագաւորելոյ Խոսրովայ և Տիրանայ , և Հայրապետութեան որբոյն Յուսկան :

Յետ այսորիկ ապա մեծն Վրթանէս չոգաւ գնաց առ կայսրն Կոստանդնոս որդի

Կոստանդիանոսի, ըղձակերտութեամբ առ 'ի նմանէ հայցեալ թագաւորեցուցանել Հայաստանեայցս զԽոսրով փոխանակ հօր իւրոյ Տրդատայ, զի ախրեսցէ մեզ, ասէ, Քրիստոսակարգ տէրութիւնդ ձեր, և մի լիցի մեզ տիրել Պարսից անաստուածից։ Զոր և ողջախոհաբար ընկալեալ զաւուրբ այրըն, և կատարեալ եւս զխնդիրն, կացուցանէ թագաւոր Հայաստանեայցս զԽոսրով։ Եւ մեծն Վրթանէս յետ մահուանն Խոսրովայ առեալ ընդ իւր զՏիրան որդի Խոսրովայ՝ չուէ գնայ առ կայսրն Կոստանդիանոս, թագաւորեցուցանել զնա փոխանակ հօր իւրոյ։ Իսկ կայսրն ապա ըստ առաջին նախնին բազմապատիկ պատուով մեծարեաց(1) զնա, և առ ձեռն պատրաստ զհայցուածսն կատարեալ՝ առաքէ 'ի Հայս պայծառապէս զՏիրան թագով պսակեալ, որ եկեալ տիրէր հայրենի տէրութեանն։ Իսկ ապա անօթն լրութեան և խորհրդածուն խորոցն Աստուծոյ, և առաքելական աւանդիցըն քարոզ մեծն Վրթանէս՝ լցեալ զկէս կենացս փոխի յաշխարհէ աստի յաշխարհն կենդանեաց, կալեալ զաթոռ հայրապետութեան ամս հնգետասան։ Եւ տարեալ

(1) Երկու օրէ. մեծարեալ։

հանգուցանէն զնա ընդ հայր իւր 'ի գիւղն Թորդան ։

Եւ յաջորդէ զաթոռ նորա Յուսիկ որդի նորա, որ հետեւող հայրն առաքինութեան դառեալ՝ հանդիսանայր միշտ 'ի բոլոր բարեկարգութիւնս ։ Բայց յետ հրաժարմանն Արտաշիրեայ Յուլիանոս անօրէն թագաւորեալ 'ի Հռոմ, և հալածեալ 'ի վերայ քրիստոնէութեան Աստուծոյ՝ կռամոլ դառեալ ուրանայր զՔրիստոս, և յարուցանէր[1] հալածանս 'ի վերայ եկեղեցեաց ։ Նա պատուիրէր 'ի մեծն Տիրանայ առեալ՝ կռապատկեր իւր ընդ կացուցանէր. և ապա զպատկեր իւր նկարեալքն՝ որ ընդ դիւաց պատկերօք էր պատճառեալ, հրամայէ Տիրանայ կանգնել յեկեղեցւոջ իւրում. և վասն զի առ վտանգի երկիւղին՝ իւրովի Տիրան տարեալ զպատկերն կանգնէր յեկեղեցւոջ իւրում (2) 'ի Ծոփ գաւառի. վասն այնորիկ շփոթեալ 'ի տեղւոջն սուրբն Յուսիկ հոգեւոր վարդապետութեամբ որոշել զնա 'ի չար մտածութենէն հնարէր ։ Իսկ իբրեւ քինոյ

(1) Երեւ օրի․ յարուցեալ ։

(2) Ցեղինի օրի․ պահանջէ՝ և վասն զի առ վտանգի երկիւղին իւրովի Տիրան տարեալ զպատկերն կանգնէր յեկեղեցւոջ իւրում ։

զլսելիսն առ 'ի չլսել, յափշտակեալ ապա զպատկերն 'ի ձեռաց նորա և ընկեցեալ յերկիր և ոտնհարեալ ոտիւքն 'ի վերայ խորտակէր: Ընդ որ և 'ի չարութիւն խոկ Տիրանոյ բորբոքեալ՝ հրամայէ հարկանել զնա վարոցօք, մինչև անդէն զհոգին աւանդել: Իսկ ծերունին Դանիէլ վասն այնորիկ չար անզգամութեանն անիծակուր զարքայն արարեալ, հրամայէ ապա և զնա խեղդամահ առնել. զոր տարեալ հանգուցանեն զնա 'ի Հացեաց վանս: Իսկ զմարմին սրբոյն Յուսիկանն տարեալ դնեն ընդ հարս իւր 'ի գիւղն Թորդան, որ եկաց 'ի հայրապետութեան ամս վեց. Բայց զի որդիք սրբոյն Յուսիկանն Պապ և Աթանագինէս՝ ըստ որում խաւարեցուցին զմիտս իւրեանց անմտութեամբ, ընդ նմին և սարսափելի մահ անձանց իւրեանց նիւթեցին. զի հրացայտ ցոլմունք 'ի վայր հոսեալ սատակէր զերկոսեանն 'ի միում աւուր. մանկիկ մի փոքրիկ Ներսէս անուն՝ միայն թողեալ իւր որդի Աթանագինէ, որ յայնժամ էր 'ի վարժս ուսման 'ի Կեսարիա: Եւ ապա վասն ոչ գտանելոյ այր յազգէ սրբոյն Գրիգորի. ընտրեցին զոմն Փառներսեհ անուն Աշ-

(1) Այսպէս ունին ամենայն գրչագիրք. Ընթեռ տրորեալ:

տիշատէ, և կացուցին զնա յաթոռ հայրապետութեան ։ Նա ոչ աւելի քան զերիս ամս տեւեալ՝ վախճանի ։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

Յաղագս Հայրապետութեան Տէր Ներսէսի և աթոռանաց նորին, և ժողովոյն Կոստանդինուպօլսոյ ։

Այս Արշակ արքայ որդի Տիրանայ կուրացելոյ ըստ արժանւոյն 'ի Պարսից արքայէ, առաքէ զՆերսէս զորդին Աթանագինեայ որդւոյ Յուսիկանն ըստ առաջնոյ կարգին 'ի Կեսարիա՝ ձեռնադրել 'ի Հայրապետութիւն. որ և սքանչելի իմն նշանք պատմի լեալ. զի մինչդեռ կայր ընդ բեմականան 'ի ձեռնադրութեան անդ. շնորհք Հոգւոյն որպէս աղաւնակերպ, 'ի վերայ գլխոյ նորա հանգուցեալ. 'ի զարմացումն զբոլոր կղերիկոսս եկեղեցւոյն ածեալ լինէր ։ Եւ այսպէս ապա լուսազարդեալ նորա՝ գայ հաստատէ զեկեղեցական յարմարութեամբ զբոլոր կարգս ուղղութեան, բարենախանձ լինելով 'ի նախանձ հոգեւոր ։ Եւ նախ ապա

զամենայն անգթութեան (1) արմատս խլեալ՝ փոխանակ 'ի ներքս ածէ զողորմութիւն. չէնէ և աղքատանոցս առ 'ի մխիթարութիւն վշտացեալ մարմնոց մարդկան, ուրկաց և բորոտից և հաշմից և բոլոր վտանգելոց, ռոճիկս նոցա կարգեալ 'ի գիւղից և 'ի գերդաստանաց, զի ոչ լիցի նոցա արտաքս ըստ բնակութիւնս իւրեանց ելանել։ Կարգէ և վանորայս օտարանոցս և հիւրանոցս և որնանկանոցս՝ 'ի քաղաքագիւղս և յաւանս. այլ և յանապատս մենաստանս և խրճիթս կուսակրօնից և միանձանց յարդարէ։ Բառնայ և զմերձաւոր խնամութիւնս և զկրծադիր ոճիրս 'ի վերայ մեռելոց. և ապա այնուհետեւ ոչ իբրեւ զբարբարոսս այլանդակս, այլ իբրեւ զհամեստագոյն քաղաքացիս լինէր տեսանել զաշխարհս մեր։

Զայսպիսի բարեկարգութե՟ ձև և զշուք տեսեալ ապա թագաւորին և նախարարացըն Հայոց, այլ և զխստամբեր վարս նորա ճգնողականս, ընդ միտ եդին (2) ըստ այլոց եւս ոմանց և զնա եւս նախակարգել 'ի պատիւ Պատրիարգութեան։ Բանզի փոքր ինչ յառաջ քան զայս՝ Կոստանդիկոս որդի

(1) Մի օր. անգիտութեան։

(2) Չորս օր. Եդեալ։ Երկուս օր. ընդ այլոց։

մեծին Կոստանդիանոսի յԵփեսոսէ 'ի Կոստանդինուպօլիս զնշխարս ոսկերաց Յովհաննու աւետարանչին փոխեալ, եւ յայնժամէ համարձակութիւն առեալ պատրիարգ 'ի Կոստանդինուպօլիս կացուցանէ։ Ըստ սա բանին (1) այսմ՝ պատճառի. համարձակութիւ. և Երուսաղէմացւոցն առեալ զիւրեանցն եւ ս. աթոռ հաստատէին 'ի պատիւ Պատրիարգութեան՝ իրաւունս համարեալ. ըստ որում՝ և նմա գոլ տեսեալ եղեւ Բանին Հօր ծնունդ և ընդ մարդկան շրջել, և 'ի Յովհաննէ մկրտիլ և խաչիլ և թաղիլ. և յերրորդ աւուր յառնել։ Իսկ վասն զի ցայն վայր չորք միայն էին ընդ երկրա Պատրիարգք՝ ըստ չորից Աւետարանչացն, Մատթէոսին՝ յԱնտիոք, Մարկոսին՝ յԱղեքսանդրիա, Ղուկայն՝ 'ի Հռոմ, եւ Յովհաննուն՝ յԵփեսոս. սակս յայսմանէ իրակութեանց վէճ բովանդակեալ կայր։ Ըստ ամին սակի ապա և մերն Թագաւոր Արշակ և Նախարարութիւնք Հայոց համարձակութիւն առեալ կացուցին 'ի Պատրիարգութիւն սանս Խորգամայ զմեծն Ներսէս. փաստս իրաւախոհս ըստ արժանին 'ի մէջ առեալ զոր առաքեալն զԲարդուղիմէոս

(1) Երկ. օրէ. յայսմ՝ խօս յայս պատճառի։

և զԹադէոս, որք Աքանասեանս ազգին մի-ձաւեցան ՚ի Տեառնէ քարոզք և աւետա-րանիչք, և նշխարեալ ոսկերք նոցա կան ՚ի միջի մերում, զորոց և զաթոռն իսկ ընկա-լաւ կենդանի մարտիրոսն Գրիգորիոս: Այլ-այս խորհուրդն զգործն կատարեաց, եօթն միանգամայն բովանդակեալ գտանէր թիւ Պատրիարգութեան, որ կայ և մնայ պա-հեալ մինչեւ յաւիտեանս ժամանակաց:

Այլ այսպէս այս նահապետութի խոր-հրդոյ եկեղեցւոյ ՚ի մերում աշխարհի լի-նել բովանդակաբար, ինն միանգամայն գաւառակարգութեամբ պատուեալ գլխաւո-րօք որք եպիսկոպոսացն Վրաց և Աղուա-նից՝ որք եպիսկոպոսս ընդ ձեռամբ նորա կարգեալ: Իսկ ՚ի Սեբաստիա և ՚ի Մելի-տինէ և ՚ի Մարտիրոսաց քաղաքին Մեա-րաղօքինս կացուցանէին: Իսկ եպիսկոպո-սունս այս լսա որոշեալ մինակացն ի-րաքանչիւրոցն հատուածին, և քահանայս և սարկաւագունս և կէս սարկաւագաց և վերծանողս և սաղմոսերգուս. այսպիսի ցան և ցիր ընդ բոլոր եկեղեցիս Հայաստանեայ-ցըս փայլէայէս յարդարեալ լինէին ՚ի փա-ռս Աստուծոյ:

Իսկ ՚ի նշկահելն Արշակայ զՎաղենտիա-

նոս կայսր, մեծաւ ցասմամբ Վաղէնտինեայ ապա լցեալ լինէր, և սպանանէ զեղբայրն Արշակայ զՏրդատ՝ որ 'ի պատանդի առ նըմա էր. զոր ապա զգուշացեալ մեծին Ներսեսի, փութացեալ և առ կայսր հասեալ, և 'ի հանդարտութիւն շրջեալ զնորայն կամս, և մեծապատիւ առ 'ի նմանէ լեալ ըստ օրինի Պատրիարքաց. և յինքն զորդի սպանեցելոյն Տրդատայ և զայլս ևս պատանդս հայցեալ առեալ 'ի կայսերէ՝ գայ 'ի Հայս խաղաղութեամբ բազմաւ:

Այլ 'ի վախճանել Վաղենտիանոսի՝ Թագաւորէ անօրէնն Վաղէս եղբայր նորին. և վաղվաղակի մեծ զօրավարն Թէոդոս զօրու մեծաւ առաքէ հրոսակ Արշակայ արքայի. որ և ակամայ իսկ աղաչեալ զմեծն Ներսէս՝ չուել խնդրել զխաղաղութիւն, ոչ ապա նա անփոյթ առնէ զկորստենէ վիճակելոց իւրոց, այլ վաղվաղակի առեալ զՊապ որդի Արշակայ տանի պատանդ առ մեծն Թէոդոս զօրավար. այսու և լսող լեալ դաւանոյ առ կայսր՝ ընդ իւր տարեալ զՊատրիարքն Ներսէս հանդերձ պատանդաւն: Իսկ անօրէնն Վաղէս ոչ իսկ արժանի արար տեսանել զսուրբ այրն Աստուծոյ, այլ 'ի կղզի մի հարկաւորէ զնա, հրամայեաց արտաքսման

նել խորօքն հանդերձ կղերիւք, յորում ոչ ինչ ամենեւին զատանիւր ոգեպահ պարենի աւուր միոյ, այլ 'ի հրամանէ Աստուծոյ ցնդմամբ ալեացն ծովն զձուկն արտաքս ընկենլով՝ 'ի կերակուր նոցա մատակարարէր զամիսս ութ։

Բայց յաղագս անօրէն Վաղէսի ասի բան, թէ ըստ հրամանի (1) ձեռինն Աստուծոյ սուրբ վկայն Գէորգէոս անըմբռնելի ձեռամբ զնա սատակէր, արժանի չար խորհրդոցն նմա հատուցեալ։ Եւ զկնի նորա առնու զթագաւորութիւն Թէոդոս մեծըն և բարեպաշտն և աստուածասէր, որ զամենայն նիւթս խաւարային խորհրդոց փարատեալ 'ի բաց, և զանբիծ հաւատս հիմնացեալ (2) հաստատեաց. և ապա որք 'ի մետաղս 'ի Վաղեսէ արտաքսահմանեալք էին՝ դարձոյց յիւրաքանչիւր տեղիս, ընդ որս և զմեծն Ներսէս ածեալ առ իւր պահէր, մինչեւ 'ի ձեռն նորա զամբարիշտ հայհոյութիւնն Մակեդոնի 'ի ստուգութի հաւատոյ ճշմարտութե դարձուսցէ։ Եւ ապա ժողով եպիսկոպոսացն միանգամայն ՃԾ (150) 'ի Բիւզանդիոն արարեալ. նզովեալ մերժեցին 'ի բաց զՄակեդոն և զամենայն հոգեմարտսն։

(1) Երկրոր օրի. յաւելուած հզօր ձեռինն։
(2) Երկրոր օրի. հիմնեցեալ։

## ԳԼՈՒԽ ԺԴ.

Յաղագս Թագաւորելոյ Պապայ և պատերազմի նորա ընդ Մեհրուժանայ ուրացելոյն, և մահուան մեծին Ներսէսի և նորին Հայրապետութեան:

Բայց Շապհոյ Պարսից արքայի կալեալ և կապեալ զԱրշակ արքայ Հայոց՝ դնէ յԱնուշն կոչեցեալ բերդի. իսկ Արշակայ յայնմ բերդի սրով 'ի սիրտ խոցեալ՝ իւրովի զինքն զրկէ 'ի կենաց աստի: Զայսպիսի չար աղէտս լուեալ մեծին Ներսէսի, ըղձակերպութեամբ իմն հայցէ յԻնքնակալէն Թէոդոսէ թագաւորեցուցանել Հայոց զՊապ որդի Արշակայ, զոր և արարեալ իսկ, և հանդերձ սրբոյն Ներսիսիւ փաղփաղակի առաքէ 'ի Հայս, որք եկեալ գտին զՄեհրուժանն ուրացող՝ բազում զօրօք միապետեալ զՀայս(1), և ապա խմբեցին 'ի պատերազմ ընդ միմեանս 'ի Ձիրաւ: Եւ իբրեւ յաւէտ իմն պատերազմն սաստկանայր, ելանէ ապա մեծն Ներսէս 'ի լեառն Նպատ, և ըստ օրինակին Մովսէսի տարածեալ զբազուկն 'ի յերկինս աղերսալի պաղատանօք առ 'ի Քրիստոսէ հայցէ լինել

(1) Երկու օր. 'ի Հայս:

պաշտպան քրիստոսադրոշմ բանակին, ա-
րալ և պարտեցանն. իսկ աստուածամարտ
մարտուցեալքն։ Եւ բանակքն Հայոց զա-
րացեալք՝ դիակամբք թշնամեացն լցին զա-
ռն առօրեւն զամենայն. ուր և ձերբակալ
իսկ արարեալ Ամբատայ զպիղծն Մեհրու-
ժան արծրունի, և երկաթ բոլորեալ 'ի ձեւ
պսակի՝ և շանթիւք հրոյ շողացուցեալ դնել
'ի գլուխ նորա, և այնպէս զնա սատակեալ։
Բայց Պապ արքայ միշտ հրապուրս յին-
քըն կրեալ 'ի ճակաճան աղտեղի գործոց.
վասն այնորիկ ապա հանապազ կշտամբ-
եալ և յանդիմանեալ լինէր 'ի սրբոյն Ներ-
սիսէ. Ընդ որում՝ յաւէտ դժարեալ Պապայ,
և յայտնի ինչ ոչ իշխեցեալ առնել, տայ
նմա արբուցումն մահու 'ի գիւղն Խաղ.
և լուծեալ զնա 'ի կենացս, իբրեւ 'ի չըք-
մեղս լինի՝ տարեալ թաղէին զնա 'ի Թիլն
աւանի. որ կալաւ զաթոռ հայրապետութե-
ամս երեսուն և չորս։ Զկնի սորա առեալ կա-
ցուցանեն յաթոռ նորա զՇահակ 'ի զա-
ւակէ Աղբիանոսի, այր գովելի և լի առա-
քինութեամբ, և բարեկարգութեամբ կր-
օնից. ոչ եւս ըստ սովորութեանն առաջ-
նոյ առաքեալ զնա 'ի Կեսարիա, այլ լքեալ
'ի բաց զօրէնն առաջին, ըստ օրինի պատ-

րիարգաց կալան կարգ, ժողով եպիսկոպոսաց ձեռնադրել որպէս Անտիոք, Աղէքսանդր, Հռովմ, Եփեսոս, Կոստանդինուպօլիս, և Երուսաղէմ(1), զի մի այլոց ումանց ընդ ձեռամբ անկցի՝ որ ինքնակալութիւն է պատուեալ Պատրիարգութիւն։ Իսկ յետ այսորիկ իբրեւ ըմբռնեալ սպանաւ Պապ արքայ յինքնակալէն Թէոդոսէ, և փոխանակ նորա զԱրազդատ 'ի տանէ Արշակունեաց թագաւորեցոյց; յերկրորդ ամի սորա վախճանի պատրիարգն Շահակ, կացեալ յաթոռ հայրապետութեան ամս վեց։ Եւ եղբայր նորուն Զաւէն հաստատի յաթոռ նորա՝ նորին առաքինահրաշ վարուք պայծառացեալ։ Այս և զԱրազդատ եւս մեծն Թէոդոս տարասահմանեալ 'ի Թուլիս կղզի Ովկիանոսի, և թագաւորեցուցանէ միանգամայն զերկուս որդիսն Պապայ, զԱրշակ և զՎաղարշակ։ Իսկ յերկրորդ ամի Արշակայ իբրեւ եկաց Զաւէն 'ի հայրապետութեան ամս երիս՝ փոխեալ 'ի կենաց աստի, և կալաւ զկնի նորա զաթոռն Ասպուրակէս եղբայր նորուն, 'ի նոցին առաքինութեան յառաջադէմ գտեալ։

(1) Ոմանք 'ի գրչագրաց նախադրեն ունին՝ յԱնտիոք . . . յԵրուսաղէմ . . . յայլոց ումանց։

Բայց Շապուհ արքայ Պարսից զԽոսրով անուն Արշակունի թագաւորեցուցանէ իւրոյ կողման բաժնի, փոխան զի Արշակ տիրել հաճեցաւ արեւմտեայ կողմանն Յունական բաժնին ։ Այլ երկոցունց սոցա զվարս եւ զկարգս եւ զարութիւնս եւ զանարութիւնս եւ զպատերազմունս, թէ պիտոյ է քեզ բովանդակաբար ցուցցէ քեզ պատմութիւնն Մովսէսի Խորենացւոյն ։ Բայց յետ մահուան Արշակայ Մեսրովբ որ ՚ի Հացեկաց Տարօնոյ եւ աշակերտեալ մեծին ՚Ներսէսի, եւ էր քարտուղար ՚ի դրան արքունի, ընկեցեալ ՚ի բաց զպատիւ մարդկային՝ զհետ գնայր երկնաւորին, զվարս միայնակեցութեան ստացեալ. բայց զառաջադիմութիւն վարուց նորա եւ զքանչելիսն զոր նովաւ Աստուած ցուցանէր՝ բաւական ցուցցէ քեզ յայնցանէ որ նախ քան զմեզ պատմեցին ։



## ԳԼՈՒԽ ԺԴ.

Յաղագս հայրապետութեան մեծին Սահակայ, և տարածման գրոց դպրութեան յազգս մեր, և բարձման թագաւորութեան մերոյ։

Յետ այսորիկ ապա վախճանեալ հայրապետն մեծ Ասպուրակէս, որ կալաւ զաթոռ Հայրապետութեանն ամս հինգ, ի տեղի նորա յաջորդէ արքայ Խոսրով զՍահակ որդի մեծին Ներսէսի։ Սա վասն զի սա ստուգապէս գոլով ծնունդ առաքինութեան, յիրաւի ապա զհետ սորա ընթանայր սուրբ և արդար վաստակոց հանդէսք, որ յաշխարհի գոլով և իբրև զմնայպատաւորս ամենայն հեղանաց հանդիսիւ ընդ կարգս աշխարհիս անցանէր, մշտնջենաւոռունչ աղօթիւք հանդերձ իւրովք աշակերտօքն կատարեալ զպաշտօն բարեկարգութեանն։ Իսկ Արտաշիր որդի Շապհոյ Պարսից արքային կալեալ զԽոսրով արքայ Հայոց, և եդեալ յԱնուշն բերդի, և փոխանակ նորա թագաւորեցուցանէ զՎռամշապուհ եղբայր նորա։ Բայց մեծին Սահակայ երթեալ առ Արտաշիր Պարսից արքայ, մեծարի առ ի նմանէ յաւէտ չա-

տուով։ Սակայն զի արգոյ և պատուական ցուցանէ Աստուած զծառայս իւր առաջի անհաւատից, և ապա աչալուրջ երեսօք զբաղեղ նորա կատարէ զհայցուածս։ Իսկ եր- րեւ եկն սուրբն Սահակ, և զպարգեւեալսն Արտաշրէ հաստատեաց 'ի ձեռն մերոյ Վռամշապհոյ, մեռանի ապա Արտաշիր արքայ Պարսից, և փոխանակ նորա Թագաւորէ Վռամ։

Ընդ այն ժամանակս ապա եկեալ Մեսրո- պովբայ և բերեալ նշանագիր մերոյ լեզուիս, զոր գոգցես նմա պարգեւեալ 'ի տեսչութենէ Հորհացն Աստուծոյ. իսկ և իսկ 'ի հրամանէ մեծին Սահակայ ժողովէ մանկունս խոհեմամիտս, տրամախոհս, քաջուշեղս, փափկալանկս, և զպրոցս կարգէ ըստ գաւառաց գաւառաց՝ ուսուցանել մեծաւ պնդութեամբ։ Յետ որոյ չուեալ 'ի Վիրս, և անդ ըստ լեզուի նոցա պարեալ նշանագիր, վարդապետս և զպրոցս 'ի նմա եւս կարգէ։ Եւ ապա իջեալ 'ի կողմն Աղուանից, և նոցա եւս ստեղծանէ նշանագիր՝ ըստ կխաւհագագ և խեցբեկոր լեզուի նոցա, վերակարգելով 'ի նմա եւս աշակերտանոցս։ Եւ ապա ինքն դարձեալ դառնայ 'ի Հայս, և գտանէ զսուրբն Սահակ ան-

դադար 'ի Թարգմանութիւն պարապեալ ։

Բայց 'ի վախճանելն Վռամշապհոյ արքա-
յին Հայոց՝ գնայ այպա մեծն Սահակ առ ար-
քայն Պարսից Յազկերտ, և աղաչէ արձա-
կել զկապեալն Խոսրով 'ի Հայս փոխանակ
Վռամշապհոյ ։ Որոյ և կատարեալ իսկ ըղ-
հայցուածոն սրբոյ առնն, և տայ Խոսրովայ
զտէրութիւնն Հայոց ։ Բայց նա 'ի կրկնակի
Թագաւորելն, ոչ ինչ աւելի քան զմի ամ
կեցեալ վախճանի ։

Իսկ 'ի վախճանելն Յազկերտի, և փո-
խանակ նորա թագաւորեալ երկրորդն Վռ-
ռամ 'ի Պարս ։ Սա բազում դառն օձիս
զարթուցանէր 'ի Հայաստանեայս, և վըր-
դովէր զամենայն բարեկարգութիւնս՝ յեղ-
ծումն և յապականումն հասուցանել, զոր
և տեսեալ սրբոյն Սահակայ զչարին այնս,
գնաց 'ի մասն Յունաց. վասն զի յերկուս
ձեղքեալ բաժանեալ էր Հայք՝ 'ի մէջ Յու-
նաց և Պարսից ։ Իսկ մեծն Թէոդոս Թէպէտ
և յիսկզբան անդ ընդ ակամբ հայէր առ 'ի
չընդունել, սակայն 'ի բազմաց իմացեալ զի
զնա աստուածային շնորհօք, և ամենայն ա-
ռաքինապարդ վարուք, մեծաւ պատուով
և բարի օձանաւ ընդունի իբրեւ զնոյն ին-
քըն առաքեալ Քրիստոսի. այլ և զնշանա-

գիրն որ առ 'ի Նոցանէ յԱստուծոյ ընծայե-
ցաւ, հրամայէ փութով ուսանել, և զծախս
դպրոցացն յարքունուստ լինել։

Իսկ ապա սուրբն Սահակ խոկ և խոկ
առաքէ զՎարդան Թոռն իւր առ արքայն
Պարսից Վռամ, խնդրել զխաղաղութիւն.
և Նորա մեծարեալ՝ զհայցուածսն սրբոյն կա-
տարէ. Թագաւորեցուցանէ Հայաստանե-
այց զԽոսրով որդի Վռամշապհոյ։ Սա
զեղխ էր միշտ 'ի գիճական չարիս անարգել,
զոր և պատճառս քսութեան Նախարարացն
զայն դնեալ՝ Թուեցուցանէին տաղտկացեա-
լս զԻնքեանս առ 'ի Նմանէն գոլ. և բո-
ղոք առ մեծն Սահակ բարձեալ՝ հայցէին
կցորդակից լինելոց առնել, և չարախօս առ
արքայն Պարսից, զի կամ կալցի 'ի կապանս,
և կամ 'ի բաց ընկեսցէ Թագաւորն Հայոց։
Իսկ Նա Թէպէտ և զիրս բամբասանացն 'ի
սուտ ոչ հնարէր (1), սակայն մատնել զարքայն
իւր հեթանոս արքայի, ոչ առնոյր յանձն՝ յու-
սալով տեսանել զկանգնումն գլորելոյն և ոչ
զընկճումն։ Բայց, ասէ, լիցի ինձ գայլոյ զիմ
մատնել մոլորեալ ոչխար. զի Թէ անառակ
է, սակայն ոչ մկրտութեամբն դրոշմեալ է.
պոռնիկ է, այլ քրիստոնեայ է. գիճացեալ է

(1) Մէ օրէ. հանէր

մարմնով, այլ ոչ անհաստատ հոգւով. զեղխ է վարուք, այլ ոչ կրակապաշտ : Եւ այսպէս զախտացեալ իւր ոչխարն ոչ փոխանակէր ընդ առողջ գառանի : Այլ Թէպէտ և սուրբն այսպէս արդարախորհ լինէր, սակայն Վռամայ զունկըն չարախոհացն մատուցեալ, և առաւել Սուրմակայ որ զլեզուն ունէր սատակիչ պատրաստեալ՝ ակն կալեալ փոխանակ սրբոյն Սահակայ գահակալել յաթոռն : Եւ այսպէս 'ի բանս զԱրտաշիր արգելեալ, և մարզպան Պարսիկ Հայոց կացուցեալ. և ըզ Սուրմակն չարալեզու փոխանակ սրբոյն Սահակայ կացուցանէ, որ ոչ աւելի քան զմի ամ տեւեալ՝ հալածի 'ի նոյն նախարարաց :

Յետ որոյ զկնի նորուն կացուցանէ Վըռամ զոմն ասորի Բրքիշոյ, այր ապարասան յափշտակող, որ տանուտիկին կանամբք զաւուրն իւր մատակարարէր : Եւ վասն այր և զա ևս նախարարքն ատեցին, այսպէս և այլ ոմն ասորի Շմուէլ անուն, որ հետեւող գտանէր վարուցն Բրքիշոյի՝ առաւել ևս ագահութեան մասամբք. և մեծին Սահակայ միայն զվարդապետելն հրամայէ, և ձեռնադրել զոր Շմուէլն հրամայէ : Բայց մեծին Սահակ յետոյ աղաչեալ 'ի նախարարացըն՝ ոչ առնոյր յանձն կրկին առաջնորդ-

զինել նոցա . սակայն ոչ ինչ կարէր միշտ զհոգեւոր կամսն դիւրացուցանել մանկանց եկեղեցւոյ ։ Բայց 'ի վախճանելն Վռամայ՝ և փոխանակ նորա Յազկերտի որդւոյ նորա թագաւորել, ապա և սուրբն Սահակ հիւանդացեալ 'ի հիւանդութեան մեծ՝ առ Քրիստոս վերափոխի 'ի Բագրաւան գաւառի 'ի Բլուրն կոչեցեալ գիւղ, որ զանմարմնոցն յինքեան բերեալ զվարս 'ի մահկանացու մարմնի զանմահն թողոյր իւր յիշատակ բարւոյ, ընդ հրեշտակսն դասակցելով պարս, դասակարգեալ եւս ընդ ամէ աթոռոյն քրիստոսականաց յանդերանութիւնն (1) ։ Իսկ զպատուական մարմին նորա տարեալ հանգուցանեն 'ի Տարօն 'ի գիւղն Աշտիշատ ։ Բայց զկնի վեցից ամսոց միայն, ապա և սուրբն Մեսրոպ փոխի 'ի կենաց աստի 'ի Վաղարշապատ քաղաքի, որ զրեթէ ըստ երկնայնոցն զուարթնոց զկարգս ամենեցուն զինքն բոլորապէս ցուցանէր ։ ուր ապա և նշան սքանչելի 'ի վերայ նորա փայլատակէր՝ խաչանման լոյսն շողէր առկացուցեալ յերկար ժամ (2), մինչեւ բարձեալ տարան զսուրբ մարմինն 'ի գեօղն Օշ-

(1) Մի օր . անդ յերանութիւնն ։
(2) Մի օր . յերկար ժամու ։

չական , զհետ ընթանալով դագաղացն նորին. բուսեղէն խաչանման տեսիլն. և անդ 'ի հանգիստ զնա փոխեալ. ապա տեսիլն աներեւոյթ լինէր ։ Բայց զաթոռ Հայրապետութեանն տեղապահութեամբ յաջորդէր Յովսէփ քահանայ 'ի Վայոց ձորոյ (1) 'ի Հողոցեմանց գեղջէ ։ Սակայն 'ի հրամանէ Յազկերտի Սուրմակն կատարէ զձեռնադրութեան զլրումն զամս վեց , մինչեւ մեռաւ իսկ . և ապա զաթոռն Յովսէփ 'ի ձեռնադրութիւն Հայոց ։

## ԳԼՈՒԽ ԺԵ.

### Յաղագս նահատակութեան տեառն Սահակայ և Ղեւոնդեանց քահանայից ։

Աստ ապա սպառասպառ 'ի վերջ հասեալ դադարէր թագաւորութիւնն զօրհի Արշակունեաց 'ի Հայաստանեայցս , ընդնմին և Հայրապետութիւնն յազգէ երիցս երանեալ Լուսաւորչին մերոյ Գրիգորի . և այր իւրաքանչիւր զկամս իւր կատարեալ՝ վրդովիւր խաղաղութիւնն , և խոթնանայր բարեզարդութիւնն . և ապա ամենք 'ի մերոց նախարարաց դաւաճանեալք 'ի չարէն , ուրացան զհաւատս քրիստոնէութեան , հե-

(1) Երկու օր . 'ի Վայոց ձորոյ ։

Թանտական օրինաց հնազանդեալ։ Իսկ աւագագոյնք երկուք 'ի նոցանէ Շաւասպ արծրունի, և Վնդոյ 'ի Դվնի քաղաքէ, հրամայեն շինել զմեհեանն որմզդական և զատուն հրապաշտութեան. և քրմապետ կարգէր Վնդոյն զորդի իւր զՇերոյ, և դը-նէր օրէնս 'ի Պարսիկ մատենի, բազում և անհնարին բարս չարեաց գործոց, և լի մը-թացուցիչ և նսեմական պիղծ ուսմամբ։

Լուեալ ապա վասն քաջին Վարդանայ Թո-ռնին մեծին Սահակայ, թէ չիջաւ բարեկար-գութիւնն եկեղեցւոյ, և տօնք տարեկանաց տօներցան, յանկարծակի ապա զօր գումա-րեալ և յանդուգն յարձակմամբ 'ի վերայ հասեալ, զանօրէնն Շաւասպ փայլակնահար իմն սրով սատակէր. և զմարզպանն Մըշ-կան փախստական առնէր, և զպիղծն Վըն-դոյ ձերբակալ արարեալ, յատրուշանի կը-րակին զոր շինեաց ինքն իսկ 'ի Դվին՝ այ-րէր, և զորդի նորա Շերոյ 'ի վերայ բագ-նին զփայտէ կախէր։ Եւ 'ի տեղի բագնին շինէ եկեղեցի մեծ անուանակոչութեամբ սրբոյն Գրիգորի, անդ փոխելով զաթոռ հայրապետութեանն. և հաստատեալ կա-ցուցանէ 'ի նմա զմեծ հայրապետն Գիւտ, վասն զի սուրբ հայրապետն Յովսէփ 'ի

մեռանել բանից ըմբռնեալ էր ընդ որբոց Ղեւոնդեանցն, որ թէպէտ դեռ եւս կայր կենդանի, սակայն ոչ պերճ. վարկան նախարարքն Հայոց տանց հօլուի զհօրն Քրիստոսի թողուլ, զի մի փարատեսցին ի հեթանոսական գնդացն, կամ թէ ի հրամանէ սրբոյն իսկ Յովսեփայ այն իրագործիւր։ Եւ այսպէս առա վերստին նորոգիւր գեղեցիկ կարգ եկեղեցւոյ սրբոյ։ Եւ յայնմհետէ ապա հնազանդէին Հայք առաջնորդութեան քաջին Վարդանայ մինչեւ ցօր մահուան նորա, որ բազում պատերազմունս քաջութեան վան առ ի Քրիստոս հաւատոյն կատարեալ, արժանի գտանի առնուլ բազում և այլ եւս ընկերօքն զպսակն անթառամ ի յանմահ արքայէն Քրիստոսէ։ Զկնի այսորիկ առա լինի կատարումն սրբոյ կաթուղիկոսին Յովսեփայ, կալեալ զպսակ Հայրապետութեանն զամս ութ. ընդ նմին և այլ եւս սրբոց եպիսկոպոսացն և քահանայիցն Ղեւոնդեանց և սարկաւագաց նոցա(1) ի Պարս յանօրէն Պերոզէ, որք եդին ի գլուխս իւրեանց զպսակն մարտիրոսական կազմեալ յամենասուրբ ձեռացն Աստուծոյ։

(1) Երէք զէ. նորա։

## ԳԼՈՒԽ ԺԶ.

### Յաղագս գործոց Վահանայ Մամիկոնէի, և կաթողիկոսացն :

Այսու ժամանակաւ մեծ հայրապետ֊ տըն Գիւտ որ յՈթմսոյ գեղջէ, կացեալ ամս տասն յաթոռ հայրապետութեան՝ փոխա֊ ձանի : Սա զկնի նորա յաջորդէ զաթոռ հայրապետութեան Յովհան Մանդակունի, որ առլցեալ էր ամենայն հոգևոր հան֊ ճարով, և կարգս յօրինեալ ճոխացուցանէ սպայծառապէս զամենայն աղօթական ժա֊ մակարգութիւնս եկեղեցւոյ սրբոյ. և յար֊ դարէ ևս ճառս զգուշացուցիչս դիտաւո֊ րական կենցաղոյս՝ որ բերէ զոգւոյն փրկու֊ թիւն :

Սա յաւուրս սորա պայազատէր զՀա֊ յաստանեայս Վահան Մամիկոնեան որդի Հմայեկի, եղբօրորդի սրբոյն Վարդանայ, որ արիաբար յաղթեալ ամենայն զօրաց ե֊ կելոց ՚ի վերայ նորա, և ժողովեալ զհարկ աշխարհիս շինէ այնուիկ զեկեղեցիս զա֊ ւերեալս ՚ի թշնամեաց, թելադրութեամբ և խրատու և աղօթից նպաստիւ սուրբ հայ֊ րապետին Յովհաննու Մանդակունւոյ : Սա

մինչդեռ Պետրոս զկորուստ աշխարհիս Հայոց հնարէր կատարել. յանկարծօրէն յաղօթից որբոց առնն Աստուծոյ Յովհաննու սատակի 'ի Բուշանաց՝ ինքն և առհասարակ զօրք իւր: Յետ սորա Վաղարշ Թագաւորէ Պարսից, որ բարեխնամից լռող լեալ՝ 'ի Վահան զաշխարհս մեր հաւատոյր: Իսկ մեծ հայրապետն Յովհան Մանդակունի կացեալ յաթոռ Հայրապետութեանն ամս վեց, փոխի առ Քրիստոս: Եւ զկնի նորա ապա Բաբգէն 'ի նորուն յաշակերտութենէ՝ կալաւ զաթոռ Հայրապետութեանն. յորում ժամանակի Պերոզ Թագաւորեալ Պարսից, և 'ի դուռնն զՎահան կոչեալ, ետ նմա բդմարզպանութիւն Հայոց և առաքէ 'ի Հայս:

Զայսու ժամանակաւ աստուածահաճոյ փառուք և բարեպաշտ հաւատով երջանիկ արքայն Հոռոմոց Զենոն վախճանիւր, որ 'ի ժամանակի տէրութեան իւրոյ զմիգատարր և զօդախիտ բքայորդոր չար հերձուածն Քաղկեդոնականացն 'ի բաց մերժեալ, զլուսափիւռ պայծառատարած ճառագայթաւէտ զհաւատս առաքելական ծաղկեցուցանէր յեկեղեցւոջ (1) Աստուծոյ: Իսկ յետ սորա քաջանունն Անաստաս կա-

(1) Մի օր. յեկեղեցիսն:

ցեալ յանթոռ թագաւորութեանն Հռու-
մոց, նմանապէս՝ կամ լինել եւս առաւել
ճշմարտասիրաբար և հաճոյականար Նստու-
ծոյ վարուք հաստատէր զաւանդութիւն
բարեպաշտութեան Հարցն որոց. և շըր-
ջաբերական թղթովք նզովեաց զամենայն
հերձուածողս, ընդ ամենեսին (1) և զժո-
ղովն Քաղկեդոնի նզովէր։

Իսկ ապա զկնի յայսմ ժամանակի բարե-
պաշտութեան յաշխարհին Հռոմոց՝ մեծ
հայրապետն Հայոց Բաբգէն առնէ ժո-
ղով եպիսկոպոսաց Վրաց և Աղուանից,
'ի Նոր քաղաքի՝ 'ի սուրբ կաթողիկէի, 'ի
մայրն եկեղեցեաց Հայոց, որք նմանապէս
նզովեալ խոտեցին զժողովն Քաղկեդոնի.
քանզի և չեւ իսկ էր ընկալեալ զաշխարհա-
կործան աւանդութիւնն, այլ 'ի նմին հե-
տևին սրբոյն Գրիգորի հաստատեալ կային.
Եւ այսպէս յայսմ ժամանակի մի հաւատ
բարեպաշտութեան առհասարակ հաստա-
տեալ կինէր յաշխարհին, Հայոց և Հռոմոց.
Վրաց և Աղուանից՝ հաւասար ամենե-
ցունց, և նզովեալ և 'ի բաց ընկեցեալ
զժողովն Քաղկեդոնի։ Իսկ իբրեւ անց ե-
րեսուն 'ի վերայ ճշմարիտ հաւատոցն ան-

(1) Երկու օրի. ամենին։ Մէ օրի. ամենեսին։

ցանէին, և զկնի Անաստասայ Յուստինիանոս անօրէն թագաւորէր, սա առլցեալ չարութեամբ, զեղեալ և զինչեալ և զանյայտեալ Քաղկեդոնականն պղծաբանախառնութիւնն եղկելի նորոգէր, և զանուանեալն ըղփառանդամն մշտալից սանձարձակաց բերանոց սրբոց և ուղղափառաց 'ի վերայ հաստատէր(1), և գարշեալ արեամբ շաղախէր և զխոստովանս եկեղեցւոյ սրբոյ։

Բայց մեծ Հայրապետն Աբրահամ իբրև եկաց յաթոռ Հայրապետութեան ամս աւելի հինգ՝ վախճանեցաւ։ Եւ զկնի սորա զՍամուէլ 'ի գեղջէն Արծկէոյ նստուցանեն յաթոռ Հայրապետութեանն, և յորում ժամանակի Վարդ եղբայր Վահանայ պայազատէ զՀայս. և սորա եւս կացեալ յաթոռ Հայրապետութեան ամս տասն՝ վախճանի։ Եւ սորա յետ սորա զՄուշէ 'ի Նահանգէ Կոտէից, 'ի գեղջէ Այլաբերից(2) կացուցանեն 'ի Հայրապետական աթոռն, յորում ժամանակին մարզպանն Պարսիկ Հայաստանեայց տիրէր։ Սորա կացեալ յաթոռ Հայրապետութեան ամս ութ՝ վախճանի։ Եւ զկնի սորա զՍահակ 'ի գաւառէն Հարքայ, Ուղկայ գեղջէ՝ կա-

(1) Այլ օր. հաստուցանէր։
(2) Յերկրորդ օրինակ՝ 'ի գեղջէ Այլաբերից։

ցուցանեն 'ի Հայրապետական յաթոռն . և 'ի սորին եւս աւուրս մարզպանք Պարսիկք Հայաստանեայցս ամբարձին հրամանաւ Կաւատայ արքայի . սորա լեալ զաւուրս Հայրապետութեան իւրոյ ամս հինգ՝ վախճանեցաւ և սա : Ապա զՔրիստափոր 'ի գաւառէ Բագրեւանդայ, 'ի Տիրառինճ գեղջէ՝ նստուցանեն յաթոռ Հայրապետութեան, որ կացեալ զառաջնորդութիւն ամս վեց : Եւ զկնի սորա զՅովհաննէս՝ որ էր 'ի փոքր Եռաստոյ , կացուցանեն յաթոռ սրբութեան : Յաւուրս սորա Խոսրով Թագաւորէ Պարսից փոխանակ հօր իւրոյ Կաւատայ, և սորա ապստամբեալ 'ի նմանէ Վարդանն Մամիկոնեան՝ սպանանէ զմարզպանն Սուրէն 'ի Դվին քաղաքի , և ինքն հանդերձ այլովք նախարարօքն գնայ 'ի ծառայութիւն Յունաց : Իսկ Յովհաննէսի կացեալ զաթոռ Հայրապետութեան զամս երեք՝ վախճանի : Եւ զկնի սորա զՄովսէս 'ի գաւառէն Բագրեւանդայ, 'ի գեղջէ Եղիվարդայ՝ ածեալ հաստատեն յաթոռ սրբութեան : Ի ժամանակս սորա Խոսրով արքայ Պարսից զօր բազում գումարեալ՝ առաքէ հրամանաւ Վարդանայ, և լինի պատերազմ մեծ 'ի դաշտին Խաղամախեաց , և 'ի մշտնջան ազօթից

սրբոյն Ներսեսի անձնարին հարուածովք մաշեն զօրքն Վարդանայ զՊարսիկսն ։

Յաւուրս սորա Սահակ՝ որ էր ՚ի Սեբաստուհ գաւառէ՝ ՚ի Բուզանդաստան գեղջէ, և յազգէ Մոգ, և ընդ սուրբ աւետարանին ՚ի մկրտութեն Յիզտբուզիտ անուանեալ, որ թարգմանի՝ Աստուած ապրեցոյց, բազում չարչարանս կրեալ ՚ի մարզպանէ Վշնասն Վահրամայ, ՚ի Դվին քաղաքի պսակի մարտիրոսական պսակաւն ՚ի Քրիստոս. զոր բարձեալ զոսկերս մարմինն սրբոյ մարտիրոսին՝ մեծի հայրապետին Ներսեսի բովանդակ եպիսկոպոսօք և կղերիւք եկեղեցւոյ, եդեն մերձ ՚ի սուրբ եկեղեցին կաթողիկոսարանի՝ յարեւելից կողմանէ, շինեալ ՚ի վերայ վըկայարան սուրբ՝ կափածոյ քարամբք ։ Սորա կալեալ զհայրապետական աթոռն երբեման ինն՝ վախճանի ։ Իսկ զկնի սորա զօծին Յովհաննէս ՚ի Գաբեղենից՝ ՚ի գեղջէ Մնձեղուան, կացուցանեն հայրապետ Հայաստանեայցս, որ կացեալ յաթոռ Հայրապետութեան ամս տասն և եօթն՝ վախճանի ։

Յետ սորա ապա զՄովսէս զայրն Աստուծոյ, որ յԵղիվարդ գեղջէ, որ սնեալ և ուսեալ ՚ի հայրապետանոցին սրբոյ՝ կացուցանեն յաթոռ սրբոյն Գրիգորի ։ Յամս տասներոր-

նէր խոնկացեալ նորայն գաւաճանութիւն։
Իսկ Մովսէս բազում մաքառմամբ ընդդէմ
նորա եղեալ, առատուածաներձ խրատու՝ բա-
նից բարեզգեաց զնա կշտամբելով՝ դառնալ
'ի չարափառ հրէական մոլորութենէ (1) հայ-
հայութեանցն 'ի ճշմարիտ գիտութիւնն ըստ
Հարցն սրբոց դաւանութեան։ Նա՛ նա
ոչ ախորժեալ առնուլ 'ի դեռզաստաւէ խրատու-
նոյ, իսկոյն այլա հասանէ կատարումն կե-
նաց մեծի հայրապետին Մովսէսի, հանգեալ
յաթոռ Հայրապետութեան ամս երկոտասան։
Նորայ միջնորդեա կենդանւոյն էր սուրբ Հայրա-
պետն Մովսէս, խորագէտ արդի կաւառացն առ-
քայի Պարսից յետ բազում մարտից ատու-
թեանց և քննութեանց և տիրէլոց դողչելոց
բազմաց, բառ ծառայման նշուլից պատուա-
ծայրին լուսոյն 'ի սիրտ նորա՝ 'ի ժամ վախ-
ճանի իւրոյ հաստատեցեալ զԱստուած ճըշ-
մարիտ, և զՈրդի նորա միածին և զՀո-
գին սուրբ Աստուծոյ, և անարգեալ 'ի բաց
ընկէց զկրաամոլ անհաւատութիւնն, խոստո-
վան եղեւ՝ թէ ոչ գոյ այլ Աստուած բաց 'ի
միայն միայն զոր քրիստոնեայքն պաշտեն։
Նա տայր աւազանին սրբոյ մկրտութեան՝ ծնըն-
դեան լուսաւորութեամբ հաղորդել 'ի կեն-

(1) Մի օրի. հրէական մոլորութենէ։

՚ի Դվնին քաղաքէ, և յերկուցն եւս գաւառաց՝ որ է Մասեաց ոտն և կողմն Արագածոյ։ Զայսոսիկ ՚ի բաց զատուցեալ, զայլսն ամենայն Թողու Խոսրով ՚ի Մօրիկ, ՚ի լեռնէն որ կոչի Ծնծաքիսար մինչեւ ցՄեռեալն աւան, և ցՀայիւն (1)։

Այս կայսերն Մօրկայ ձեռներիցութեք իմն փոփոխումն արարեալ անուանց աշխարհացն այնոցիկ, որ ՚ի մերոյն Արամայ կարգաւ եդեալ էր։ Եւ նախ զԱրմենին զայն որ առաջին Հայքն անուանիւր, երկրորդ Հայք զնա Մօրիկ կոչեաց, յորում մայրաքաղաք է Սեւաստիա։ Իսկ զԿապադովկիա՝ յորում մայրաքաղաք Կեսարիա և երկրորդ Հայք նախ անուանիւր. կոչէ զնա երրորդ Հայք, եւ առնէ զնա Եպարքի։ Իսկ զՄելիտինէ՝ որ ունի զՀամամնուն իւր գաւառս, է և երրորդ Հայք. կոչէ զնա առաջին Հայք։ Իսկ ըզՊոնտոս՝ յորում մայրաքաղաք է Տրապիզոն. կոչէ զնա մասն մեծ Հայոց։ Եւ զչորրորդն կոչեցեալ Հայք՝ յորում մայրաքաղաք Մարտիրոսաց պօլիս՝ այսինքն Նփրկերտ, Յուստինիանունիստ զնա դրէ ՚ի դիւան արքունի։ Դարձեալ զաշխարհն Կարնոյ՝ յորում մայրաքաղաք է Թէոդուպօլիս, անուանէ ըզ-

(1) Մի օր. յաւելու՝ և ցՀացիւն գիւղ։

նա մեծ մասն՝ մեծ Հայոց։ Եւ որ 'ի մեծն Հայոց մասն ինչ միացեալ էր 'ի ձեռս Հռոմոց՝ կողմանց անտի Րաւենոյ մինչեւ 'ի սահմանս Ասորեստանի, մեծ Հայք զնա կոչէ։ Իսկ զկողմանս Տայոց սահմանօքն իւրովք հանդերձ՝ խորագոյն Հայք անուանէ. եւ զկողմն Դվնին քաղաքի՝ ներքսագոյն Հայք (1)։ Այսպէս ամենեցունց սոցա փոփոխումն արարեալ Մօրկայ՝ գրէ 'ի դիւանս արքունի։ Արդ՝ այսոքիկ սակս այսորիկ առ յինէն քեզ երկրորդեալ գրեցաւ, զի մի տգիտութիւն ինչ ինձ վարկցես զայն, զոր յառաջագոյն առ յինէն քեզ պատմեալ եղեւ առաջինն և երկրորդն և երրորդն և չորրորդ Հայք։ Զի այն առաջինն 'ի մերոյն յԱրամայ քաջէ անուանեալ եղեւ. իսկ այս երկրորդ՝ 'ի Մօրկայ կայսերէ Հռոմոց։ Եւ արդ՝ այսոքիկ քեզ վասն այսորիկ բաւականացեալ, եւ դարձեալ 'ի կարգ պատմութեանս դարձայց։

(1) Երբեմն զի · յառաջնոյն՝ անուանէ ։



Հայերէն՝ հաստատէին ՚ի հաւատս ։ Եւ ապա զերէց ոմն ՚ի նոցունց խոկ Եբէլ անուն՝ եպիսկոպոս նոցա հրամայէ կացուցանել մեծի հայրապետութեն մերոյ Մովսէսի ։ Եւ այսպէս միշտ մեծի աթոռոյ սրբոյն Գրիգորի ՚ի հեռաւոր երկրի զնոսա կազմէ մինչեւ ցայսօր ժամանակի ․

Նաեւ Սմբատայ մարտիկ քաջութեամբ զամենայն Թշնամիս խաղաղեաց նուաճէր հընազանդել․ յետ բազմաբաղձ բարութեանս նորա պարգեւելոյ խաղաղութե, եւ մեծահարկի ծեծպանս զնելոյ, հրամայէ երթալ առաջի Սմբատայ զերկիր ծննդեան իւրոյ ։ Իսկ նա յերթալն իւրում ըստ հրամանի խաղաղոյ՝ խնդրէ չխնել զեկեղեցին ՚ի Դուին քաղաքի, որ էր խոկ անուանակոչութեամբ սըրբոյն Գրիգորի ։ Իսկ արքայի ուշադրութիւն երեւոյթ զհայցուածս նորա լսեալ, եւ այնպէս հըրամանաւ ՚ի նմանէ ընկալեալ․ չու էր գնայ, եւ եկեալ հասեալ յիւրական յաշխարհն յայս, եւ տեսեալ աւանդս աւերմունս զաշխարհս Հայոց․ վասն զի փախձանեալ էր մեծ հայրապետն Մովսէս, առաւ հարդէ ՚ի վերակացութիւն Հայոց զԱբրահամ Աշտունեաց եպիսկոպոս՝ ՚ի գեղջէ Աղբաթանից․ եւ ինքն արկանէ հիմն եկեղեցւոյն սրբոյ կոփածոյ

քարամբք, գեղեցկադիր շինուածիւ, կրով ձուլեալ 'ի մի. զի յառաջ յաղիւսոյ և 'ի փայտէ կազմեալ էր նա 'ի սրբոյն Վարդանայ: Իսկ պահնակ ամրոցին ամբարտաւան տարըքայ լինի իբր միաբանեալ զնա գող բերդին. և վաղվաղակի հրաման ընդունի եթէ, բերդդ քակեսցի՝ և եկեղեցիդ 'ի դմին տեղ շինեսցի:

Բայց մեծ հայրապետն Աբրահամ քրիստոսաւանդ կարգօք և առաքելահրաւէր երգօք դուն 'ի վերայ գործէր, զի թերեւս հնար լիցի դարձուցանել զխաբեբայն և զհնազանդեալսն նմա 'ի մոլորութեան ձանապարհէն. այլ նոքա ոչ թերեւս զճշմարտութիւնն պատուէին, քան թէ մոլոյն զօշաքաղութեան և զփառաւորն բարուց գործոցս 'ի վեր ընծայեցեալ ամենցուցանէին: Իւ այսպէս տապա զմարգարտաւանն ոստոյն Եւանի փոխանակէին ընդ առաքելական աւանդից երիցս երանեալ սուրբ Լուսաւորչին Գրիգորի, որ եբաց նոցա զդուռն լուսոյ ճշմարիտ աստուածգիտութեան: Իսկ այնուհետեւ բազում եպիսկոպոսաց ժողով արարեալ մեծի հայրապետին Աբրահամու 'ի Դվին քաղաքի՝ հրամանաւ քաջին Սմբատայ և այլոց եւս նախարարացն, առ-

տուածամերձ և ամբիծ այցելութեամբ ուշեղեալ աստուածային գրոց, և ստուգադէտ իմացուածիւ ծանուցեալ զուղիղ դաւանութիւն սուրբ Հարցն, Նզովեցին ըզԿիւրիոն զպառակտիչն եկեղեցւոյ Քրիստոսի, և զամենայն հնապանդեալս և զհամախոհս չար հերեսիութեանն. և անէծս ցաւագինս ուղղափառ դաւանողաց մերոց նահանգիս 'ի վերայ եդին, ոչ բնաւին իսկ ընդնոսա միաբանել՝ որք զկնի Կիւրիոնի չարափառի շեղեցան, և ոչ հաղորդակից նոցա լինել, և ոչ 'ի տուրեւառիկ վաճառս ընդնոսա բերել. և ոչ խնամութեամբք իւիք ազգակցել, զի մի 'ի ձեռն այսպիսեաց մերձաւորութեանց ընդ միմեանս հարեալք, և վասն այդորիկ վրդովեալ շփոթեսցի ամբիծ և ուղիղ հաւատ խոստովանութեանս մերոյ դաւանութեան, և խարամատեսցի ցանկ առաքելական։

Յետ այսորիկ ըստ հրամանի կայսերն Մօրկայ զՅովհան ունէին 'ի գաւառէ Կոդայ 'ի Բագարան գեղջէ. կացուցանեն Կաթողիկոս յունական կողմանն, բնակեցուցանելով զնա 'ի քաղաքագիւղն Աւան. ուր և շինեաց իսկ ինքնին Յովհան զպայծառակերտ քաւարանն սուրբ, և շուրջանակի նո-

Ընդ որս և զՀայրապետն նոցա զԶաքարիաս. և զքրիստոսընկալ զսուրբ Խաչն տէրունեան 'ի գերութիւն վարէին ։

Զայսու ժամանակաւ մեծ Հայրապետն Կոմիտաս զվկայարան սուրբ Հռիփսիմեանցն՝ որ նախ լքմթին և փոքրասենեակ իմն էր շինեալ, եւս հրաշալիս և վայելուչ և նազելի և պայծառ շինուածով յարդարէր. ուր և պատահեալ սուրբ տիկնոջն Հռիփսիմեայ՝ ոչ սակաւ լինէր մխիթարութիւն ընաւ իսկ Հայաստանեայցս ։ Եւ էր նա կնքեալ մատանեաւ սրբոյն Գրիգորի և սրբոյն Սահակայ, ապա և մեծի հայրապետին եւս Կոմիտասայ ոչ համարձակեալ բանալ զնա, եդ և զիւր եւս կնիք 'ի վերայ նորա. իսկ չափ հասակի տիկնոջն՝ ինն թիզ, և ուռ չորս մատունս ։ Նոյա շինեալ զեկեղեցին սուրբ, և անդ ամփոփեալ ժողովէ զնշխարս սուրբ Տիկնոջն 'ի պատրաստեալ իւր կայանսն ։ Յետ որոյ ապա քակեալ սորա զփայտածածուկ գմբէթ սրբոյ կաթուղիկէին՝ որ 'ի Վաղարշապատ քաղաքի, շինէ զնա գեղեցկայարմար և չքնաղատես կոփածոյ քարամբք ։

Բայց Կաւատ որդի առաջնոյ Խոսրովայ սպանեալ զերկրորդն Խոսրով Պարսից արքայ՝ ինքն փոխանակ նորա թագաւորէ ։ Եւ ապա

տուեալ Կիւստոսայ զմարզպանութիւն Հայոց Վարազտիրոցի որդւոյ քաջին Սմբատայ, առաքէ զնա յիւրական աշխարհն։ Իսկ եկեալ նորա եգիտ հրաժարեալ 'ի կենաց աստի մեծ հայրապետն Կոմիտաս, որ եկաց իսկ յաթոռ հայրապետական ամս ութ։ Ապա զՔրիստափոր ոմն յԱբրահամեան տանէ խորհրդակցութեամբ Թէոդորոսի Ռշտունեաց տեառն՝ կացուցանէ յաթոռ Հայրապետութեանն։ Զսմանէ բան ճառի՝ թէ քսութիւն իմն յիւրում լեզուի կրէր, և սակս այնորիկ ասէ՝ ասպետն Վարազտիրոց զչարեալ զտանիւր ընդ եղբարս իւր։ Իսկ 'ի վերայ այսպիսի համբաւոյ ապա և յընտանեաց տանն քինք չարաբանք 'ի վերայ յարուցեալ նորա՝ բամբասանս ապիրատս յօդէին. և ապա այնուհետեւ ոչ ըստ իրաւանց ուղղոց ինչ, այլ կամակար մտօք ըստ կամս անձանց հատանէին վճիռ՝ անկանել նմա 'ի պատուոյն։ Իսկ նորա իւրովի կամաւ խոյս 'ի չարէն տուեալ, երթեալ շինէ միայնարան մեծ մերձ 'ի գիւղն Ուզեաց որ 'ի Մանեաց տուն, և բազում միանձունս առ ինքն գումարեալ առաքինաջան երկօք և բազմաշխատ քրտամբք, փայլէր պահոց պընդակազմութեամբ եւ աղօթից պաշտպա-

ցա՝ նզովել զամենայն հերձուածողս բաց
՚ի ժողովոյն Քաղկեդոնի։ Իսկ Ներսէ և իւ-
րայոցն տգիտաբար իմն իբր անձանօթ գը-
րոց աստուածայնոց, ոչ կարացեալ ՚ի միա-
առնուլ զխորամանկ հնարիմացութիւն հեր-
ձուածոյն՝ որ ընդ կայսերական ձեռագրին
իբրեւ ընդ գրուանաւ էր թագուցեալ, դա-
ւաճանեալ խաբեցան ընդ նորա՝ ըստ օրինի
տօմարին Լեւոնի։ Նուաղա մեծարեալ յար-
քայէն, և ընկալեալ պարգեւս զերիր մասն
գիւղաքաղաքին Կողբայ, և զայս նոցուն
բովանդակաբար, դառնայ մեծաւ շքով ՚ի
տեղի իւր։

Իսկ ՚ի չուել գալ նորա ըստ օրինի ա-
վորական կարգացն, կղերք եկեղեցւոյն իւ-
րոյ փութայեալ ընդէին։ Բայց փիլիսոփայն
Յովհան՝ զոր վերագոյն ասացաք, ոչ եւս
ընդ այլսն երթալով լնուլ զայն հարկին որ
՚ի վերայ կայր։ Նա մտեալ ՚ի տաճարն ՚ի
խնդիր Յովհաննու լինէր ՚ի հայրապետութենէ
Ներսէ։ Նա պատմեցաւ ապա ոմանց Յով-
հաննու՝ հանդերձ մեղադրութեամբ՝, եթէ
ընդէ՞ր ոչ չոգար ընդ առաջ նորա յերկրպա-
գութիւն։ Նա որս և պատասխանի տուեալ
ասէ. Զի՞արդ պարտ վարկանիմ յողջոյն կամ
յերկրպագութիւն նմա երթալ, որ քակեաց

ցին խսկ զսահման կանոնի հարցն մերոց ուղղափառաց. և համագունակից զմեզ խորհեցաւ առնել Քաղկեդոնեան չար հերձուածոյն։ Այս հրամանն Եզրի սատականայր ՚ի վերայ, և այս ակամայ կամօք մուծանէին զՅովհան ՚ի սենեակն։ Իբրև յանդիման եղեւ, ասէ Կաթուղիկոսն. Խորոտաբար խմն ամբարհաւաճութեամբ ընդվզեալ թըւիս. վասն այնորիկ ախտակրեալ սրտիւ ոչ առեալ զմեզ։ Եւ նա ասէ. Խորխոսումն և ամբարհաւաճութիւն յիս ոչ գտանի, այլ ջատագով ճշմարտութեանն լինել հաւանիմ։ Բայց քո յիրաւի կոչեցաւ անուն Եզր. վասըն զի յեզր տարեալ հաներ ուրահեցեր ըզՀայաստանեայս, քակեալ զսահման հաւատոյ հարցն մերոց ուղղափառաց, և խոտանեալ զցանկն առաքելական. և ՚ի մարդադաւանս տոմարն Լեւոնի կործանեցաւ։ Այս հրամայէ Եզր մուրցացի տանջել զպարանոց նորա և զկզակս։ Իսկ Յովհան ձեռս ՚ի վեր ամբարձեալ ասէ, թէ Ահաւասիկ գնացի խնդալով յերեսաց ատենին, զի վասն անուանն Տեառն արժանի եղէ անարգելոյ։ Եւ զայս խօսեցեալ ելեալ գնաց։ Եւ երթեալ առկայանայր ՚ի Մայրոց վանս՝ որ ՚ի ծործորս լերինն ամրոցին Սեւոյ, և սակս ՚ի նմա-

յարթէին և մեծին էր զնա շինեալ, քակեալ (1) զայն՝ ևս ընդարձակագոյն և պայծառագոյն քան շինեաց, կոփածոյ քարամբք և կրոյ ձուլելով, և պատուաքուստ յարդարեալ կազմեաց բնակութեան քահանայականին դասուց. ՚ի պաշտօն աստուածային խորանին։ Այս եղեւ սկիզբն ժամատան շինելոյ. մինչեւ ցայս վայր ոչ երեւէր ՚ի Հայս։

## ԳԼՈՒԽ ԺԹ.

Յաղագս պատահմանց աշխարհիս Հայոց յերեսաց Հագարացւոց, և գործոց Ներսեհի Կամսարականի։

Ի ժամանակի սորա յամին Վարազտիրոց որդի քաջին Սմբատայ՝ փախստեալ յՌոստոմայ իշխանէ Ատրպատականի, չուէ գնայ ընտանեօք և ազգիւ առ կայսրն Հերակլ. փոխան զի նենգ թաքուցեալ յինքեան Ռոստոմայ սպանանել զՎարազտիրոց, սակս այնորիկ գնացեալ ապաստանէր ՚ի Յոյնս։ Ի սմին յամին առաքէ կայսրն Հերակլ զԴաւիթ Սահառունի կուրապաղատ պատուեալ՝ իշխան Հայոց կացուցանէր, որ

(1) Որպէս յաւելումն՝ բանդի քակեալ։

մեծաւ ճոխութեամբ և յաղթութեամբ բազմաւ քաղաքավարէր զիշխանութիւնն ամիս երիս. և 'ի հրամանէ նորա՛ս չինէր խաղ եկեղեցին գեղեցկայարմար՝ որ 'ի քաղաքագեղն Ա'րեն։ Իսկ յետ երեամ մի ամսոց գեաղ զնա նախարարացն և զօրաց իւրոց. հաւանեցաւ։ Նա յայնմ հետէ ապա 'ի չար հակառակութենէ նախարարացն և 'ի նմանէ նախանձու է դղրդեալ կործանեցին սպասորս զՀայաստանեայս. բայց միայն բարեպաշտ իշխանն Թէոդորոս ըստ ամկաւաձեռն կարի՝ դիմակալ հինից թշնամեաց գտանիւր։ Զայսու ժամանակաւ ապա երեւեալ ժառանգն Հագարայ աղախնոյն։ . . . որ ըստ Պօղոսի 'ի լեռնէն Սինայ կամ յանապատէ 'ի ծառայութիւն ծնեալ է։ . . .

. . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

Քանզի և ոչ խաղ թերեւս 'ի Տեառնէ նուաւ աղախնորդւոյ՝ ընդ որդւոյ ազատին լինել ժառանգորդ, որպէս և ոչ խաղ բամբին հաւատացելոցն ընդ անհաւատին. Նոքա՝ երբեւ զուարճացեալ մեծ լինէր Հագարացին, և յաղթեալ կատարէին առ հասարակ զզօրս կայսերն Հերակլի որ Ա'րաբիա. այնուհետեւ ապա և ազինք պակուցեալք 'ի

բարեպաշտութեամբ անցանէր ընդ ծով 'ի Հարա-ւակողմ և յարեւելս, 'ի Պարս և 'ի Սկադա-ստան, 'ի Սինդ և 'ի Սերան, 'ի Ճարան և 'ի Սանկուրան, և յաշխարհն Հնդկաց. ա-ւետեալ և աւերեալ [illegible], բառնայ զա-մենայն թագաւորութիւնս ազգաց, բայց 'ի յԵ[illegible]ացւոց՝ որք են Հռոմայեցիք։

Իսկ կայսրն Կոստանդին 'ի Սարտինեայ մեռաւ է իւրմէ դաւեալ սպանանի, կացու-ցեալ փոխանակ նորա զորդի իւր զԿոստանդ-լան։ Իսկ Կ[illegible] պօղաւար Հռովմ 'ի վե-րայ հասեալ, և սպանեալ զՍարտինէ և զԿոս-տանդեան զորդի նորա, կացուցանէ թագաւոր զԿոստանդ որդի Կոստանդնի։ Իսկ այսպ փա-ռօք զի հասուցած եղեալ՝ և եկեալ էր 'ի Յունաց աշխարհն Կարապետիոց, այսպ մեծ հայրապետն Ներսէս խնդրէ հաշտութիւն նմա 'ի կայսերէ, և տայ առնել զնա կուրա-պաղատ և հրամանատար Հայաստանեայց։ Իսկ նա յառնուլ զիշխանութեան պատիւն՝ փոխարկեալ փոխանակ. զոր և առարեալ ե-դին (1) առ Հօր իւրում քաղքին Սմբատայ։ Նա-պա Ներսէս զորդի նորա զՍմբատ 'ի պա-տիւ Հօրն խնդրէ կացուցանել, և Հայքս և ս-ղթէոդորոս Ռշտունեաց տէր, 'ի զօրավար-

(1) Եղիշա որ. եդին 'ի Տարօնն առ Հօր։

րութիւն (1) հաստատել. և այսպէս պայազատեալ յապահովանայր առ ժամանակ մի ՚ի չար հինից Հագարու աշխարհս մեր։

Իսկ իբրև բառնայր առ հասարակ տէրութիւն ազգաց և ազանց, այնուհետև պատառեալ առագաստն հին հարաւոյ՝ շնչեաց ՚ի մեզ նոր հարաւահողմ՝ մահաբեր խորշակ, և տապախառն արարեալ զմատաղատունկս իմանալի բուրաստանաց մերոց՝ խայթոցօքն խոցոտեաց. և այսպէս ապա յամս սակաւս արագընթաց ազգք հարաւոյ փոթորկեալ պտուտեալ տիրեցին ամենայն երկրի, զոր տեսեալ Թէոդորոսի և այլոց ևս նախարարացն, և պակուցեալք յահէ հինիցն եկելոց՝ հնազանդեցան ՚ի ծառայութիւն Հագարացւոյն, դնելով ուխտ ընդ մահու, և կռելով դաշինս ընդ դժոխոց։ Եւ այսպէս ՚ի բաց կացին ՚ի կայսերէ։

Իսկ կայսեր զօրս բազումս գումարտակ արարեալ, չուէ գնայ ՚ի Հայս՝ ընդ իւրև նուաճել (2), որում ոչ ոք թերևս գտաւ հնազանդեալ. բայց միայն ՚ի Վրաց աշխարհէն։ Նոյն կայսրն Կոստանդին յաւէտ իմն բարկացեալ՝ խորհէր կործանմամբ սատակի-

(1) Մի օր. Ի զօրավարութեան։

(2) Երկու օր. Նուաճեալ։

այլոց եւս տերանց աշխարհի նոցա, զի ըստ բռնեալ փողփողուկի առ ինքն հաստատուցեալ զնոսա: Այլ յորովք 'ի տերանցն կուսակալ-լաց յանհատ ինչ անձինցն Բաղաց դիմեալ Գա-ւառեալ՝ փրծանեալքն 'ի ձեռաց նեղչացն:

Իսկ իշխանն Վասակ հայրն 'ի Նախիջեւանէ ճողոպրեալ փախստեայ գնայր շուէր ընդ կողմանս Կոստայ գաւառին: Զայն զգացեալ վարդավառակի Բուղայն, զոր դնէին ա-ռաքէ ըմբռնել զնա: Իսկ իբրեւ զնէր կրկ-թեալ հասին հուպ յիշխանն հենէք հրոսակքն, այլա ընդ կրունկն դարձեալ նորա՝ առ 'ի գործ զկռապաշտութիւն առեալ, առ հասարակ զնոսա թաւալգլոր[1] խաղացուցանէր. և ինքն անցեալ գնայր յարեւելս յաշխարհն Գարդ-մանաց, առ իշխան աշխարհին որ Կորիւն ա-նուանէր: Այլ և յայնմ եւս՝ ոչ եւս ե-ղեւ տեղի գտեալ փրկութեան իշխանին Վասակայ 'ի թշնամեացն, վասն զի իշխանն Գարդմանաց դաւաճանեալ 'ի դիւէն, կա-լեալ կապէ զնա, և առաքէ տայ 'ի ձեռս Բուղայի, 'ի մնալ եղեալ՝ թէ գուցէ[2] փոշեշէն ինչ բարւոյ 'ի Բուղայէ սակս այնորիկ նմա գոյն: Իսկ բռնաւորն առեալ ընկալեալ զնա,

(1) Մի օր. դիմաթաւալ կայացուցանէր.

(2) Ի բազումս չէ՛ գուցէ.

ապա և զեղբայր նորա զՄուշեղ, և զմեծ տի-
կինն զմայր նոցունց ըմբռնեալ ղօղայն առ-
պատանեկեղոց՝ առ նա վաղվաղակի հասուցա-
նէին ՚ի Դվին քաղաք։

Նասամնօր ապա մեծ հայրապետն Յով-
հաննէս, փասն զի չլինէր ընդ միաձակեալ
կողմանս գաւառին Պետրբունւոյ, լցեալ
զկէտ կենաց իւրոց՝ վախճանի, ՚ի մեծ ՚ուխ-
տի կրօնաւորական կայանին Մսքենոցաց,
և ՚ի նմին ուխտի սրբոյ ՚ի հանգիստ դնա
փոխէին, որ կալաւ զառաջնորդութիւն ամս
քսան և երկու։

Բայց բռնաւորն Յուսուֆ ըմբռնեալ-
ոցն առ ինքն՝ և զ՚ի դիպահոյչ (1) կացու-
ցեալս առեալ (2), չուէ գնայ զկողմամբք ա-
րեւելից, պայման պատգամաց առ սպա-
րապետն Աշոտ յղեալ՝ վաղվաղակի զհետ
նորա չուել երթալ հասանել ժամանել յան-
բաւ գործոյն։ Այլ նա նախ հրամայեալ
ժողով եպիսկոպոսաց լինել ՚ի քաղաքագիւղն
Երազգաւորս, ձեռնադրեն ՚ի հայրապետու-
թիւն զԶաքարիա՝ ՚ի Կոտայս գաւառէ, ՚ի
գեղջէ Ձագայ, և աղօթից նորա զանձն իւր
յանձն արարեալ՝ ինքն չուէ գնայ առ բռ-

(1) Ամենայն օր. ունէին՝ զդիպահոջն։
(2) Զօրս օր. առ ապրեալ։

նաւորն Ռուզաս։ Իսկ Ռուզայի եղծեալ ընթացնել զմեծ իշխանն Հորմեզդեան որ քան կեալ էր յամրոցին Խաչենւոյ․ և զայլ ես պհամապարհս նորա։ Եւ անտի շուեալ գնայ 'ի գաւառն Դուրդմանայ, և պատուել և այս շարժումն շուրջ զԴուրդմանն բերդին եղեալ։ ընթացնել անտի և զիշխանն Դուրդմանայ ըն կերքին 'ի կայանս կայանաց արկեալ։ Եւ անտի ես շուեալ Մեծօփ գաւառ․ ձեռ բակալ 'ի Տուս գեղ առնել զՄովսեփանեան, որում և Կոն անուանեսին զնա, որ 'ի նախ նայ իւրմէ Մեծկայ՝ Մեծորդիք ազգն անուանեցին։ Եւ այս ես իշխանն Հաբանից Լուսայի Նենգապատիր լեալ առ 'ի նըմանել, ընթացնի 'ի ձեռս նորա համեղերձ համազգօք իւրովք․ ընդ նմին ես և այլ տեարք և իշխանք աշխարհին Հաբանից կալեալ կապեցան ընդ ձեռամբ նորա, ոչ պակաւ ինչ արեան ձապաղիս հեղեալ ես յայնմ աշխարհին։ Եւ այնուհետեւ զամենեսեան զնոսա որք 'ի կալանաւոր կապանաց և 'ի դիպահոյն առ նմա բերէին, և առեալ ընդ իւր խաղացուցեալ շուէ գնայ՝ տանելով զնոսա առ ամիրապետն։ Այս և զայս բարեւոն Ամեաստ առեալ ընդ իւր տանի (1)

(1) Այնպէս օրէ․ ունէին՝ տանելով։

յաղթօղնական դուռն, կարծիս իմն նմա տալով, թէ միամտութեան նորա առ 'ի նա փոխարէն բարեաց՝ յամիրապետէն շնորհեսցի տիրել տիրաբար բոլոր Հայաստանեայցս, և առնուլ պարգեւս և պատիւս յարքունուստ, և այնպէս դարձեալ դառնալ յիւրական աշխարհս։

Այլ իբրեւ չոգան հասին 'ի դուռն արքունի. և յանդիման ամիրապետին եղեն, տայս և զնա եւս ընդ այլոց կալեալոցն հաւատարեալ եղին 'ի բանտի, և ոչ յիշեցան առաջի նոցա երախտիք միամտութեան նորա առ նոսա։ Իսկ տայս յետ ոչ բազում ինչ աւուրց հարցափորձ 'ի վերայ հասարակաց կալեալոցն տերանց և իշխանացն Հայոց և Աղուանից ածէին, զի կամս դարձցին յանօրէն օրէնս նոցա, ուրացեալք ըզՔրիստոսի աստուածպաշտութիւնն, և այնպէս բազում պարգեւս և պատիւս 'ի նոցանէ առնուցուն. և յաղարկեսցին 'ի հայրենի աշխարհն և 'ի տունս իւրեանց. և կամ սաստիկ խոշտանգանօք և չարչարանօք և անհնարին մահու հասանիցեն զայս կենաց նոցա։ Իսկ վասն զի այսպէս զբոհմունս հասանէաց 'ի վերայ նոցա սաստիկ զարհուրմանք օր ըստ օրէ զարթուցանէին, ժամա

նակ ինչ յերկարեալ զնեղութիւն անձկութեանն, ոմանք 'ի նոցանէ հաւանեալք բանիցն արքունի, դարձան . . . յառաջուածածանօթութիւն նոցա . և ոմանք՝ թէպէտ և ոչ առժամայն կրեցին թլփատութիւն, սակայն յանձին կալեալք՝ զի և նոքա եւս 'ի ժամ դիպող կատարեալ ճնուցուն զկամս ամիրապետին :

Բայց մեծ սպարապետն Սմբատ քաջապէս ընդդէմ ստութեանն՝ ստուգութեամբ վառեալ ըստ զուարթածաղիկ ալեացն, և կատարելագոյն հաւատոցն՝ որ 'ի Քրիստոս, և ըստ յուսոյ կենացն յաւիտենականաց՝ որ միշտ յինքեան շտեմարանէր, բնաւ ոչ ինչ շեղեցաւ 'ի բանս հրամանաց նոցա, լաւ համարեալ մեռանել ընդ Քրիստոսի, քան առ ժամանակ մի վայելել 'ի մեղս : Իսկ այնպէս ընդդէմ հարցողացն նա առնէր պատասխանի՝ անհնարին գոլ թողուլ նմա զըրէնս քրիստոնէական հաւատոց, զոր աւազանին շնորհօքն ընկալաւ պարգեւս բարեաց, քան պաշտել զօտարոտի օրէնս անօրէնս . և այսպէս ոչ միանգամ կամ երկիցս, այլ բազում անգամ աներկիւղաբար առնէր ընդդիմութիւն նոցա : Իսկ իբրև զփորձ նորոյ կամաց առին, և ծանեան զմիտս նորա անհը-

րապայրս, խորհեցան դառնաշխատ տանջանօք զնա կորուսանել։ Իսկ երկնաւոր այցելութիւն պատրաստական մարմնոյ մահուամբ՝ հաճեցաւ ազատել զնա 'ի յաւիտենական մահուանէ հոգւոյն, և իւրով մահու վախճանեալ՝ ոչ անկաւ զնովաւ ուրացութիւն սուրբ օրի-նացն Քրիստոսի, այլ ընդ 'ի մարմնի իւ-րում զհանդէս մարտիրոսական պատասխա-նատրութեանն։ Զոր և բարձեալ իսկ ըզ-մարմին նորա քրիստոնէական դասուց, սաղ-մոսիւք և օրհնութեամբ և երգօք հոգեւո-րօք տարեալ եդին 'ի վկայարանի սրբոյն Դա-նիէլի մարգարէին, որ և ընկեցեալ իսկ լի-նէր նա 'ի գուբն առիւծուց։ Իսկ զկնի նո-րա սպայազատէ զմեծ տէրութիւնն զայն Աշոտ որդի նորա։

Բայց այլոց իշխանացն Թուի ինձ և ոչ մի-ինչ մնացեալ՝ որք ոչ եղեն հետեւեալք յաս-տուածակողմանն, կամ ոչ շեղեալք յանօրէն օրէնսն . . . ։ Վասն զի պակուցեալք եւ զարհուրեալք յառժամանակեայ մահուն երկիւղէ, ոչ առին 'ի միտ զանմահ մահուն դառնութիւնն, և ոչ ինչ փոյթ արարեալ զապաւինելի աւետարանութիւնն Փրկչին Քրիստոսի՝ որ լսելի լինելոց է յահագին ա-տենին, թէ Ո՛ ուրացցի զիս առաջի մարդ-

կան, ուրացայց և ես զնա առաջի Հօր ի-մոյ որ յերկինս է։ Բայց միայն Ստեփան-նոս՝ որ Կոնն 'ի ռամկաց սովորական խառնից անուանէր, և զկնի նախարարացն Հայոց կապանօք տարեալ եղեւ 'ի Բուղայէ 'ի դուռն արքունի, ուր և վկայեացն իսկ. բա-զում հարուածօք տանջեալ վասն խոստովա-նութեան անուանն Քրիստոսի. որ պսա-կեալ 'ի Հօրէն լուսոյ, գրեալ զանուն իւր 'ի դպրութիւն կենացն, որ կատարեցաւ 'ի ո̄ը̄ (608) թուականին Հռոմոց։



## ԳԼՈՒԽ ԻԵ.

Յաղագս պայազատութեան Աշոտոյ որդւոյ Սմբա-տայ, և դարձի նախարարացն Հայոց 'ի գերութենէ։

Յայսմհետէ ապա եթէ թեթեւ թը-ւեսցի քեզ, զառ 'ի ծերունեացն անցեալ բան՝ 'ի պարզագունիցն շարադրեալս համա-դիպեցայց։ Վասն զի հաճեցաւ բանս ոչ երկ-բորդել միւսանգամ զհետեւանս զրուցացն Շապհոյ Բագրատունւոյ, և մերումս ժա-մանակի պատմագրի, որ յայտապատում իսկ արարեալ է զորոյս պայազատութեան որ-

որդւոյ Աշոտոյ սպարապետին Սմբատայ զիշ-
խանական պատուութիւնն, և զԹագաւո-
րացն հանդերձանաց զկարգս. և կամ ըն-
դարձ զերերոյն 'ի Բուղայէ՝ զՀայաստա-
նեայցս իշխանաց և նախարարաց, յիւրաքան-
չիւրն սեփական իշխանութիւնս ածեալ կա-
ցեալ հաստատեաց։ Այլ թէ ո՞րք 'ի նոցանէ
հոյակապք են հարուստք և ուժեղագոյնք ըն-
դէմ հակառակորդաց հինից զօրան. և կամ
ո՞յք յումմէքէ եղեն հարստահարեալք, և
կամ զվախճան նոցա յիւրաքանչիւրումն տեղ։
Ոչ ի թէպէտ ստուգութիւն սահմանական
բանի բացատրութեան, և զբոլորովին բա-
ժանումն պատմագրացն ոչ կարացեալ ըստ
քերթողական հրահանգացն համառօտա-
բար ընծեռել, այլայն ըստ իւրումն ժամա-
նակի ընտանի գոլով՝ նոցա զրուցացն աւե-
տայնի՝ գեղջուկ բանիւ բաւական քեզ տայ
պատճառս տեղեկութեան։

Արդ՝ այսպէս են ատանօր զոսլխնդակն
ջինս թողացուցեալ, և որ ինչ հարկաւո-
րագոյն այժմ ինչ պիտոյ է ծառոյս պատմու-
թիւն, զայն և եթ համառօտ քեզ ընծե-
ռութիւն առնելով՝ փորձեցայց սակաւուք
միրբեւ նորանշութեան եղանակաւ։ Այսպէս
մերազգոյն ասացաւ՝ 'ի մանկութենէ մինչև

յերեւոյթս երիտասարդութեանն զՆ․ չա- փոյ որդւոյ Սմբատայ սպարապետի զզօրութիւնս և զքաջութիւնս և զպատերազմունս և զհրամանս յայլս, և զայլոց եւս ՚ի նա բաւական բերցի քեզ առ ՚ի Հայոց պատմեալքն։ Իսկ յորժամ փոխանակ Սմբատայ հօր իւրոյ պայազատէ զսպարապետութիւնն Հայոց, գրեթէ ամենեցուն քան զնա նախագունիցն վեհագոյն ճանաչէր. վասն զի ընկալեալ զմեծագահն՝ ՚ի բաց արհամարհէր զանարգանս. և միշտ ՚ի հրահանգս բարւոյ կրթութեան զինքն վարժէր, և բարի ապրուստ իւրոյ հոգւոյն տայր ընդ ամենեսեան սէր սերտ(1), և ոչ ՚ի հակառակութիւնս ինչ կամ ՚ի կռիւս ընդ թշնամիսն մարտեալ, քան թէ բարեզգեաց բանիւք և բարի օճանաւ(2) ածեալ զնոսա յաղթութիւն և ՚ի կամս իւր։ Իսկ զպաճարանս մնաւի՝ չահուց մնաս իւր վարկեալ, և առատաձեռն առ ամենեսեան գտեալ, յինքն զբազմաց միտս յանգուցանէր սիրալիր սրտիւ. որպէս զի յայսմ սակի ամենեքեան իսկ նմա հաճեալ հաւանեալ էին։ Նա այսպէս առաջնորդս սպարապետութեան քաղաքական-

(1) Մի օրի. կապեալ սէր սերտ։

(2) Մի օրի. բարի օրինակաւ։

ընտալ, մինչեւ համբաւ բարւոյն 'ի դուռն արքունի հասանէր :

Այս ստոփկան ունի 'ի Հայս առաքեալ՝ որ Աշխ Արմանի անուանէր, բայց հրամանի ամիրապետին իշխան իշխանաց Հայոց զնա կացուցանէր՝ բազում զգեստուք եւ արքունական պատուով ճոխացուցեալ, 'ի նա հաւատարմով զանկս Հայոց, եւ զամենայն բեկար արքունի : Եւ այսպէս պատուականնադրոյն եւ առաջին նա գտեալ եղեւ քան զամենայն նախարարութիւնս Հայոց, եւ ամենեքեան դաշինս ընդ նմա դնէին՝ որպէս արդարեւ ընդ Թագաւորական զարմի : Այլ եւ 'ի մօտ ամենեցուն եղեալ, զի Թէ դէպ ինչ պիտոյից գացի, նաեւ 'ի տոհմ իւր արժանի լինի նմա տուչեալ 'ի Թագաւորութեան ցեղս, զոսա որոշել յայլոց նախարարութեանն ցեղից :

Բայց զայսու ժամանակաւ յաջողին իմն չարաժամանց եղելոց 'ի Դւինն քաղաքի՝ բազում տառապանութիւնս եւ փլուզմունս տանց եւ պարսպաց եւ արտաքանոց լինէր, եւ առ հասարակ քանդումն եւ դղրդումն առնոյր քաղաքն : Այլեւ ժամ յոլովից մարդկան 'ի վերայ հասանէր, եւ այսպէս անհարին իմն լինէր վտանգ տագնապին, մինչեւ ոչ որք

մնալ ընդ յարկաւ, այլ ՚ի հրապարակս և ՚ի փողոցս ելեալ հաշեալ հառաչէին: Իսկ ցրտաշունչ տառապանօքն ձմերայնոյն առաւել բերէր զկսկծացումն հեծութեանն, զի յորովք մնեալք և ծայրատեալք քնքէին: Իսկ սուրբ Հայրապետն Զաքարիաս ուժգին աղօթիւք և պաղատանօք մշտնջենաժուունչ և աղերսալի աղօթս առ բարերարութիւն Աստուած մատուցանէր, և երկնային աղդեցութեամբ ՚ի բաց բառնայր զաստուածատուր բարկութիւնն. մինչեւ զեկեղեցին Քրիստոսի պահեալ ՚ի քաղցմանէր ցաւմանէ վտանգին:

Բայց իշխանք և նախարարք Հայոց, որք ընդռնեալք գերեցան ՚ի Բուլղարս, զաստժամանակս մի քան միայն ՚ի կայից անկեալ չուէին յաշխարհն տէրութեան խաբեանց, և ՚ի սեպհականութիւնս և ՚ի տունս: Իսկ ապա մերկացեալ յանձանց խաբեանց զակնկալութիւնս . . . օրինացն Մահմետի, զերիս տասնամեայ օրէնս հայրենիս առ հասարակ բարձրացուցեալ ընդէմ յանձինս խաբեանց ոչ ՚ի ծածուկ երկիւղիւ ինչ. այլ երեւ ՚ի վերայ բարձր տանեաց քարոզէին զՔրիստոսի աստուածպաշտութիւնն: Ընդ որս հաճեալ Տէրն, ընակեցոյց յուսով զնոսա.

յորմէ և օրհնութեամբ Տեառն օրհնեցան, և նովիմբ գովեցան. հերկեցին հերկս՝ և ոչ 'ի վերայ փշոց. և ապա ձայն խրախճանաց ընծայեցելոց 'ի յարկս նոցա լինէր, և ձայն հարսին և փեսայի: Ծնան որդիս՝ և արարին պտուղ, և բնակեցան իւրաքանչիւր ոք 'ի ժառանգութեան իւրում. և այց արար Տէր նոցա, և յաջողեաց 'ի բարութիւնս:



## ԳԼՈՒԽ ԻԸ.

Յաղագս խաղաղութեան երկրին Հայոց, և միաբանութեան նախարարացն:

Յայսմ ժամանակի Վասակ Հայկազուն, որ Գաբուռն յորջորջիւր, վասն զի փեսայացեալ էր Աշոտոյ իշխանաց իշխանին, իշխան ապա Սիւնեաց զնա կացուցանէր՝ յարքունուստ նմա առնելով պատիւ. որ բազում ճոխութեամբ վարեալ զիշխանական պետութիւնն իւր, տիրելով միանգամայն Սիսականն ազգին: Բայց զմեծ սպարապետութիւնն Հայոց տայ Աշոտ եղբօր իւրում Աբասայ, որ էր այր քաջանձնեայ և Թիկնաւէտ, առոգանձն և գեղեցիկ հասա-

կաւ, կարօղն և աջողակ 'ի պատերազմունս. որ և աջակցեալ խոկ եղբօր իւրում Աշոտոյ, զամենեսեան հնազանդէր ընդ լծով ծառայութեան, 'ի բազում կողմանս բազում անգամ արութիւն ցուցեալ, և հռչակաւոր և հոյակապ 'ի մէջ բազմաց երեւեալ։

Բայց եղեւ յետ վախճանելոյ Աշոտոյ մեծի և հռչակաւորի իշխանի տանն Արծրունեաց, և դնելոյ զնա 'ի շիրիմս հարց իւրոց, պայազատէր զիշխանական պետութիւնն զայն Գրիգոր որդի նորա ընդ նորա; որ Դերենիկ անուանիւր։ Եւ էր նա այր սեգ և զգաստ և սօս (1) 'ի գնացս ոտից, և զօրաւոր արդեամբք և բանիւ, և անօրինէր միշտ յամենայնի բարեձեւութիւնս բերիլ։ Եւ վասն զի փեսայացեալ էր Աշոտոյ իշխանաց իշխանի, սակս այնորիկ հայրախնամ կամօք և խոհական սիրելութեամբ միշտ խրատ բարեաց նմա մատուցանէր. որ և 'ի սկզբան անդ ընկալեալ՝ հլու և գգօն մտօք հաւանէր ընդունել, և յոտին զբոլոր թշնամիս 'ի սադրելոյ նորա կացուցանէր։ Եւ շէնութեան և խաղաղութեն Վասպուրականի, յապահովս 'ի բնակութեան իւրեանց պա

(1) Եր՛ ձեռ. սօս ։ Մի ձեռ. զօր ։

բաժանէր զհայրենի տէրութիւնն իւր 'ի բոլոր հինից ։ Բայց յետոյ 'ի կամս անձին զինչպիտութեան բերեալ, ոչ անսայր բանի խրատու աներոյ իւրոյ որպէս յերէկն և յեռանդն, և չլինէր նմա այն յաջողումն ինչ 'ի բարութիւնս ։

Բայց մեծ իշխանն Սիւնեաց Վասակ, որ ըստ փաղաքշականին Իշխանիկ անուանէր, յաւէտ իմաստութեամբ և հեզահամբոյր հանդարտութեամբ և հաւանութբ մեծաւ հնազանդէր Աշոտոյ իշխանին իշխանաց, և խրատու նորա զունկն մատուցանէր խնամով, իբրեւ զօրէնս միշտ 'ի սրտի իւրում պահելով. և 'ի ձեռն այնորիկ յաւէտ իմն ընդարձակագոյն զտուն տէրութեան իւրոյ յարդարէր (1) 'ի բոլոր բարեմասնութիւնս, և կայր բազում խաղաղութբ ըստ ամենայն հանդիսի բարեպաշտութեան ։

Բայց միւս եւս Սիսական իշխանն Վասակ, որ Գաբուռն փաղաքշաբար անուանէր, յայսմ ժամանակի վախճանեալ և եդեալ 'ի շիրիմս հարց իւրոց, պայազատէ զհայրենի տէրութիւնն Գրիգոր որդի նորա ընդ նորա՝ որ Սուփանն յորջորջէր ։ Սա իմաստութեամբ և աջողաձեռնութեամբ և շի

(1) Մէ օրէ. հաստատէր ։

նութեամբ բազմաւ անդր եւս քան զպաշտ-մանն ընդր զչափ հարց իւրոց ։ Բայց առաւ-ել յեկեղեցեաց Քրիստոսի ՚ի շինութիւն և ՚ի նորոգութիւն զինքն վերաբերէր ։ Իսկ մեծ և սուրբ Հայրապետն Զաքարիա իբրեւ եկաց յառաջնորդութեան անդ իբրեւ ամս քսան և երկու, վախճանեցաւ դնի ՚ի քնա-րանի հարցն սրբոց ։ Այս իշխանաց իշխանն Աշոտ ընտրեալ զայր մի պատուական յըն-տանեաց տանն կաթողիկոսարանին՝ Գէորգ անուն, որ էր ՚ի գեղաքաղաքէն Գառնւոյ, հրամայէ ձեռնադրել զնա յառաջնորդու-թիւն տանս Թորգոմայ ։

## ԳԼՈՒԽ ԻԹ.

Յաղագս Թագաւորելոյ Աշոտոյ իշխանաց իշխանին, և սպանման Գրիգորի Արծրունւոյ ։

Այլ ինձ աստանօր ոչ արդեօք այլ-ինչ է բանս սիրելի, քան թէ դեգերել ՚ի բանս գովեստից՝ որ վասն Աշոտոյ իշխանաց իշխանին են հետեւմունք ։ Վասն զի ՚ի տիս հասեալ միջակութեան՝ քաջահասակ էր, նաեւ անձնեայ և թիկնաւէտ և զուարթ-

արգիլեալ 'ի ծործորս մեծի լերինն Կովկասու, որ 'ի հովիտս և 'ի ձորս երկայնագոյն բնակեալք էին ազգք՝ ընդ իւրեաւ հնազանդեցուցանէր ։ Այլ և զգլխաւորաց բնակիչսն Բուլղարաց, և զէլու զաւրուտ մարդկին Աւանի զաւառին անհատարակ ընդ ձեռամբ նուաճէր, 'ի բաց 'ի նոցանէ հերքելով պաւագակութիւնն մարդադաւութեան ․ և իբրև օրինաւորս և հլու զամենեսեան կարգէր, և առաջնորդս և իշխանս նոցա կացուցանէր ։ Այլ և զԹագաւորն Եւս Իսպերացւոց 'ի մէջ միաբանութեան ընդ իւր կապակցեալ այնպէս նմա այցելէր, մինչ զի անընդհատ յորդիութեան սակս գորով՝ մեծարանօք պարտաւորէր միշտ նմա 'ի ծառայութիւն բերէր ։ Այլեւ մեծ կայսրն Յունաց Մարտեղ ոչ փոքր ինչ պայման խաղաղութեան և հաշտութեան և սիրոյ հաստատէր ընդ արքային մերոյ Աշոտոյ, որդի սիրելի զնա անուանելով, և հաղորդակից կացուցանելով յամենայն Թագաւորութիւնս Թագաւորութեան իւրոյ ։ Եւ այսպէս ապա լցեալ և կատարեալ լինէր բովանդակաբար բոլոր կարգս առաքինի գործոց, ըստ կարգի այնց պարծանաց զորս ընկալեալն էր ։

Զայսու ժամանակաւ մեծ իշխանն տանն

Արծրունի Գրիգոր, որ Դերենիկն յորջորջ-
էր, ձեռն զդաւառօքն և զքաղաքօքն ար-
կեալ զկողմանքք Հերայ և Զարաւանդայ
'ի հնազանդութիւն ընդ իւրեաւ զկողմանսն
զայնոսիկ նուաճէր: Իսկ իսմայէլականն ազ-
գին գլխաւորք, որք բնակականաբար նստեալ
կալեալ էին զսահմանս քաղաքացն և գա-
ւառացն այնոցիկ, Թէպէտ և չխթամիէին ըն-
հարթ հաւատարութիւն և զհնազանդու-
թիւն առ իշխանն Գրիգոր ցուցանէին. և
յայտ առնէին, սակայն սիրտք իւրեանց հեռ-
ացեալք մեկուսի էին 'ի նմանէ: Արդ
յաւուրս աշնանայնոյն մեծ իշխանն չուէր զբե-
նայր զկողմամբք Հերայ, և 'ի հանդիպման
գլխաւորի քաղաքին. և իբրեւ ել առ իշ-
խանն, դաւաճանութեամբ 'ի ծածուկ զօրս
գօղեալ թագուցանէր 'ի խախտեալ այգեստա-
նի: Եւ 'ի հանդիպել իշխանին՝ յանկարծօրէն
յարուցեալ զօրքն իսմայէլեան 'ի տեղւոջէ
իւրեանց, 'ի Թիկանց կուսէ իշխանին 'ի վե-
րայ զեղեալ հեղան, և առ ժամայն հա-
րեալ զիշխանն սրով սուսերի յերկիր կոր-
ծանեցին: Եւ այնպէս խարդաւանեալ յան-
նօրինաց՝ բարձաւ մեռեալ, և տարեալ թա-
ղեցաւ 'ի շիրիմս հարց իւրոց: Եւ զկնի նո-
րա պայազատէ զիշխանութիւնն մեծ՝ Աշոտ

որդւոյ իւր, Թոռն արքային Աշոտոյ: Բայց զմեծագործութիւնս քանիցս այսոցիկ՝ զօրութեանց և քաջութեանց և մրցմանց և պատերազմանց, և բազում բարի գործոց, առանձին գրեալ է ՚ի գիրս պատմութեանց Շապհոյ Բագրատունւոյ, բաւական քեզ կացուցանել առ տեղեկագոյն ասելի բարեպաշտութեան:

Իսկ Վասակ Սիւնեաց իշխանն, որ ընդ ժառանգաւորութեանն Իշխանիկին անուանէր, առատածաւալերձ պարգևաւորիւ և բարեպաշտութեան հանդիսիւ քաղաքավարեալ զկեանս իւր՝ վախճանի, եղեալ ՚ի շիրիմս հարց իւրոց: Եւ առա եղբայր նորուն Աշոտ ընդնոյն պայազատէր զիշխանութիւնն զայն. այր հեզահամբոյր և խաղաղասէր, բարեպաշտօն և երկիւղած Աստուծոյ. և ամենայնիւ յամենայնի շինութեան զինքն պարապեցուցեալ հայրենի տէրութեան իւրոյ:

## ԳԼՈՒԽ Լ.

Յաղագս ծննդեան Աշոտոյ արքայի, և խաղաղութեան երկրիս ի մէջ Աշոտոյ սպարապետի և Սմբատայ արքայորդւոյ, և վասն Գէորգայ կաթողիկոսի.

Բայց Աշոտ արքայ Հայոց յետ փայլեցուցանելոյ զամենայն ուղղութիւնս, և

յաջողութիւնս կարգաց և գործոց և գնդա-
ցից Հայաստանեայցս, այլա հիւանդագոյա-
հիւանդութիւն մեծ, որ և մեռաւ իսկ։ Իսկ
մինչդեռ 'ի մահիճս անկեալ դնէր, ոչ սա-
կաւ ինչ ընդ մարմնոյ խնամոյն՝ անձնցուցա-
նել ջանայր և զհոգւոյն եւս խնամատարութիւն։
Վասն զի առ ինքն զմեծ կաթողիկոսն [illegible]
որդ կարդացեալ, և զփրկչական թէնակորդ ըն-
մարմին և զարիւն Տեառն Թոշակ յետոյն
առ 'ի նմանէ իւր ընկալեալ, ոչ առկաւ ինչ-
քան թէ դեղանբուժ բաշխէր գանձս ոսկւոյ
և արծաթոյ 'ի մանկունս և յաղքատս։ Նաև
'ի ձեռս Հայրապետին հաւատայր զիշխանու-
թեան գանձարանացն մեծերս, և զերամակս
ձիոց և ջորւոց անդէոց, և զհօտս ոչ-
խարաց՝ ամենևին բնաւին բաշխել յեկե-
ղեցիս ուղղափառաց 'ի նուէրումն սրբա-
րանին սրբութեան, ուր զի մարդ պիտոյ ինչ
լինէր։ Եւ այսպէս ապա զկտակագրեալ ակն-
ոչ արտաքնոցն 'ի մաքրութիւն նորոգման
ներքին մարդոյն անտեսաբար կենացուցա-
նէր. յետ որոյ բարւոք ծերութեամբ ըստ բա-
ւոյ բարեզգեաց բարուց հանգեաւ 'ի Քրիս-
տոս։ Եւ վասն զի 'ի ճանապարհի յիջևա-
նըս 'ի Բաղապատն կոչեցեալ տեղ ապարա-
ժի եղեւ նորայն վախճան, բարձեալ ա-

ւթեամբ զգեստու նորա զգեցուած 'ի բաց
Լեւոնթափէ . և ինքն մեծամեծ և պատուա-
կան ընծայիւք 'ի Սմբատայ մեծարեալ՝ գնա-
ցայ երկնային առ արքայութեան Ռ̈բաս։ Այս
փչեցեալ աստուածայնս 'ի քաղցրենն ամենայն՝
եղեւ չար զեմանն առ Սմբատ խարշեալ. կա-
լեալ կապէ զնա երկաթի շղթայիւք. և դնէ
'ի բանտին 'ի բերդին Կիւրգուց։ Իսկ յայնմ
հետէ առաւ երկարանջիւրաց անուն՝ ազգաւն
չարութի սաստկացեալ զմիաբանքն վեղար, և
զաւուրն այսպէս յինքեանս կոչեալ Սմբատ
և Ռ̈բաս. և մինչ մարտուցեալ ոչ կարա-
ցան առերանց դուշխարհաւն վեղար։
Ապա 'ի մէջ կացեալ Կաթողիկոսն մեծ, ըղ-
խաղաղութիւն ընդ միաբանս խօսել խարհէր.
և հայցէր զՌ̈ուբենեան արձակել 'ի տեղի
իւր, և զհրապարակ բարկութեան տեղա-
ցուած 'ի բաց տանել 'ի միջոյ։ Իսկ սպարա-
պետն խորամանկեալ և հաւանական իմն
ցուցեալ միտս՝ ասէ. Տացէ ինձ այսրէն Ռ̈ու-
բենեան զերկու ամրոցն, զոր յափշտա-
կեալ իւր է 'ի ձեռաց Գուրգենայ քեռան
իմոյ. և զԴուռինթ զորգի իւր գրաւական
ինձ. յայնժամ և ես թողից զնա խաղա-
ղութեամբ։ Իսկ յայդմ բանի յետակարի երդ-
մանն կնքեալ սայր յ... սպարապետն մեծ։ Իսկ

Զլեզուս անձեալ զերկիրս, պարտախամաւք եղեալ և ղօղանջել ՚ի սուր չըլթանս : Բաւ լիցի ձեռս համբառնալ յօծեալն Աստուծոյ, և քրէական մեղօք՝ փառաբանողի լինել անթողլոյն և անդաժշտելոյն : Բաւ լիցի ինձ լինել Կորխ և Դաթան՝ հակառակ ընտրելոյն Աստուծոյ. այլ թէ ոչ՝ բացցէ երկիր զբերան իւր, և կլցէ զիս կորստեամբ ընդ բանակին Աբիրոնի, և կենդանւոյն իջցեմ ՚ի դժոխս :"

"Իմն այդ է, և յայդմանէ զիս ոչ ոք կարէ փոխել, ոչ գեհեննին երկիւղիւ՝ և ոչ արքայութեան խոստմամբ. և յամենայն գոլով՝ հեղցի թարախեալ արիւնն սրախ այանդիմանն նզովելով զանդամնոցն, որք ըղձեզն խռովեցուցին : Ի վերայ այդր ամենայնի յուշ լիցի ձեզ և արձանագրեալքն Աստուծոյ օրէնքն, յորում գրեալ է թէ՝ յայտնիքն որդւոց մարդկան՝ և ծածուկքն Տեառըն Աստուծոյ. վասն որոյ և հաստատեաց օր՝ յորում ինքնին դատելոց է զգաղտնիս մարդկան ՚ի ձեռն Յիսուսի Քրիստոսի :

Եւ արդ՝ դուք անդր թողէք զ՚ի վերդ[1] քան զձեզ, և մի ՚ի կարծս[2] դատէք, և մի

(1) Չորս օրի. զվերդ :
(2) Երեք օրի. զգործս : Մի օրի. ՚ի գործս :

ըստ խօսից յանդիմանէք, մինչև եկեսցէ Տէր՝ որ լուսաւոր առնէ զգաղտնիս խաւարի, և զիւրաքանչիւր զգործն հրով փորձէ, զի կարծիք և թուիք նմանութիւն(1) և ստուերք են սնոտիք՝ արտաքոյ ճշմարտութեանն, և չհամարին վկայութիւնք յիմաստնացելոց առանց ըստ. պահանջելոյ Աստուծոյ, թէ յերկուց և յերից վկայից հաստատեսցի ամենայն բան. Ար և արտաքնոցն իմաստագունից յոյժ հաճոյ թուեցաւ, որ գողացեալ զմերն ՚ի մէնջ, և այլակերպ արարեալ, և այլաբանութեամբ յառաջ բերեալ իւր զիւրեանց սեփհականն, միայն զտեսան պատուեալ(2) անշուշտ, որպէս հարօր ՚ի վար. կամ դեղադիր ՚ի դեղոցի: Արդ՝ աղաչեմ ոչ լռել կամ անհոգ լինել, այլ իրաւանց ուշ ունել.(3) զի որպէս մարդկան կարծիս և համբաւք են, ձեր նմանիք տկարացեալք՝ փակեալ թուին ընդ սղալանօք(4): Բայց եթէ դէպ լինիցի և ՚ի Հայրապետութիւն կոչել, յորդորեք և դուք, և չլինի խոստ(5) մեղացն: Ով ոք լրբենի երեսօք կարէ

(1) Մի օրի. և նմանութիւնք: Չորս օրի. ՚ի նմանութիւն:

(2) Ամենայն օրի. ունէին՝ պատուիրեալ:

(3) Երկու օրի. ուշ առնել.

(4) Մի օրի. թուին օրինակ՝ ըստ սխալանաց ընդ սխալանօք: Երկու օրի. ըստ սխալանաց: Մի օրի. ընդ աղաչանաց:

(5) Մի օրի. փաստ մեղացն:

յառաջ գալ և վկայ անօրէնութեան լինել, թողում ասել 'ի վերայ ընտրելոյն Աստուծոյ, վասն այնորիկ իսկ և հրաման Հոգւոյն սրբոյ պանդխտական 'ի հոգիս իւր թողացուցանէ : Ա՛ր ապա լիցի ձեզ խռովականս ինչ առնել, և խստութեամբ ընդդէմ խթանի աքացել, զի յաւէտ 'ի բաց տանի 'ի բոլոր շնորհաց այդպէս խորհել 'ի հաւատ. և չօրհնեցաւ իշխանն Բագարատ՝ որ զայդպիսիդ խորհեցաւ յոչ ինչ պէտս, որում (1) ամենեքեան իսկ գիտակք եմք կորստեան կորստականացն :

“Ժողովք թէ հրամայէք լինել, մի լիցին ժողովք չարաց պաշարողաց՝ քինահան հրոսաղաց, որք որպէս յայնժամ ժողովեցան ընդ Աննայի և ընդ Կայիափայ վասն Տեառն, և արդ վասն օծելոյ նորա. այլ զայն զոր ստացաւ 'ի սկզբանէ Տէր 'ի վիճակ ժառանգութեան իւրոյ, ըստ որում մարգարէն դասաւորէ ասելովն. Ժողովեցարուք 'ի լեառն Սիօն՝ քահանայք և ծերք արդարակորովք. քարոզեցէք պահս և պաղատանս. սրբեցէք զեկեղեցի լալով և կոծելով, զի այց արասցէ ձեզ Աստուած : Ըստ որում և առաքին ձեզ նիկիական սուրբ հարքն տրեխաւորեալ ոտիւք հետեւեալք 'ի բանակետղ սրբութե՛,

(1) Երեւի գրի. յորում :

զամէն ողջոյն արձանացեալք պահօք և ա-
ղօթիւք։ Սերին վհաց նեղութեան դժուա-
րեկն, և ջուր տառապանաց արբին՝ 'ի գետ-
նատարած խշտիս ընդ երկիր կցեալ. բա-
զում զղջմամբ և հեծութեամբ զաւետա-
րանն սուրբ միջնորդ կացուցեալ, զի մի ա-
րասցեն ըստ կամս ինչ. յորս հայեցեալ Աս-
տուած, և լուսաւորեցոյց նոցա զարժանն.
նոյնպէս այլք ամենեքեան։

«Որդ՝ ես անարժանս հաւանեալ եմ 'ի
խորհուրդս ուղղոյ, և 'ի ժողովս բարեսիրաց
գալ հասանել, և զհերկս աշխատութե̃ նո-
ցա կատարել աղօթիւք(1) և ձգամբք. և նոյն
Աստուած հզօր և կենդանի է առնել զհաճոյս
իւր։ Այլ յաւելում յանդգնել 'ի ստիպողա-
ցըն անպատմութիւն, և երաշխաւորեմ՝ զի
թէ Աստուած պերդեւէ(2) և ոչ այցելէ, զնա
ընդ չարագործսն և ընդ մծղնեայսն որոշե-
ցէք 'ի նախատանս յաւիտենից. միայն թէ
ժողովքն ըստ տեսութեանս իմ եղիցի։ Այլ
վասն լեզուաց մի ինչ ընդ միտս ածեալ
զարհուրիք. զի լեզու ոչ եթէ նորոգ ինչ
արեալ է 'ի դառնութեան, և լարեալ աղե-
ղըն թիւր պատրաստական, 'ի ձգել(3) զնետս

(1) Մի օրէ. տարեւոր աղօթիւք։
(2) Մի օրէ. զխարդ և է։ Որ Նոյն ճշգրտոյն էառ։
(3) Մի օրէ. ձգել.

հեռոյ և հակառակութեան, հարկանել լռ-
պանանել՝ որք ուղիղ են սրտիւք. և դեւք
չարք ընթանան ծառայելով զպատիւ սր-
բոց՝ խորհել մերժել հնարիմացութեամբ
որդւոց մարդկան բարկացելոց։ Արդ՝ այնք
քեղուք են, որովք մարգարէքն դատափետք
եղեալ Թոփեցան 'ի սուր սուսերի սատա-
կեալք, փարիսականք յորդորն և Հրէից
ճուչն է՝ որով և Աստուածն բան համար-
ձակեալ կորեան յաւիտեանս յաւիտենից։
Քահանայից մոլեգնութիւնն է՝ որով աս-
տուածամարդն եղեն։ Յուդայի կատաղու-
մըն է՝ որ խոցեալ աչօք դիմեաց, և չկորոյս
զերեսուն արծաթին, և մատեաւ 'ի ատեղկ
բւր։ Այն խմացուածք են և խոհական հան-
ճարքն՝ որք Աստուած և 'ի կայսր գիտացին
պարտաւոր առնել զՈրդին Աստուծոյ, և
օրինօք մատնեցին դատաւորին 'ի կորուստ
անձանց իւրեանց։ Յիշեցէք զվկայսն Ստե-
փաննոսի և Յակոբայ Տեառն եղբօրն, զնար-
կեսոսին զերեսին, (1) և մի խորհիք. զի առ-
նել գիտեն որդիք մարդկան կամ կամաւ
կամ մոլորութեամբ բանսարկուին. վասն
որոյ և գրեալ իսկ պահին չարութիւնքն ա-
նօրէն մկայիցն 'ի զգուշութիւն առ յապա

(1) Մէ որ. երեցին.

եղելոցս․ որք որպէս զածելի սուր սրեցին զնենգութիւն, սիրել զչարութիւն քան ըզ-բարութիւն, և զխօսս կործանման։ Վասն որոյ պաղատանս մատուցանէ մարգարէն՝ ապրել 'ի մարդոց չարաց, որք սրեցին զլեզուս իւրեանց որպէս զօձ, և թոյնք իժից 'ի ներքոյ շրթանց նոցա։ Յաւելում և զայս ևս, որ անձնամատն (1) գարշելի՝ չէ վկայ, և ոչ կարէ գալ յառաջ յատեան ուղղոց․ այլ բացէ 'ի բաց հալածի․ քանզի զպիղծ դէմսն երեսք կնոջ պոռնկի արարեալ, և ելեալ 'ի թուոյ արանց։ Նա խոստովանելն առ քահանայն՝ չէ վկայ ըստ սիւնհոդոսական կարգին, նախ քան զկատարումն ժամանակին սուրբ կանոնաց․ և խոստովանեալ ապաշխարութեամբ, և առնել քաւութեամն իւրոյ վկայս զառաջնորդս եկեղեցւոյ։

«Արդ՝ եկեսցեն ապաշխարեսցեն նախ մեղաւորքն խորգով և մոխրով, կրօնաւորեալ սրտի մտօք, և ապա յետ ժամանակին հաւատարիմ բանք նոցա լինիցին։ Այլեւ եպիսկոպոսք ընտրեալք և արդարք ոմանք 'ի հեռաստանէ եկեսցեն, յորոց վերայ ոչ լինիցին կարծիք ատելութեան․ նոյնպէս և հարք սուրբք և աւագք թող քննեն՝ իբ-

(1) Այլոյն օրի․ ոմնէին՝ զանձնամատն։

րն կամին , և հաւատարմանան զերդնուէ (1).
և ապա յետ այնորիկ ամենայն իրօք՝ որք կա-
րեն զսուրբ սեղանն և զսուրբ աթոռն փր-
րխայով պատել , զկուրեանց ոգիս պատես-
ցեն իբրև զսուգ առեալ վասն անկման
փեսային , որ զՔրիստոս փոխանակէր 'ի մա-
տոյս սրբութեանց հարսին եկեղեցւոյ . և
շատ այլ ինչ աւելի քան ըստ արդար իւ-
րաւանցն՝ զոր սարսափեցայ գրել ։ Նա
յայնժամ լինի հրամայեալս 'ի ձէնջ թէ՝
զայլ որք ընտրեալ կամենայք , արդ մ չէ հնար
լինել , բայց եթէ բուռն զօրութեամբ՝ և
կամ կամակար մտօք ընդ Աստուծոյ կռուել ։
Բայց արդ դուք թիկունս ասէք Աստուծոյ
ըստ խմուռն խորհրդակցութեան , զի առ-
հանդերձեալն դատաստանաց ձեր քաղցր ե-
ղիցին առաջի տիեզերական ատենին , և փա-
ռօք և պատուով ընկալջիք յԱստուծոյ ընդ-
երկայն աւուրս դ ։

Արդ՝ իբրև ընթերցաւ զայս յետոկար-
նամակն . յոյժ զամօթի հարեալ՝ սաստեաց չա-
րադոյն Նենգողացն . զի ուր և գրեաց նա
զայսպիսիս , ոչ ուստէք ըստ կամաց ընկալա-

(1) Անմեղի օրէ . ասնչին՝ զերդուէ կամ զեդուէ . ընծնէանչէ է և ասա Բեբեա զհարդ և է , հանդիսի մեամ յօրինաչից ըզր ե-գաց Վերագոյն ։

պատասխանիս, այլ բազում յանդիմանակաց մեղադրութիւնս։ Մանաւանդ զի՝ ոմանք եւս 'ի խրոխտապանծ մոլեռնախանձ զրաբանողացըն աստուածասաստ իմն գոգցես բարկութեամբ հարեալ կործեան։ Զի ուրումն 'ի նացանէ ապիրատ չըլթունք որդնեաց լքեալ 'ի բազմաց տեսութիւն գոլով և ինձ իսկ գլխովին՝ սաստակեցաւ։ Իսկ ուրումն որովայնն հաչեալ(1) և հարեալ ընդ հարկաւորպիտոյսն գարշութեան խառն 'ի վայր վայթի. իսկ անձնասաստն ջերմամբ մեծաւ և տապախառն հրով վառեալ, և խաղաղաւորք 'ի վեր եռացեալք մեռանէր։ Իսկ մնացեալքըն ապա դիմեցին մեղայապացութեամբ առ ոտս Հայրապետին, տագնապաւ տարակուսեալք և գողացեալք յիրաւացի պատուհասէն, որք և թողութիւն գտին։ Այլ և սպարապետն մեծ ապաշխարմամբ սրտի զարհուրեալ, երկնչելով յարդարահատ դատաստանացն Աստուծոյ՝ բազմահառաչ պաղատանօք և արտասուօք անկեալ առ ոտս Հայրապետին, հայցէր զթողութիւն մեղանչական մոլորութեանն. զոր և ընկալաւ իսկ աննախանձ սրտի սիրով ըստ հաւատարիմ խնդրողին՝ արժանի թողութե և օրհնութեան

(1) Մի օր. հաչեալ։ Մի օր. հարեալ և հաչեալ։

զնոսա առնէր հաւատոց կատարելութեամբ ։

Եւ այսորիկ մեծաւ երկիւղիւ առ յինէն գրով դրոշմեալ ձեզ եղեւ յիշատակ առ յաւէտ, զի հայեցեալ յելս գնացից կորըստականացն պատուհասից, մի որ զնոյն անցըս չարչարանաց՝ զձաղանս և զձաղկանս խոխոտիցի կրել, որպէս և Նոքայն՝ որք ընդ Յուդայի անկեալք գնացին 'ի տեղիս իւրեանց ։

## ԳԼՈՒԽ ԼԱ.

Յաղագս խաղաղութեան Եկեղեցւոյ ոստիկանին ընդ Աքբարայ արքային, և պատուամբութեան Գոային քաղաքի ։

Բայց Աքբարայ հաւատապէս (1) հաստատեալ թագաւորութիւն, հնարէր ըստ Պօղոսի՝ ընդ ամենեսեան յարդարել զխաղաղութեան սիրոյն պայման. և նախ ըստ հայրենի կարգացն ուխտի ոչ պատէր զինքն 'ի սիրընթաց մտերմութէ կայսերն Հռոմայ Լեւոնի, ընծայիւք բազմօք և նուիրական պատարագօք զնա մեծարեալ՝ ըստ հեզա-

(1) Մէ օրէ. հաստատապէս ։

համբոյր հանդարտութեան իւրոյ։ Վասն որոյ և կայսրն ոչ եթէ փոքր ինչ, քան թէ մեծամեծս նմա ընձեռէր պարգևս և պատիւըս գեղեցիկ պճնուց և զարդուց, և ոսկեհուռ հանդերձ զգեստուց, և ընպակս և բաժակս, և կամարս ականակապս 'ի համակ ոսկւոյ. այլև մեծ քան զայն այն էր, զի որդի սիրելի կայսր զՍմբատ իւր անուանէր սիրալիր դաշամբք ուխտից։

Իսկ իբրև զայս ամենայն լսէր Թագաւորն Սմբատայ ոստիկանն Ափշին, և զհաստատուն անշուշտ սիրոյ միակամութիւն նորա ընդ կայսեր, 'ի խոր խոցեալ և խանդացեալ ընդ իրսն՝ եթէ գուցէ դաւ ինչ նմա 'ի նոցանէ լինիցի, առ եղծանել հաստանել փութայր զկապ միաբանութեան սիրոյ նոցա. վասն որոյ զօր բազում գումարեալ խորհէր չուել գալ հաստանել 'ի Հայս։ Զօր փաղփաղուկն արքային Սմբատայ զգացեալ պչարիմաց խարդաւանս Ափշինի, փաղփաղակի հորդան տայր զօրաց իւրոց՝ նախապարակոյտ բազմութեամբ, և քաջամարտիկ արանց պատերազմողաց, և աջողակ զինաշարժից՝ իբրև արանց երեսուն հազարաց. և գնայր ընդ առաջ նորա մինչև 'ի գաւառն Սստոկաց, մերձ յԱտրպատական։ Եւ մինչ

չեւ մերձեալ հասեալ էր 'ի զօրս Թշնամեացն, պատգամս 'ի ձեռն դեսպանի առ Նփշէին առաքէր: Ընդէ՞ր, ասէ, զչարեալ դիմեալ գաս յոչ ինչ պէտս. զի Թէ սէր ընդ կայսեր եղի, և այն եւս վասն ձեր օգտի, զի Թերեւս որ պիտոյ է ամիրապետին մեծի, և զքոյ եւս դիւրաւ զպէտս 'ի յունականաց անտի գտանել մարԹասցիս, և 'ի նոյպատ օժտուԹեան ձեզ ընծայել զերեւելի հանդերձից և զարգուց և զսպասուց վայելս. այլև վաճառականաց՝ որք ընդ դենիգ քո՝ բացեալ ճանապարհ, զի արասցեն մուտ ՚յաշխարհս նոցա, և 'ի նոցա լիուԹենէն փարԹամացուսցեն զձեր գանձարանս:

Իսկ իբրեւ այսպիսի հեշտալիր բանից ոչ՛ լուաւ Նփշինն, և ետես զի ընտիր ընտիր եկեալ սպառազէնս հասեալ առ դուրքս մերձ կային, այնուհետեւ 'ի պատգամաւորուԹիւն սիրոյ զչարին բանս փոփոխէր: Եւ ասա երկաքանչիւրք նոքա երիվարս ահիպարանոցս աշտանակեալք եւ հանդիպեալք միմեանց, և բազում պատիւս և պարգեւս Թագաւորականս իրերաց ընծայեալ, նա դառնայր գնայր յԱտրպատական:

Իսկ աբքայն Սմբատ ընդ կրօնկն դարձեալ՝ հասանէր 'ի մայրաքաղաքն Դուին: Եւ

ձէ, զոմանս հեշտականաւ բանի, և զոմանս արդեամբք յինքն յանկուցեալ. ըստ որում և մեծ կուրապաղատն Վրաց և համախոհք (1) իւր, գեղեցիկ կարգաց ուղղութեամբ հաւանեալք և հնազանդեալք լինէին. իսկ զոմանս ձեռներէց զօրութեամբ հարստահարեալ ընդդվզեալսն՝ և յոտին կացուցեալ: Եւ այսպէս ձգեալ անձկացուցանէր զշուրջ տէրութեան իւրոյ յարեւմտեաց հիւսիսոյ մինչեւ ցԿարնոյ քաղաք, և անդր ևս քան զԿղարջս բերեալ մինչև առ ափն ծովուն մեծի, և մինչեւ ցսահմանս Եգերացւոց, և մինչեւ ցատրպատ երկրին (2) Կովկասու. զԴուզարացիս եւ զՕսանաըս՝ մինչեւ ցդուռն Ալանաց, առեալ եւս յինքն և զամրոց դրան պահապանն նոցա, և անտի 'ի հարաւակողմն կողմ՝ զԿուր գետով մինչեւ 'ի քաղաքն Տփխիս. և զԽրամ գաւառ՝ մինչեւ 'ի քաղաքն Հոռնաբակերտ, և մինչեւ 'ի Տաւս և 'ի Շամքոր: Եւ այսպէս ընդարձակեալ զսահմանս տէրութեան իւրոյ, որ ընդ լծով արքունի սակից և բեկարաց և մաքսից կացուցեալ. զէն քաջութեան մարտի իւրոյ նշան յաղթութեան կանգնէր:

(1) Եշխ. որք. և մտախոհք. (2) Մէ որ. յանէր՝ մեծի երկրին

տօսրաթոր կականմունս։ Թողում ասել զագ-դակիցս և զկարեկիցս և զծակից հարազատութիւն մարդկան, որոց կականումն եւ ողբումն և աշխարումն գուժից ճչոյ և կանչոյ և կոռանչոյ, և աղխողորմ ձայնք երգեցիկ գուսանաց (1) և սեւազգեաց կանանց և արանց վշտահար հեծութեամբ սգացելոց՝ մինչեւ յերկինս բարձրացեալ հասանէր։ Իսկ զբազմութիւն դիականցն ոչ բաւեալ տալ գերեզմանացն, զբազումն 'ի վիհս և 'ի խորափիտս և 'ի դարափլակս (2) ընկեցեալ լինէին։ Եւ այսպէս ահ բարկութեանն ահաւոր զամենեսեան առնէր՝ պաշարմամբ զգածեալ զմնացեալսն։

Զայսպիսի լուեալ զաստուածասաստ բարկութիւն սրբոյ առն Աստուծոյ Մաշտոցի, որ բնակեալն էր 'ի Սեւան կղզւոջ բազմահանդէս ճգնութեամբ, գրեալ թուղթ առ գանեալսն մնացականս, օրինակ զայս։

« Զհամաշխարհական խորտակումն, զոր բուռն զօրութեամբ մանրեալ ճմլեաց աստուածային հնձանահար 'ի բարկութեան (3) մեղաց մերոց բազմացելոյ, գիտացի, հաւա-

(1) Աշխարհն օրէ․ ռամկին՝ կուսանաց։

(2) Մէ օրէ․ 'ի տարափլակս։

(3) Մէ օրէ․ աստուածային արդարութիւն 'ի բարկութեան։

տացեալ և սիրուն տեսարք իմ՛ և սիրելի եղ-
բարք, զյանկարծակի հասեալդ 'ի վերայ ըղ-
հնձանահարութիւն դառն արտասուաց, և
զօրհաս անտանելի տագնապաց մահու, որ
դարձոյց յողբ զխնդութիւն ձեր ։ Վասն զի
հուր եկեր միանգամայն, և փշրեաց զնոյն
մարդկեղէն անտառաց. և ահա բոյնու-
թիւն ծովու և բարձրութիւնք լերանց ոչ
կարացին արգելուլ զարագաթեւ հրամանն.
Նման դառն բուսոյ աւուրն կործանման, որ
մինչդեռ 'ի սեղանս վայելչութեան իւրեանց՝
կերակուրք 'ի բերանս էին, բեկանեցան 'ի
բարկ բաղխմանէ անչափ աղէտիցն ։ Վասն
զի լքին ծնօղք զծնունդս իւրեանց, և որ-
դայք աղէտիւք հրաժարեցան 'ի ծնողաց.
գերեզմանք նոցա տունք նոցա եղեն, և 'ի
յարկս իւրեանց իբրեւ 'ի գամբարանի թա-
ղեցան ։ Նման 'ի վերայ չարչարեցելոցդ և 'ի
հնձեցելոցդ առհասարակ՝ հարցդ և եղբար-
ցդ. զի թակարթափակեաց Տէր զբազմու-
թիւն ազգաց ժողովրդեան իւրոյ աներե-
ւոյթ սուսերաւ, 'ի միում վայրկենի ժամու
վանեալ, և իբրեւ զջուր հեղեալ ցամաքե-
ցոյց, կամ իբրեւ զծուխ սպառեաց և ա-
չախիղ խաւարաւ զամենեսեան զմեզ ծած-
կեաց ։ Եղանի աչաց՝ որք ոչ տեսին զնոր և

զյոնդուր դատապարտութիւնն զոր ընկալաք և հատուցաւ մեզ. զի որ երբեմն 'ի միասին սիրալիր խնդութեամբ խրախճանեալք քերկրէիք ծնողօք և եղբարբք և զարմիւք և զաւակօք, հնչեցուցեալ Տեառն զբարբառըն օրհնութեան, այժմ անտանելի տարակուսանօք յանկարծահաս խաւարազգեաց մթութեամբք պաշարեալ, և ստուեր անգամ ոչ թողաւ մխիթարութեան, և ոչ յոյս ինչ ելից զմեզ փոխանորդութեան և լուծման քոց կենացս, բայց միայն Աստուծոյ և եթ մարդասիրութիւնն: Նա որում և գիտէք իսկ, զի ոչ ինչ կայ հոգ Աստուծոյ, քան թէ զմարդկան ուղղութիւն և փրկութիւն. վասըն զի մեք մոռանամք զԱստուած, և զմեզ ինքն. այսպէս ապա ընդոստուցանէ ըստ խորում ողորմութեան և մարդասիրութեանըն: Վասնզի այսպէս հաւանիմ զտանջելն Աստուծոյ՝ ասէ՝ գիրք, որով խրատէ զչարացեալ անզգամութիւնս մեր:

«Դարձեալ՝ մի զարմանայք վասն անցքնելն նորայն դատաստանաց, թէ զիարդ կորուսանիցէ զարդարն ընդ ամբարշտին: Նախ և առաջին՝ զի ոչ է արդար և ոչ մի, վասն զի ամենեքեան խոտորեցաք 'ի միասին և անպիտանացաք. ապա չէ ինչ կարի չար, եթէ

մահն՝ որում պարտապան եմք, այն մեզ (1) վրիժաբար հասանիցէ: Յետ այնորիկ ապա որպէս զարևն և զանձրևն և զամենայն բարութիւս ՚ի միասին վայելեն արդարք և մեղաւորք, այսպէս և զբաժակ պատուհասին ՚ի միասին ըմպեն. իսկ իւրաքանչիւրոցն պատիւն և պատուհասն առ հանդերձեալ օրն պահի:

«Արդ՝ փասն զի այսպէս մինչեւ ցմեզ հաստատեալ են իրաւունք Արարչին, անաչառ վարելով առ ամենեսեան, ընկալարուք զակամայսդ որպէս կամաւոր, որով յայտնի լիցի իմաստութեան և գիտութեան և հաւատոց ձերոց հանդէս: Եւ զպարտական գոհաբանութիւնդ ձեր մատուսջիք նմա, որ մխիթարիչն է վհատութեան սրտից. որով և բնականդ իսկ էք նորա ընտանութեամբ՝ ըստ քրիստոնական հաւատոցն, և ուղիղ վարուց և առաքինասէր և ուղղափառ կարգաւ յերկիւղ Տեառն հաստատեալք: Եւ նա տացէ ձեզ հոգի մխիթարութեան և յոյս բարեաց ՚ի սիրտ սուրբ, և բնական սփոփանօք լցուսցէ զձեզ զմխացեալսդ ամենայն՝ զհօտ և զհովիւ, մոռացումն առնելով ծանր և մեծ վշտացդ. և ըստ չարչարանաց ելից նոցա ՚ի հովտէս տըր֊

(1) Զորս օրէ. անմեղ:

տմուԹեան, հաւասար չարչարելոց վկայիցն Քրիստոսի՝ հաշտեցի, հանգուցեալ զհոգիս նոցա 'ի յարկս լուսոյ. եղծանելով ըզգեր պարտեաց նոցա՝ զբանից և զգործոց և զմտածուԹեանց, և դասաւորելով 'ի խոստացեալ բարիսն, որ պահի սիրողաց իւրոց՝ որ յաւիտենից »:

Զայս բան բարեզգեաց ընԹերցեալ առաջի բազմաց, և լուեալ յունկանէ մեացելոց ժողովրդոցն, յահէ սաստից Տեառն ոչ սակաւ մխիԹարուԹիւն յանձինս իւրեանց գտէին: Արդ և արժանի այնմիկ չար ամպրոպին զենքեանս փարկեալս արժանիս, ընդ անօրէնս խառն 'ի նոսայն մեղաց՝ առ միմեանս ասելով. Յիրաւի Թէ և քրիստոնեայք եւս, 'ի ծուխս բարկուԹեան հեԹանոսաց Թըմբեալ պատժապարտ գտան: Վասն զի ոչ եղեալք 'ի Մեգոկլայ, խառնակեցաք ընդ Հագարացիսն, և ուսաք զգործս նոցա, որ գտաւ խոկ 'ի գայԹակղուԹիւն մեզ: Արդ արդ այս սակս եղկելի տարակուսական աղէտիցս քեզ բաւականացեալ, զի մի առաւելն քան զայս պատերազմող լսելեաց (1) անցցէ. այլ մեք զառաջիկայսն տեսցուք:

(1) Ա[illegible] օրի. [illegible]՝ լսողաց. Մի օրի. [illegible] 'ի [illegible] [illegible] [illegible]. [illegible] [illegible]:

## ԳԼՈՒԽ ԼԳ.

### Յաղագս խորամանկելոյ Ափշնի ընդ Սմբատայ արքայի, և հալածանաց կաթողիկոսին:

Իսկ դաւաճանող Ափշինն այն ոստիկան, զորմէ կանխեալ ասացաք զնմանէ, իբրեւ ետես զպատուաշաճաբար յաջողուածս արքային Սմբատայ, որ և զբարձրաձեան աւրէն հիւսիսականաց ազգացն, և ոզջքել հրահանգել 'ի հնազանդութիւն իւր զգաւանաքարոյ զգրուհան, եդ 'ի մտի իւրում ոչ կալ նմա յայնմհետէ ընդ իւր 'ի միակամութիւն սիրոյ, և հնազանդութեան սակի խոստմանն: Այլ եւ ակն ածեալ եւս թէ գուցէ ոչ ընդունիցի զսակ հարկացն որ 'ի վերայ կայր, և վասն այնորիկ աճապարէ հատանել խզել զմխատուցն պատճառաց կապուածս, որ ընդ Սմբատայ էին նմա կարծիք: Եւ ապա վարանեալ 'ի գաղտնիս, և առ ինքն զբազմութիւն զօրացն գումարեալ, իբր թէ յայլ իմն կողմունս նմա բան գնալոյ հասեալ կայ, և իբրև զչուինդն իմն յորդեալ եկեալ հարեալ զօրէն հեղեղաց՝ յաղողել գերփել կործանել զեղեալ հիմունս լաւութեան, ոչ գիտելով զայն արքային Սմբատայ, մինչեւ գայր.

հասանէր ստրիկանն 'ի Նախիջեւան ։ Որ թէ-
պէտ լուեալ զբօթն , և հալածեալ ստիպով
ջանայր առ ինքն զօրս իւր գումարել , սա-
կայն ոչ ժամանէր աճապարել ընդ առաջ
նորա որպէս միւս անգամն , մինչ եկն եհաս
'ի Դվին քաղաք ։ Իսկ արքայի զթիկունս
յամուր վայրս տուեալ, և հրովարտակ ընդ
ամենայն կողմանս սփռեալ, փաղփաղուկի գա-
յին կուտէին տարմաբար համագունդ նա-
խարարք Հայոց՝ մեծաւ զօրու հանդերձ ։
Այլ և 'ի հիւսիսականաց անտի ոչ դուն ինչ
եկեալք 'ի կոչօնս արքայի, աղեղնաւորք կո-
րովեաց , և տիգաւորք նիզակաց , փառ-
եալք 'ի զէնս և 'ի զարդս . և ասպա դէտակն
'ի վեր ամբարձեալ ժողովքին 'ի դիւղն Վր-
ժան՝ որ 'ի ստորոտ Արագած լերինն ։

Իսկ մեծ կաթողիկոսն Գէորգ գնայր ընդ
առաջ ստրիկանին , զի թերեւս ջանահնար
լինել նորա առ Աշխենին՝ զսիրտ քարեղէն նո-
րա կակղել բաւեսցէ , և խնամարկել բանա-
ւոր հօտի Տեառն . զոր բարեբարոյ տեսու-
թեամբ զնա նախ ընկալեալ, և ըստ արքա-
նեկութեան ներուին՝ յինքն զմիտս նորա յան-
գուցեալ , յղէ զնոյն ինքն պատգամ առ
արքայ Սմբատ՝ դաւաճանութեամբ դաւոյ
առ ինքն կոչել գալ թագաւորն . ոչ գիտե-

լով արդարամիտ և պարզ սրտիւ այրն Աս֊ տուծոյ Կաթողիկոսն՝ թէ յորոգայթ իւր զարքայն ջանայ խոնարհեցուցանել, և յա֊ փշտակութեամբ առ ինքն ձգել: Իսկ իբրև մեծիմաստ խոհականն չառնոյր յանձն զեր֊ թալն՝ ըստ սադրելոյ նախարարացն, դառ֊ նայր գնայր Կաթողիկոսն առ ոստիկանն: Եւ թէպէտ բազում անգամ ամենեցուն աղա֊ չեալ զնա երկնչել(1) չերթալ առ չարաբարոյ հեթանոսն, սակայն չարգելաւ նա, իբր ոչ ստել զերդեալ ուխտն ընդ նմա: Իսկ ոստի֊ կանն իմացեալ զոչ դաւաճանելն Սմբատայ ըստ պատգամաւորութեանն Կաթողիկոսին, հրամայէ ունել դնել զնա 'ի շղթայս և 'ի ձեռակապս երկաթից (2): Եւ ինքն խաղաց գնայ 'ի վերայ արքային Սմբատայ, մուտ առ նա կալեալ իբրև բանակետղ 'ի գիւղն Դողս: Ապա յետ երից աւուրց գունդ֊ կազմեալ՝ գումարտակ եդեալ 'ի կռիւ ընդ արքայի կայքաւէր: Ընդ սոսա 'ի քաջ արանց սուսերամերկաց, և 'ի լայնալիճ աղեղնաւո֊ րաց նետոլից ահագին ահափետ օրհասք մա֊ հու հաստուցանէին իսմայելեանն գնդի, և այր զախոյեանն իւր հարուածեալ յերկիր կոր֊

(1) Այլնայն օրէ․ ասնէին՝ չերկնչել:

(2) Մէ օրէ․ ձեռնակապս երկաթիս:

ծածկէր՝ տապաստ դաշտիցն արկեալ. և ըզ-
մնացեալս ցանեալ ցրուեալ և փախստեայ
զբանակաւն այլազգեաց արկեալ, հալա-
պահնակել պաշտպանել կարէին միայն ըզ-
ատեղի կացոցի կարաւանին Լուրեանց:

Այնուհետեւ ապա ոստիկանն չար 'ի
ծովածուփ այեաց կուտակելոցն (1), և փըր-
փրացեալ լեռնացելոց շիջեալ հատանէր. և
փոխանակ գազանական ոստիցն՝ յաղէրս
մնացեալ. հայցէր տալ յնա զձակն ար-
քունեաց, և գտնել ուխտ երդման տալս ոչ զա-
տանելոյ 'ի նորայն միաբանութենէ: Իսկ
այլայն անարգանեալ զաշխարհի զխաղաղու-
թիւն, անյապաղ զխնդիրսն կատարէր, և
երեւելի պատուական օժտութիւնս ընծա-
յից նմա մատուցանէր, ոչ սակաւս ինչ և
առ 'ի նմանէ գտանէր ըստ Թագաւորաց հրա-
հանգաց պատիւս պերճութեան: Եւ ապա
յուղարկեալ գնայր ոստիկանն, ընդ իւր տա-
նելով զմեծ (2) Կաթողիկոսն նորին շղթայիւք:
Եւ անդ 'ի մէջ Թշնամեացն մարմնոյ նեղու-
թեամբ բառնայր զբեռն ծանրատաղտուկ
տառապանաց. ոչ որոշել նմա սպասաւոր
ձեռնասուն զոք՝ որ պատրաստէր նմա մա-

(1) Երկու օրի. կուտացելոցն: Մի օրի. կուտակեցելոցն:
(2) Չորս օրի. չիք մեծ:

հիմն, կամ ջուր 'ի ձեռս արկանել, կամ ջուր ըմպելոյ՝ առ. 'ի դժարաւ բժշկել: Նոյնպէս ընդ որբոց կապելոց չարչարեալ. և արտասուօք միշտ թացեալ զանկողինս իւր՝ 'ի մշտնջենաւորութիւնս սաղմոսս համարէր. և անձանձրոյթ յաղօթս նահատակէր, միայն զի ոչ վրիպեսցի 'ի նաւահանգստեան կենաց հասանել: Իսկ իբրեւ ամիսք երկու կատարէր 'ի բանտի անդ, ապա ատեանն հրապարացի զանձս ոսկւոյ և արծաթոյ պահանջէր 'ի մեծ Կաթողիկոսէն, անշուշտ նամակ երդման կնքեալ, որ զի թէ տայցէ, արձակեսցի 'ի կապանացն, և առաքեսցի առ տուով յաթոռ իւր:

Իսկ սորա զգայուցեալ մեզ հոգւով չափ զհոգն մեր[1] եպիսկոպոսի դրան իւրոյ, եւ այլ եւս կղերց Եկեղեցւոյն ըստ օրինի փերելոց յածիլ շրջիլ ընդ գլխաւոր նախարարս և իշխանս աշխարհիս. և ժողովեալ միանգամայն զխնդիր պահանջման ատենականին, վաղվաղակի առաքեցաք ըստ հրամանի արքային Սմբատայ՝ առ մեծ իշխանն արեւելից համամ: Վասն զի ատենականն ընդ այն ժամանակս հասեալ 'ի Փայտակարան քաղաք, ընդ իւր տանէր զմեծ Կաթողիկոսն. յոր

(1) Թուի լինել՝ զհոգն 'ի ձեռն եպիսկոպոսի:

իբրեւ ժամանեալ՝ հապճեպով մերքն հասին առ նա : Իսկ նա յինքն հայցեալ զՀայրապետն տանոյր, և յառաջեալ զանձն առ յիրմէն եւս յաւելեալ ՚ի լրումն սակին, ոսկւոյ տանել ստոյիկեանին : Իւ հաւատոյ պաշտպանութեամբ թեւակոխեալ փափաքմամբ իշխանն ՚ի տեսանել զմեծ Հայրապետն, և մտերմանաւ որ սիրտոյից բովանդակապէս բաւականացեալ ՚ի հեռաւոր օտարութեան, և յարքանեկութեան պայմանի ծայրաւորեալ, առաքէ զնա ՚ի Հայս : Որ իբրեւ տեսին հասքն զՀովիւն բանաւոր ոչխարաց, մեծամեծս առ լցեալ խնդութեամբ բազմօք, և յամենայն եկեղեցիս զպաշտօն բարեկարգութեան բարձրացուցեալ, անդադար քաղցրութեան հանճ աղօթից կատարէին ՚ի փառս Աստուծոյ :

---

## ԳԼՈՒԽ ԼԴ.

Յաղագս ապստամբութեան Շոտոյ իշխանին, և պատերազմելոյ Սմբատայ արքային ընդ Շահմայ :

Զայսու ժամանակաւ Շոտ իշխանն մեծ՝ Վասպուրական կողմանցն, և քեռոր-

դի արքային Սմբատայ , խոնարհեալ 'ի նենգապատիր բարբանջանս ոմանց , և հրապուրեալ երկփեղկեաց 'ի բաց զդաշինս ուխտին որ ընդ Սմբատայ արքայի քեռւոյ իւրոյ . և չուեալ գնաց առ ոստիկանն Ափշին՝ իբրև 'ի պատճառս պարգևաց նմա 'ի յայտ ածեալ(1) զհնազանդութիւն միամտութեանանս , ոչ նկատեալ նախ զչարն՝ որ 'ի գոյացութիւն իւրին էր տեսանել ։ Եւ երթեալ առա բազում և երևելի ընծայս ոստիկանին տարեալ մատուցանէր , և այլ ևս կարասիս բարձեալ տարեալ միում միում նախարարաց նորա գաղտաբաշխէր , մեծագունի ակնկալեալ բարձի և պատուի , և վերընկալուչ զնա առնելոյ ինքնիշխան կամաց . որ ոչ թերևս աւելի քան որ 'ի ձեռս իւր էր՝ առեալ լինէր . բայց միայն պատուասէր զարդու զնա զգեստաւորեալ և յուղարկեաց՝ եկեալ(2) 'ի բաց , միայն զօրհասական վէրան յոգիս ընդունէր ։ Իսկ արքայ Սմբատ միայն յղութիւն պատուեալ . սպասէր առ 'ի նմանէ հաւանական միոյ դարձի առ նա տանել . և մերկանալ զամօթալի դէմս ապերախտութեան . այլ նորա անփոյթ զայս արարեալ՝ ոչ դառնայր 'ի բերդս բարւոյն արկից ։

(1) Չորս օրի . նմա և յայտ ածեալ .
(2) Մի օրի . եկաց 'ի բաց .

Յետ սակաւ աւուրց ինչ և մեծ իշխանն Սիւնեաց ըստ նորին սակի զայն զայս գործեաց. երթայր և նա առ Ափշինն, յորմէ և նա թափուր իբրև զնա դարձեալ եկեալ։ Իսկ սորա այնուհետև զղջացեալ զփեռեկտիլն ի միաբանութենէ արքայի, խաղաղ առնելով աղերսէր՝ մի ունել նմա ի բանսի զյանցուածս իւր, կամ մերժել յառաջին խնամոցն հայրաբարուն սիրոյն։ Իսկ արքայ Սմբատ ոչ ինչ անխլրեալ ի մէջ արկեալ նախկին ապերախտութեանն, գրկաւոր սիրով առ ինքն յանձնանձէր ածել՝ իբրև զորդի սիրելի մեծապատիւ պերճութեամբ զնա շքեղացուցանել։

Յայնմ ժամանակի խաղաղութեամբ և շնորհօք և քաջութեամբ և ուժոյ պնդութեամբ երեւելի էր Գագիկ Արծրունի. և զի էր նա աներ Աշոտ իշխանանին մեծի՝ զորմէ բանս նախաճառեցաք, յինքն ապա զիշխանն մեծ յանդգնեցանէր նախայարձակեալ և նենգ խորհրդոյ սրտիւ. և ի պատճառս զբօսանաց սիրոյ զերկոսին եղբարսն բարեկամ ածեալ ի միասին՝ զԱշոտ փեսայ իւր և զԳագիկ և զԳուրգէն, և ի միասին զնոսա կապեալ երկաթի կապանօք՝ դնէ ի բանտի. և և յինքն զտէրութիւն նոցա գրաւեալ. իշխան

ձանէր և մեծ իշխանն Տարօնոյ Դաւիթ Բագ-րատունի, և փոխանակ նորա կացուցեալ 'ի տեղի՝ եղբօր որդի նորուն Գուրգէն. ա-պա և ընդ նմա եւս Ահմատայ մարտ ե-դեալ՝ մինչեւ սպանաւ 'ի պատերազմին։

Իսկ Ահմատն ոտն առ ոտն յառաջ մա-տուցեալ՝ միապետել ջանայր զկողմանսն զայ-նոսիկ։ Այլ վասն զի որդի Դաւթի իշխանի մեծի միաբանեցեալ Շապհոյ եղբօր արքայի, և փոքրիշն ամբաստանութեան նորա յաճա-խեալ, և չարութիւն Ահմատայ մերկացեալ յայտ եկեալ էր, այնուհետեւ գումարտակ պատրեալ արքայն զնախարարս Հայոց. և հա-մախումբ զամենայն զօրս իւր առս իբրեւ վաթսուն հազար, և գնայ չուէ երթայ հա-սանէ մինչեւ 'ի հանդէպ լերինն քառ աղե-ւելից Տարօնոյ, բանակետող անդ կացեալ տեսանել զօրպէսն։ Իսկ բիւրս բռնաւորին Ահ-մատ նստէր յարեւմտից Տարօնոյ, բանակե-տող անդ կալեալ առ ափն Եփրատ գետոյ։ Այլ վասն զի բան միաբանութեան էր առ Ահմատ 'ի գաղտնիս իշխանացերյն Վասպու-րականի Գագկայ, նենգաւորութեամբ խաբէու-թեանն քաղցրացոյց 'ի կամս արքայի չուել գնալ անտի 'ի հարաւակողմ կոյս հանդէպ քաղաքագեղջն Հողոցայ, իբր թէ յայնմ մար-

զի՛ դու նոցա պատշաճ զգործ իւրն (1) վճարել խռովութեամբ, կամ խաղաղութեամբ ։ Իսկ արքայի ոչ ինչ կարծիք լուեալ զնմանէ լեալ, գնայ ընդ նմա ։ Իսկ նորա նախ փաղփաղեալ և զհրապարան զայն զեկուցեալ Ահմատայ, և 'ի պայման պատշաճ ժամու կիտին եղելոյ՝ հրաւիրէր գալ 'ի վերայ. և ինքն առաջնորդէր բազմութեան զօրացն ընդ լեռնակողմն անջրդի ապառաժ մացառախիտ քարաժայռ անպողոտայ ախափայ գնալով զօրն ամենայն, զի յոլովք 'ի ծարաւս իւրեանց հեծուցեալք սատակէին ։ Նա այլ ևս զօրքն ամենայն փայրագնաց ջլաձիգ խղմանք առժանեալ, վաստակեալ, լքեալ, թալկացեալ թանձրադանդաղ ձանձրութեամբ, և հառաչեալ հազիւ հասանէին 'ի ջուր ինչ գեղջ մի Թուզղիս անուն, և անդ գրեթէ իբրեւ ըմպանեալս և զյօդապղծս առհասարակ անկեալ դնէին ։

Իսկ Ահմատայ ընդ եղելոյ կիտին Պաղկայ՝ ստիպեալ զզօրս իւր, մինչդեռ առաւօտն զգիշերին մերկանայր, հասանէին հրասակք առաջապահքն սփռեալ 'ի վերայ նորա ։ Նոր ապա 'ի հետէն հասելոյ ընդոստուցեալ իմն զօրացն լքելոց. և հապճեպ փութեալ

(1) Զոր օր. զգործ իմն.

'ի զբահս և 'ի զէնս և 'ի զարդս, և ձի կալեալ՝ նախ ինքն իսկ արքայ յասպարիսի անցեալ առաքինանայր, ապա և այլք ոմանք զկնի ասպատակ տուեալ. և ձի 'ի ներքս տարեալ՝ ընդ կրունկն զջոլիրս ռազմի թշնամեացն դարձուցեալ հատակտուր առնէին: Իսկ զայնպիսի արփաբար մրցմունս տեսեալ Պապագիկն՝ որ բղխեալն էր առ 'ի յիւրմէն ընդհառ մահու, առ մղձկեալ սրտին՝ այլ իմն չար խորհրդոց արբանեկեալ, և հէն հաներեալ առհասարակ բանակին, և հրամայեր նախ զխորան իւր յերկիր ընկենուլ, և բեռնակրացն բառնալ գնալ ընդ կրունկն. զոր տեսեալ բազմութեանն և լուացի զայն կարծեալ ամենեքեան նոյնպէս առնէին: Վասն որոյ տեսեալ զայն արքայի, և իմացեալ թէ յայնմհետէ ոչ յաջողի նոցա գործ պատերազմին, յետոյս զինքեանս մղեալ՝ 'ի փախուստ դառնայրն: Ընդ ապա անկանէր անփորձ և անկիրթ երիտասարդն չքնաղադեղն Աշոտ՝ քեռ որդի արքային, որ 'ի մեծ նախարարութենէ Հայկականս գրոհի, ընդ նմին և այլ եւս տեարք պատերազմողք յաննշանից ոմանց, յիսուն՝ աւելի կամ պակաս. և այլ զօրքն ցրուեցան և գնացին յիւրաքանչիւր տեղիս:

Իսկ արքայն եկեալ դադարէր 'ի Բագրաւան գաւառ, 'ի հանգուցանել զխոնջ աշխատութեան իւրոյ: Բայց դրժադաւ (1) իշխանն Պապիկ ջանայր զկիրս նենգութեանն 'ի խորոջ սրտին իբրեւ ընդ գրուանաւ թագուցանել, ոչ գիտելով թէ՝ չէ ինչ գաղտնի որ ոչ գայցէ 'ի յայտ: Եւ իբրեւ եկն նա 'ի Վան՝ 'ի Տոսբ գաւառի, անդ ապա զուարճանայր զուարթանայր 'ի խրախ լինել, բայց որում թէ՝ սրտի բերկրեցելոյ երեսքն զուշակեն: Իսկ 'ի վաղուեան անդ աւուրն պատմուճանեալ նորա արքունական զգեստիւ, և հեծեալ 'ի ջորւոջ իւրում, ճախր առեալ ճեմէր յասպարիսի անդ: Իսկ Պապիկ եղբայր մեծի իշխանին Աշոտոյ, երկուեւս համախոհ Ամատունի արամբք՝ յանկարծակի 'ի վաղակաւորն յեցեալ, և 'ի վերայ յարուցեալ իշխանապանծ խորոխտացելոյն՝ սրոյ ճարակ զնա տային. և այնպէս յերկիր անկեալ վախճանեալ՝ թաղեցաւ ընդ հարս իւր: Իսկ կապեալն Աշոտ եղեալ՝ հաստատիւր եղբարբքն հանդերձ 'ի սեփհական իշխանութեան իւրում:

Բայց նախ քան զայս՝ երկու իշխանքն

(1) Որպէս դժոխարմատ, կամ դրժադաւան, կամ դժուարադաւ:

մեծամեծք գլխաւորք եւ ալեւորք հերոք, Սուչեղ իշխանն Սոկաց, և Գուրգէն իշխանն Անձեւացեաց, առեալ հակառակութեան ՚ի մէջ իւրեանց քաջութեամբ բորբոքեալ, առաւօտիկ դղրդմամբ մարտ ընդ միմեանս եղեալ կռուէին. յորում պատերազմի սպանաւ իսկ Սուչեղ իշխանն Սոկաց ՚ի Գուրգենայ։ Իսկ յետ երկեամ՝ մի ամաց՝ Գուրգենայ հեծեալ յերիվար սպավար, և յորս քաջաղեալ՝ եղեւ նման անցանել ընդ փոքր ինչ հեղեղատ. ուր այս երիվարն փախուսեալ փռնգտալ, և անկուշեալ յետկոյս զիշխանն ընդ առաւուցեալ ընկենոյր, և բարձեալ զնա մեռեալ՝ տարեալ թաղեցին ընդ հարս իւր։ Եւ այսպազատէ պատերութիւնն զայն մեծն Աստուած սրտի նորա ընդ նորա։



## ԳԼՈՒԽ ԼԵ.

### Յաղագս դիմելոյ Աֆշնի ՚ի վերայ Սմբատայ, և գերելոյ ընտանեաց նորա։

Իսկ վշտատէր չարատէր ոստիկանն Աֆշինն՝ լուեալ զայսպիսի գործեցեալ օճիրս, և

զդաւադրժող փախուստն Սմբատայ, և ըզ-
լքումն և զբեկումն զօրացն Հայոց, և ըզ-
նենգումն իսկ մեծամեծ աւագանւոյն, զայ-
լոցն ևս չեշտակի կոտորն 'ի միմեանց լի-
նել, 'ի ճահ առեալ զայն ժամ դիպող ե-
պատշաճ գոլ իւրոյ կամաց կատարման. եւ
'ի ծննդականութիւն չարի կառավարեալ
զմիտս իւր, դիմեալ, մամռեալ, յարուցեալ
գայր իբրեւ զհեղեղատ սաստիկ, զի չար
ուղխիւքն դղրդելեաւ ողողեսցէ զատենս
Թորգոմեան, և թափեսցէ 'ի թագաւորն
զթոյնս դառնութեան իւրոյ: Եւ չուեալ
ընդ Սեւոյ գաւառ՝ գայ 'ի կողմանս Գու-
գարաց և Վրաց, ուր նախ զնոսա նուաճեա-
ցէ, կամ շփոթ ամբոխից 'ի մէջ արկցէ. զի
մի յաջողեսցի ուրեք երբեք փախուստ 'ի նը-
մանէ Սմբատայ: Եւ վասն զի նախարարք
կողմանցն այնոցիկ ոչ բերան ընդ նմա յուխտ
ապստամբութեան, և ոչ կարաց հպել բըռ-
նութեամբ յանմատչելի ամրոց նոցա, դար-
ձեալ եւ 'ի Հայս ընդ գաւառն Վանանդայ,
և անդ խորհուրդ առեալ հետամուտ ըզ-
հետ կրթէր Սմբատայ: Իսկ իբրեւ նա յա-
մուրս քարաժայռ ձորոյն խորոփեաց Տայոց
անկանէր, և գիտաց ոստիկանն եթէ ոչ դիւ-
ւով դժողութե նմա սատնանել ինչ կարէ,

և ոչ պատերազմաւ 'ի հրահանգս կրթու-
թեան վանել, ապա երթեալ պաշարէ զա-
մուրն Կարուց 'ի Մանանդ գաւառի. վասն
զի անդ զօղեալ, թագուցեալ, զետեղեալ,
դադարեալ կային խարազնազգեաց կրօնա-
ւորեալ տիկինն Հայոց՝ կինն Սմբատայ, և
նու նորին քոյր՝ որ էր դուստր արքային Տ-
գերացւոց, և այլ ևս կանայք ազատագունդ-
արանց: Իսկ պահնակ ամրոցին էր Գանա-
նիս յազգէն Գնթունի՝ Հասան անուն,
յոյժ հաւատարիմ և հրամանակատար 'ի
վերայ տանն արքայի. այլ և զանձ ևս և
կարասի բազում արքայի 'ի գանձարանս ամ-
րոցին պահէր. զոր իբրև (1) ստուգեալ գի-
տաց Ափշինն յոմանց խրազգաց նմա եղելոց,
ուժգնապէս մղութեամբ և պատնէշ պա-
շարմամբ պատէր զամրոցն: Վասն որոյ ա-
րա Հասանն՝ խոհական իմացուածիւ ուշ
'ի կուրծս արարեալ, և գիտացեալ ոչ այլ
ինչ իւիք փրկիլ նոցա յայնմանէ, որ բացեալ
երևէր դուռն կորստեան, և կազդուրեալ
'ի կամս երկնաւոր այցելութեանն, խընդ-
րէր յետակար երդման յԱփշինէ՝ զի տացէ նը-
մա զամրոցն, և առ 'ի նմանէ գտցէ աներ-
կիւղութիւն արեան և ամենայն չար ամա-

(1) Այլոցն ոք. տեղեկն՝ զոր իբր և.:

թոպաց: Իսկ Նա վաղվաղակի աներկբայաբար զխնդրելոյն յետակար վստահութեն տուեալ բացաւ դուռն բերդին, և մտանէր Նախչևան:

Իսկ մարդիկ ամիրային թէպէտ և խոյս ճապուկեալք լինէին խռովել յահագին բեկա-նող գազանէ, սակայն Նա ոչ ինչ զնոսա-րոշեաց 'ի փոխանդս թագնակցի տարակուսա-նաց մեհու, կամ յարգել բանտի, այլ մի-բաց զբազմութի ռամկին (տայ) հանել եւ ար-զատել 'ի բոլոր հինից. միայն զորիկլինն հան-դերձ նուաւն իւրով եւ զհրամանատար տան-արքայի զ—սանն, եւ զայլ եւս խուռն ինչ-ազատ կանայս, եւ զգանձս եւ զկարասիս տա-րեալ ընդ իւր տանէր 'ի Դվին քաղաք, ոչ թերեւս մտադրութ ինչ տագնապ տարակուսա-սանաց զինի տարելոյն (1) ցուցեալ՝ քան թէ յաւէտ իմն զմեծարանս պատուասիրութե-ան 'ի նմանէն ընկալեալ, որ յետ աւուրց ինչ թողոյր եւս զ—սանն դնալ առ Թագաւո-րըն իւր: Իսկ արքայ Սմբատ դարձեալ եւ-կեալ յամիրայն Կարուց, եւ տեսեալ զի այն ինչ յափշտակեալ էր 'ի Թշնամեացն, ոչ ա-ղաւաղէր զինչն 'ի յաւուր երկնաւոր փրկու-թեանն, այլ լիաբերան գոհութեամբ Աս-տուծոյ կամաց հաւատայր տալ գիւղս եկե-

(1) Ըմաւդ տարելոյն:

Պատոյ Նմա, և զանգիւտ կորուստ՝ Թշնամւոյն: Եւ վասն զի ըստ ձմերային ժամանակին ոչ կարաց անդ որոշել կայանս, գնայ անտի յա-մաւրս Շրասխանձորոյ՝ 'ի գեօղն Կաղզուան:

Իսկ անդ ասպա (1) երկոցունց կողմանց դեսպան զկնի դեսպանաց տարուբերս առ-նէին՝ Սմբատայ և Ափշինին. և առեալ հար-ցափորձ 'ի մէջ առեալ՝ 'ի միմեանս հար-կանել Թափեր ջանային զմեղադրութիւն ի-րին գործեցելոյ: Ապա խնդրէր ոստիկանն պատանդս յարքայէ զդուստր նորա զաւագ, և զդուստր Սահակայ եղբօր արքայի: Իսկ ըզ-դուստր Շապհոյ կրտսեր եղբօր արքայի՝ իւր 'ի կնութիւն, իբր սաղապս իմն մնոտախս հա-մարեալ զուխտ երդմանն Սմբատայ, և մի-այն զայս և եթ խնդրեալ պատճառս վստա-հութեան և անվրդով խաղաղութեան: Իսկ արքայ ոչ տեսեալ զհարթայարմար միաբա-նութիւն նախարարացն ընդ ինքեան, և ոչ այլ ինչ ելի աղագս գտեալ, այլ ակամայ կա-մօք 'ի կամս նորա դառնայր, տալով զԱշոտ որդի իւր և զՍմբատ եղբօր որդի իւր 'ի պայման պատանդաց. այլ և զդուստր Շապ-հոյ կրտսեր եղբօր իւրոյ 'ի կնութիւն նմա, զոր իբրեւ առընկալաւ, և զհարսանեաց

(1) Այլնայն օրէ. յաւելուան՝ ասպա յետ երկոցունց:

պարս պարեցին, և զկաքաւսն կաքաւեցին՝ ոչ կամեցաւ գնալ 'ի դառնաշունչ ձմերային ժամանակի :



## ԳԼՈՒԽ ԼԶ.

### Յաղագս [illegible] Աշոտոյ Երկաթոյ . և Յովհաննու պատմագրի :

Յայնմ տեղ վախճանէր մեծ հայրապետն Գէորգ 'ի գաւառն Վասպուրական, զոր տարեալ համախումբ քահանայից և իշխանաց աշխարհին, եղին զնա 'ի քնարանի Ձորոյ վանաց՝ որ 'ի Տոսբ, մերձ յեկեղեցին՝ ուր եդեալ խուկ էր սրբոյ Լուսաւորչին մերոյ զգաւազանն իւր. և զսեղանն տէրունական խորհրդոյն, զոր նախ քան զհաստատելն եկեղեցեաց սրբոց 'ի Հայս՝ ընդ իւր շրջեցուցանէր : Իսկ իբրև ձմերային սգաւորութիւնն 'ի գարնանային բարեխառնութիւն (1) օդոց յեղանակէր զփոփոխումն, ապա ոստիկանն բազում հրահանգաց պատուով (2) յուղարկեալ առ 'արքայ, և զկինն

(1) Զորս օրէ . բարեխառն :

(2) Այժմեան օրէ . ամենքին պատուեալ , որ մեծ ողորմելի բար մարդոյն :

եւս արքայի ։ Սա խնդրէ զՇապուհ զեղբայր արքայի կոչէր, և նախախնամութեամբ մեծարէ զնա՝ իբրեւ հարազատի շնորհելով բարեվայելչաց պարգեւս և պատիւս ։ Սա նա յուշարկեալ զփեսայացեալն իւր Սփշին հանդերձ զաւերքն իւրով, և այլ եւս պատանդօքն, և տիկնաւն և նուաւն արքայի. և ինքն գնացեալ առ արքայ Սմբատ ։

Իսկ վասն զի հրաժարեալ էր ՚ի կենաց տեառն մեծ հայրապետն Գէորգ, ապա թագաւորն և համօրէնք իւր զհոգեւորութ և զաստուածաշնորհ այրն Աստուծոյ զՄաշտոց ընտրեցին ՚ի հայրապետութիւն, որ աստուածայինն՝ ծաւալմամբ և հոգեխաղաղ զօրութեամբ զարդեալ զհոգւոյն շարժմունս՝ իբրեւ պարարտ անդաստան բուսուցանէր ըղհոգեծաղիկ անուշահոտութիւնս։ Սա պատամերժեալ ՚ի բաց ընկեցեալ զկատակս կերակրոց, մեկնիւր հեռանայր ևս և ՚ի հասարակ կերակրոց՝ ՚ի հացէ և յըմպելեաց ջրոյ. սակաւաւորութեամբ լոկ բանջարով զհարկաւոր պէտսն վճարէր։ Նոյն որ հանճարեալ հաւանեալ թագաւորն և գահամեծար իշխանքն և այտոհական ազգ ազատք ընդ գեղեցկայարմար խորհրդական պնակս նորա, կացուցին զնա յաթոռ սուրբ Լուսաւորչին Գրիգորի, զօ-

րոյ և զգուշութիւն բարեբարոյս (1) բնղնոյ ընձիւղման նորա, որ 'ի պայծառս անդաստանի հոգւոյն երեւէր, ոչ է այժմ ժամ ճառել, այլ այլում տեղւոյ և ժամանակի թողլի է։ Բայց սուրբ այրն Աստուծոյ մինչդեռ սքանչելագործ գոլեալ վարդապետութեամբըն իւրով շինէր հաստատէր և յարդարէր 'ի կարգս բարեաց գնացից և գործոց զհօտս իւր հաւատացեալ՝ արտաքոյ բոլոր վշտակիր հեծութեան, հանդերձ 'ի Քրիստոս, ամիսս եօթն միայն կալեալ զաթոռ հայրապետութեանն։

Զկնի սորա հէքս ես և թշուառականս և պատուքեալս քան հոգեւոր արբանեկացն իւրասու. Յովհաննէս, որ զոյն զայս գրեցի գիրս, ոչ ըստ արժանեաց անձայ յանթեր տըրբութեան, թերեւս ոչ կարացեալ զհետեւ գոլ հրամանի արքային, և կամ այլոց եւս նախարարակոյտ բազմութեանն։ Զի թէպէտ և յաշակերտութենէ առն սրբոյն Սառոցի 'ի մանկութենէ իւրմէ, այլ և զազգակից հարազատութեան նորա ըստ մարմնոյ, սակայն կուրացեալ դերանով մեղաց իմոց, ոչ բաւական զանձն վարկայ դնել՝ 'ի նշանակել գշիւղ յանկան եղբօրն, կամ յատաւաղ-

(1) Չոր․ օրի․ բարեբոյս ։

դետս լինել յատենագրութիւնս նորա խո-
րացելի ։ Բայց դարձեալ փենազանդութիւն
յանձին բարձրացուցեալ, որ է մայր ամե-
նայն առաքինութեան, և զունկնդրութիւ-
նսն բարի գոլ [1] մարկեալ՝ քան զզոհ ըն-
տիր. Եւս զաչ հակառակելն, ամայ յայս՝ մի-
այն ինձ թողուլ յայս առաջնորդական հան-
դիսի՝ զԱստուծոյ և եթ մարդասիրութիւնն ։

Զայսու ժամանակաւ ՚ի քաղաքագիւղն
մեծ Երզնգաւորս, եկեղեցին որ նախ յար-
քայէն Սմբատայ հիմնարկեալ եղեւ՝ մերձ
՚ի Թագաւորականն նորա ապարանս, բնական-
դակեալ շինութեանն ՚ի գլուխ ելեալ առ-
ատանօր, և ըստ օրինակի կարգաց աստուա-
ծայնոց զնորին նաւակատիս պատուեալ բար-
ձրացուցանէին ՚ի պաշտօն ցնծութեան ։ Նո-
չինաղ. և երեւելի զարդուք յուկէձանուկ
հանդերձանաց, և ՚ի շղաշահեա առագաս-
ակս զնա պճնեալ պայծառացուցանէր, և
կանթեղ եւս ՚ի համակ ոսկւոյ ականակապ
յարդարեալ, և ՚ի բիւրեղեական սրբապիղին
եդեալ ամեալ ։

Բայց մեծ կուրապաղատն Վրաց Նոր-
ներսեհ անփոփոք և անշուշտ ուխտ խաղա-
ղութեան և սիրոյ միաբանութեան ընդ ար-

(1) Մէ ժէ · ւէ՝ գոլ ։

քայի Սմբատայ պահէր 'ի բոլոր մասունս՝ առ 'ի բարեխնդական մտաց և 'ի զօրութենէ իւրմէ, մեծաւ պատկառանօք իբրեւ հօր հնազանդեալ. կամ թէ եւս առաւել քան զայս իբրեւ զծառայ 'ի Տեառնէ իւրմէ կամակորեալ զսահման երկիւղի չափաւոր մոլութեամբ. և զայս իւր մշտակարկառ յարքայ հարեալ համակեալ մեծաւ զգուշութեամբ: և նման զանձն եւս հաստատեալ: Ընդ որս յաւէտ իսկ հաճեալ և հաւանեալ արքայն Սմբատ, բազմապէս նախապատուութեամբ յինքն զնա ածէր յանձնանձէր. և այսր թագկապեալ նման մեծապատիւ պերճութեամբ և գեղեցկայարմար զարդու, նաեւ զնա զարդարեալ ընդ որինի թագաւորաց, կոչուցանէ զնա թագաւոր Վրաց աշխարհին, և երկրորդ իւրոյ տէրութեանն զնա հաստատեաց: Սակայն այս ընկալեալ զյառաջադիմութիւն արքայական պատուոյն, ոչ ինչ թերեւս փառն այնորիկ ամբարտաւանեալ՝ քան թէ միշտ ընդ խոնարհս զիջանէր, հեզ և համբոյր մտօք 'ի նոյն պայման զինքն յարադրաբար բերեալ արքային Սմբատայ՝ տայ ըստ առաջին հանդիսադիր կարգացն բարեաց:



## ԳԼՈՒԽ ԼԵ.

Յաղագս ապստամբութեան ընդհանրական ոստիկանին, և դար-բասելոյ Սմբատայ ի վերայ Ատրպատականայ, և սպանանելոյն նորա

Յետ այսորիկ ոստիկանին Ափշինի դարձեալ դառնանս յինքեան բերեալ յոմանց ու փղձկեալ ընդ զուգակցաց. և նենգաւորապատիր խաբէութիւն ՚ի միտս իւր նիւթեալ. սկսաւ ջանալ զբարեկարգս մեծամեծս իբրեւ նուաճել զնոսա : Իսկ սորա գնայր չունէր հաւանէր ՚ի Տփխիս քաղաքն, և անտի սորա իբրեւ հազարաւոր փախստեալ յանկարծակի զինեալ զայր զհաղորդաբար Շիրակ գաւառի. դարձուցեալ (1) զմիտս իւր ՚ի հին մոլորութիւն (2), յուսացեալ ՚ի կախարդս զաղտնիս՝ թերեւս մարթասցէ դրժել դաւողական հնարիմացութեամբ զարքային Սմբատայ : Իսկ թագաւորն սակայնով սուղ ինչ գունդս կազմեալ՝ սաստիկ տագնապաւ անկանէր ՚ի կազմածս ամրոցացն Տայոց, ՚ի կայուածս կուրապաղատին Ատրներսեհի սիրեցելոյն իւրոյ : Իսկ ոստիկանն իբրեւ ետես եթէ անհնար է արքայի դաւաճանել առ ՚ի նմանէ, և զի միանգամ և երկիցս և երիցս զփորձ առեալ էր, դար-

(1) Ձեռ. օրի. դարձուցանէ ։ (2) Մի օր. մոլութիւնն ։

ձեւալ ապա յայնց բարուց՝ Թուեցուցանէր սակս բարեխորհրդութեան և սիրալիր գթոյ ըզգալն իւր առ արքայ : Նա ապա չուեալ գնայր 'ի Պոլիս մայրաքաղաք , և անդ առ 'ի հաստատարմացուցանել ջանայր զաննենգ սիրոյ զդաշինս . և փոխանակ իւր Թողեալ ըզԳեւղաւան զորդի իւր , և զմեծ ներքինապետն , և ինքն հալածեալ տուեալ գնդով յԱտրպատական :

Նոր ապա յառաջ ածանգանէր տիկինն մեծ՝ կինն Սահակայ եղբօր արքայի , զկնի իւր տարեալ ոսկի և արծաթ և կարասի բազում : Նա հանդիպեալ 'ի Շարաւ դաշտին՝ առաջի ընծայէր արքային նմա զպատուապատարագսն առարեալս ընդ իւր . և ընդդիմեալ առաջի իւր արտօսրալից կականմամբ խնդրէր զորդեկըն իւր զՄեծբառս , զոր պատանդաւ իսկ առեալ էր յառաջագոյն տանիկանն յարքայէն Միհրանայ . և առաջի դնելով նորա զղջումն աւաղումն սրբութեան իւրոյ , յայտ առնէր զաղէկաւոր խնամոյն . ընդ որ յաւէտ հաճեալ ծրել լեալ սիրոյ տանիկանին , ողորմեալ բարեխնամէր , փառն զի բազում անգամ մեծապէս որք չարքն են , երբեմն և բարի ըստ գթութեանց քինին : Նա առեալ ապա զպատանդն 'ի ձեռաց տիկնոջն , տայ նմա զորդի իւր . և նորա

առեալ զմեծապարգեւութիւնն՝ դառնայ 'ի տուն իւր ։

Իսկ արքայ Սմբատ 'ի դառնալն իւր 'ի Տաճկաց՝ երթայ հանդիպի ներքինապետին մեծի մերձ յամուրն Նորի յեզր Նախուրան գետոյ, 'ի խաղաղական սիրոյ ընդ միմեանս բերեալք ։ Յետ-որոյ յուղէր հաճեալ ներքինապետն 'ի տեսանել զարքայ, խոստովանէր ոչ զոք թերեւս հաւասար նմա տեսանել ։ Եւ այսպէս հաճախորհ եւ համակամ եւ համադործ յայնմ օրէ եւ անդր ներքինապետն արքայի լինէր ։ Եւ բազում պարգեւս եւ պատիւս ընկալեալ 'ի նմանէ, գնայր ներքինապետն 'ի փայտակարան քաղաք ։ Իսկ որդի Նիչնի Դեւդանն եկեալ մնայր 'ի Դւինն քաղաքի, ուռճիկս պատրաստեալ նմա թագաւորին Սմբատայ՝ սուղ ինչ պակաս քան զամ մի ։

Բայց 'ի գնալն ներքինապետին յարքայէ, զձեռնապարհայն 'ի հրապոյրս ցոփութեան բերեալ 'ի բանից բանսարկութեանց ումանց՝ որք 'ի չարն հակամիտեալք էին, չու է զօրուծանու հրոսակ Դէորգեայ նահապետին Սեւորդեաց, որք սակս Սեւ կոչեցելոյ հաւուն խորհեանց՝ ազգն յայն անուն Սեւորդիք անուանէին ։ Եւ այսպէս յեղակարծումն ժամահասեալ 'ի վերայ տարմաքար, թէպէտ եւ

յարի որանց քաջապէս պատերազմ ընդ-
դէմ Ներքինւոյն զինեալ, սակայն սակս յան-
կարծահասն գալոյ ոչ կարացեալ դդէմ ու-
նել, ձերբակալ զՊետրոս առնէին հանդերձ
եղբարբն իւրով՝ որ Սրուեան անուանիւք.
և առեալ գնաց 'ի Փայտակարան քաղաք։
Բազում ապա հարցափորձ մատուցեալ զսա-
հիճքն դաւանութեան նոցա մասուցանէին,
ջանացեալք դարձուցանել զնոսա 'ի քրիս-
տոնէանէր օրինացն . . . յօրէնս Մահմե-
տին իւրեանց։ Որում ոչ բնաւ տուեալ
անեղի քանիցն, և ոչ հաւանեալ ազատապէ-
կամ փոխանակել զերկնաւոր կենացն քր-
փրկութեան ընդ անդիւս կորստեան և ընդ
անստախականէր կենացս, որով կատարեցան և
զանուն իւրեանց գրեցին 'ի դպրութիւն
կենաց։

Իսկ յետ այսորիկ Ներքինապետն խուժա-
պեալ և հաստատեալ յԱփշին, և ընդ իւր
առեալ զԱշոտ որդի արքայի, որ էրն իսկ
'ի պատանդի և 'ի դիպահոց առ Ներքինւոյն.
այլ և զկին եղբօր նորա Մուշեղայ՝ զոր գե-
րեալ տարեալ էր 'ի քերդէն Կարուց. վաղվա-
ղակի գայ հասանէ առ արքայ Սմբատ, և ետ
նմա զորդի իւր հանդերձ նուոքն։ Ընդ որ
յաւէտ ինն խրախ լեալ սակս այցելութեա-

Որդին Աստուծոյ և փրկութեան գերելոցն , պատուաւորապէս յինքն ածէր յանձանձէր զներքինացեալսն, մեծաւ շնորհակալութեամբ և առատ ձեռնածրիւք(1) և պատարագօք ըն- ծայեալ զնա , յուղարկէ զնա 'ի կողմանս Ա- սորեստանի : Չուեալ գնացեալ Ներքինւոյն 'ի սահմանս Եգիպտոսի , և անդ ըմբռնեալ ապստամբի յամիրապետէն իւրմէ :

Զայս ամենայն լուեալ ոստիկանն Ամ- շին , իբրև զանգատագեղ գազան զայրա- ցնութեամբ մռմռեալ ընդդէմ Սմբատայ , իբր թէ զնա գոլ խրատատու և պատճառ գործեցեալ իրին չարի 'ի Ներքինւոյ իւրմէ , և մեծագոյն իմն ամպրոպ և ուղխ չարի 'ի վերայ խորոխտայր հասուցանել արքայի : Հը- րովարտակս ընդ բոլոր ոլորտս իշխանութե իւրոյ սփռեալ , զի առ նա փաղփաղակի հաւ- ցեն արի արք , քաջք , երիվարօք կլնուց և զարդուց , և լեգէոն հետևակախումբ զօ- րօք : Արդ՝ մինչդեռ եկեալ դիմեալ հասեալ ժողովեալ գումարեալ էին բազմութիւն զօ- րացն , և հանդերձեալ էր ելանել չուել գալ , և զմղձկեալ սրտին պղառնութեան թոյնն յարքայն թափել , յանկարծակի անկեալ յախտ դժնեայ ցաւոց՝ ջեռաւ փոր նորա ,

(1) Այլ օր · առատաձեռն ձրիւք :

և տորոնեալ գոգոց նորա՝ 'ի վայր քամեցեալ մղեխին յորովայնէ անտի կոտորածն աղեաց նորա. և նախ քան զքակտել հոգւոյ նորա 'ի մարմնոյն, բղխեաց 'ի նմանէ հոտ մահու։ Նոյնպէս հեղձամղձուկ սատակեալ էջ 'ի դժոխս անհնարին դառնութեամբ։ Ընդ նմին եւս 'ի զօրաց անտի նորա 'ի նոյն ցաւրս դառնիքն տագնապութեան հարեալք՝ բազումք սատակէին, եւ մնացեալքն ցանեալ ցրուէին յիւրաքանչիւր տեղիս։ Նոյնպէս ապա աղօթահայց պաղատանացն առ Տէր տուած՝ թագաւորին Սմբատայ և բովանդակ ընդ մեզ եւս կղերց եկեղեցեաց Քրիստոսի արտօսրաթոր խնդրուածք (1) լսելի լինէր յականջս Տեառն զօրութեանց. և ոչ եկն 'ի վերայ մեր ոտն ամբարտաւանութեան նորա, և ոչ մեղկաշօշափ ձեռք նորա կարաց դողացուցանել զմեզ, և ոչ ուրախ եղեւ 'ի կեանս իւր խաւարասէր թշնամին, այլ կորեաւ յունայնութեան յուսոյ. և հաստատեցաւ հօտ Քրիստոսի հանդերձ հօտապետօք առաջնորդեալք, զօրացան 'ի նոյն վիմն 'ի հանդիսադիրն Քրիստոս, որ կամի՝ զի ամենայն մարդք (2) կեցցէ, և 'ի գիտութիւն ճշմարտու-

(1) Այլնայն օրի. ունէին խնդրուածովք։
(2) Մի օրի. ամենայն մարդ։

Թեան եկեացէ ։ Իսկ Դեւդատն որդի Աշոտ-նի իբրեւ լուաւ զատապաշտումն հօր իւրոյ, երկեաւ գիշերի պատրաստեալ գնաց փախստեայ Ատրպատական աշխարհն ։

## ԳԼՈՒԽ ԼԸ.

### Յաղագս Աշոտոյ և Հասանայ Արծրունեաց խոստովանողութեանն, և մահուանն Աշոտոյ ։

Յայսու ժամանակաւ մեծ իշխանն Ար-ծրունեաց Աշոտ, որ 'ի բողբոջից բուսոյ Սենեքերիմայ արքայի, ելեալ գնայր շրջէր զկողմամբք իւրոյ տէրութեանն փոքր ինչ գնդաւ. և հասեալ 'ի ձորակ մի զոր Փորակ-շամբայ (1) անուանեն, երեկօթս անդ առ-նէին յագարակի միոջ, յորում բնակէին Պու-բաւոնացիք ընդ յարկաւ շինուածի տանցն մնեալ զետեղեալ անկս ձմերային ժամանա-կին ։ Իսկ Հասանն Արծրունի որդի Վասա-կայ ուրացեալ զՔրիստոս, և հօրաքեռ որ-դի նոյն իշխանին Աշոտոյ, բնակութիւն կալեալ իւրոյ ունէր զամրոցն անուանեալ Սեւան ։

(1) Ոմանք Փորակմբոց. այլք՝ Փորակմբայ ։

Իսկ իբրեւ լուաւ զիշխանէն յայնմիկ ձա-րակի (1) գոլ յիջեւանս, դաւաճանեալ 'ի չար գիւղ անտի, և կամաւոր կուրութի յինքն կրեալ, զոր 'ի գաղտնիս իւն կազմէր, որ-կայս պատրաստէր, աղեղնաւորս շեղբաւորս սուսերաւորս վահանաւորս (2) կորովիս, զէնս շարժեալ, և ինքն իսկ հուպ ընդ նոսին առ-րեխաւորեալ, և յեղակարծ դիմեալ չուեալ 'ի գիշերի հասանէին 'ի վերայ իշխանին: Ըն-պարայածեալ, պատեալ, շրջափակեալ, պա-շարեալ պահէին զդրունս տանցն՝ յորում ծթագայացեալն լինէր իշխանն Աշոտ իւ-րայովքն, 'ի դիպահող իւն զնոսա բերեալ, և 'ի ձեռս կարծեցեալ ըմբռնեալ: Իսկ այս Հասանն յեցեալ 'ի նիզակն զոր ունէր, եւ կիցս իբրեւ զայծեամն ընկեցեալ 'ի տանիսն՝ յորում իշխանն կայր, վազէր՝ և 'ի տորմա-կան դափման ուրեմն թնդեալ տանիքն և 'ի վայր փլուզեալ հասեալ՝ անկանէր զկնի փը-լուզմանն Հասանն 'ի տուն անդ: Իսկ այս 'ի հոգագամփիւռ ձայնէ խօսիցն Հասանայ զնա ծանուցեալ, և վաղվաղակի ըմբռնեալ ածէին զնա իշխանին: Իսկ աղխատորոյզ շը-փոթմանն իրազգած եղեալ զօրացն Հասա-նայ, իբրեւ զծուխ 'ի մրրկէ հալածեալ և

(1) Երէմ օրի. փորակի: (2) Մի օրի. վահանակուոս:

փոխատուեալք անձևոս կորնչէին։ Նոյն այսպէս զգուբն զոր և փորեաց և պեղեաց Հասանն, 'ի նոյն ընկլուզաւ՝ զոր և գործեաց։

Իսկ իշխանն Աշոտ 'ի շղթայս կապարանի զնա արկեալ, և առեալ տարեալ զնա յամ-րոցն Սեւան, 'ի դուռս առ ինքն զամրոցն առնուլ հայցէր։ Իսկ մայրն Հասանայ և եղբայր նորուն, որ առ 'ի մօրէ և ոչ 'ի հօրէ, բռ-նադատեալ ոչ կամեցան տալ զբերդն, ոչ կարացեալ փութով լինել 'ի խոստացեալ բա-նիս իշխանին վասն ողջանդամ զկապեալն Հասան Թողլոյ։ Նա զգացուցեալ արքայի Սմբատայ՝ հարկ առնէր ինձ երթալ յամրոց գործոյն, թերևս կարողութիւն լիցի փա-կել զկորստական դուռն՝ զոր անձամբ ան-ձին եբաց Հասան։ Իսկ իմ երթեալ չուեալ և համոզեալ զախկկին վասն զամրոցն տալոյ, և փրկելոյ զՀասան 'ի մահու երկիւղէ, և ողջանդամ զնա լուծանել 'ի կապարանէն։ Ընկալայ ապա և յիշխանէն յետակար սաստիկ երդմանց, լուծանել Թողլու ողջանդամ և անվնաս զՀասան։ Իսկ ես իբրև առեալ եւսու զամրոցն 'ի ձեռն իշխանին, ապա 'ի նենգական չար խորհրդոց աղատաց ոմանց հրապուրեալ՝ փորէ զաչսն Հասանայ, կու-րացուցեալ զնա տգիտաբար 'ի կորուստ ան-

ձին իւրոյ , վասն զի որք երդմանց օրինաց և միջնորդաց հեստեալք և դիւրափոփոխք գտանին 'ի հակամիտութիւն հակառակաց բերեալ, այնպիսիքն մահու անձանց առիթ գտեալք , ոչ կարեն հաստատուն կեանս իւրեանց ստանալ ։ Իսկ իմ զաւետարանական իշխանութիւն 'ի գործ արկեալ, և քանիւ սահմանականաւ հալածեալ զիշխանն , տրտում Թախծանօք (1) անցեալ գնացի ։

Ապա յետ ամի միոյ անցելոյ՝ ազատութիւն յանդգնութեան արկաւ իբրեւ զըթոց զբարեվայելուչ և զպատկառոտ և ընչքնաղատեսակ դիտակուն Աշուայ ։ Եւ այսպէս զխախծման կենաց ընկալեալ 'ի տիս երիտասարդութեան՝ սաստիկ աւագ տէրութեան զնէօք զեղեալ յարարիչն ։ Զկնի ապա եղբայր նորուն Գագիկ պայազատէ զիշխանութիւնն զայն մեծ , և զկրտսեր եղբայր նորուն զԳուրգէն կացուցանէ մարզպան Հայոց արքայն Սմբատ ։

(1) Եւէ+ օրէ . Թախանձանօք տրտում գնացի ։



## ԳԼՈՒԽ ԼԹ.

Յաղագս ապստամբութեան Յովսեփայ եղբօր Աշոտի, և մահուան Շապհոյ և Դաւթի՝ եղբարց արքային Աշոտոյ։

Բայց թագաւորն Աշոտ իբրեւ լուաւ՝ եթէ Յովսեփ (1) պայազատէ զտէրութիւնն (2) զայն փոխանակ Աշոտի եղբօր իւրոյ, եդ 'ի մտի իւրում ոչ եւս դարձեալ դաւաճանս կրել 'ի խառնակեալ երկիւղէն, և կամ դաշինս սիրոյ դնել ընդ այնոսիկ՝ որոց խրատունք բարձեալ է յերեսաց նոցա, և բնաւ հեռացեալ բան արդար 'ի լեզուաց նոցա։ Ապա գրէ հրովարտակս և առաքէ դեսպանս և ընծայս գեղեցկայարմարս իսմայելեան ամիրապետին 'ի Բաբիլոն, և հայցէ 'ի բաց զինքն հատանել յազգէ յայնմանէ, որ խրատունք Աստուծոյ տարամերժեալ տարահեալ է 'ի նոցանէ, և 'ի բարուց անտի որ 'ի չարն միշտ հակամէտ գտեալ։ Զոր իբրեւ ընթերցեալ զնամակն և լուեալ զբ-պայման պատգամացն, վաղվաղակի խնդութեամբ զոր խնդրեացն կատարէր. և թե-

(1) Մէ օր. Յովսէփ։
(2) Մէ օր. զպետութիւնն։

Թեւաբեռն զսակն արքունի արարեալ, եւ յինքն լոկ հրաւիրեալ առ ինքն զմիտս Թա-գաւորին կացուցանէր։ Եւ ապա երեւելի զգեստ արքունական, եւ Թագ արքայական, եւ կամար ականակապ ՚ի համակ ոսկւոյ, եւ սուսեր պատուական, եւ երիվարս իբրեւ ոչ դագնացս իմն՝ կազմուածով զինուց եւ զար-դուց առաքէ Սմբատայ։ Զոր իբրեւ առ-ընկալաւ՝ յոյժ ուրախ լեալ զուարթացեալ զուարճացաւ, եւ այնուհետեւ ՚ի կարգս այ-լոց եւս հնազանդելոց եւ նա եւս միանէր ՚ի կապուածս լծոյ ամիրապետին. եւ այսպէս անտարրապէս եւ անշուշտ ՚ի կամս արքու-նականս զկամս իւր բերեալ նուաճէր։

Զայսու ժամանակաւ մեծ սպարապետն Հայոց Շապուհ եղբայր արքային Սմբատայ՝ կիսակատուր կենօք վճարեալ զմնտախասէր կենաց՝ վախճանեցաւ, յաւելեալ առ հարս իւր։ Եւ անդ ապա չուեալ եկեալ արքայ Սմբատ համաղունդ. իւրայովք համազգեօք, եւ արարեալ կոծ մեծ ՚ի վերայ նորա, եդին զնա ընդ հարս իւրում ՚ի շիրիմս քնարանացն՝ որ ՚ի քաղաքագեօղն Բագրանու։ Եւ ապա կացուցանէր արքայ Սմբատ զանձնագեղն եւ զքաջավայելուչ երիտասարդն զԱշոտ որդի Շապհոյ՝ սպարապետ Հայոց փոխանակ հօր

իւրոյ ։ Իսկ նա ՚ի սկզբան սպարապետական ժրայազատութեանն զխորհուրդ բարեաց զանձամբ արկեալ, շինէ ասլա զպճնապայ-ծառ եկեղեցին Նազարանու, որ ՚ի վերայ Ճխուրեան գետոյ՝ և զարդարէ բազում և երևելի սպասուք, և առնէ նաւակատիս աստուածայնին գոգցես պատշաճողութեամբ։ Զկնի ապա հիմնադրէ եկեղեցի ՚ի քաղա-քագեօղն Կողբ՝ բազմածախ փարթամութբ, և առիպով ջանայր գտանել և զկատարումն նորա, թէ Տէր կամեսցի ։

Յետ սակաւ ժամանակի ապա վախճան կրէր ՚ի կենացս այսոցիկ և միւս ևւս եղ-բայրն արքայի Գուրիթ, որ էր իշխան իշ-խանաց Հայոց, այր համեստ և հարթ հա-ւատարութեամբ ՚ի բոլոր գործառնութիւն բարեաց․ ընդ որս յաւէտ իմն սգացեալ ար-քայի, և տագնապաւ տարակուսանաց մը-խեալ ՚ի խորս խաւարին սգոյ, ՚ի մշտնջենա-ւոր տխրութիւնս զինքն արկեալ․ ուստի և մխիթարական կարգօք հաստատեալ իմ զնա ՚ի յայն կենաց անմահից, վերականգնեցի ՚ի գլորմանէն յիրս գործոյ թագաւորական յարդարմանց, հոգս տանել պիտառական կենցաղականացս՝ որ հաւատացաւ նմա Աս-տուծոյ խնամել զհօտ իւր ։

## ԳԼՈՒԽ Խ.

### Յաղագս դիմելոյ Յովսեփայ 'ի վերայ Սմբատայ, և խաղաղելոյ և մեծարելոյ զնմանէ.

Բայց ոստիկանին Յուսփայ յաւէտ խիթ չար թուեալ հատուածելն 'ի նմանէ թագաւորին Սմբատայ, և իմաստուն կորովութեամբ կշռեալ զգործ իւր, ջանահնար լինէր յինքն դարձեալ դարձուցանել, և միահաղորդ զնա առնել, որպէս երբեմն էր ընդ եղբօր նորա Աֆշինի: Եւ վասն զի նախ յամիրապետէն անտի հայցեալ առ ինքն ընդ Սմբատ դարձուցանել, և ոչ եղեւ ունկնդրութիւն նմա; և ոչ եհաս երազայոյս կարծեացն, այնուհետեւ ապա 'ի կարգս խռովութեան վարեալ եւ թիկունս դարձուցեալ, զօր բազում գումարէ; և չու յուղի անկեալ գայր հասանէր 'ի Փայտակարան քաղաք, և անտի եկեալ վաղվաղակի ընդ Ուտի գաւառ՝ գայ մինչեւ ցՏաշրատափ:

Զայս իբրև լսէր արքայ, զօրաց բազմաց 'ի միասին հորդան առեալ երթայր ունէր զկիրճսն և զնեղուցս պողոտայիցն կողմանցն Աշոցայ և Տաշրայ, ոչ տալ նմա թոյլ հետի աղագաւ անցանել: Իսկ սորա զայն տե-

նեալ Յուսփայ, գաղտաբար իմն զարեւմ-
տեայ կողմանն լերին պարառացեալ՝ ընդ-
ցածուն վայրս լերինն բարձանց անկանէր
յայսկոյս 'ի գաւառն Շիրակայ. և անդ ե-
րեկօթս արարեալ, փաղփաղակի ձեպեալ
հասանէ 'ի Դուինն քաղաք։ Իսկ արքայ իբր
յապագայս իմն իմացեալ զչուելն Յուսփայ
ընդ արեւմտեայ կողմն լերինն, թէպէտ և
հետամուտ էին զկնի, սակայն ոչ ժամանեալ
հասանել, գումարտակ չլինէր 'ի քաղաքա-
գլուխն Արուճ, 'ի ծործորս Արագած լե-
րինն։ Իսկ իբրև գիտաց ոստիկանն Յուսուփ
զկերպ առ նա լինելն արքայի, առաքէ զմի
'ի պատուականաց խորոց անտի 'ի քարտու-
ղարաց Արաբի ազգէ՝ եւ դենիւ քրիստո-
նեայ, յաւէտ իմն սիրալիր հեշտ և կամակ
և համբոյր պատգամօք. և բազում պա-
տուօք էր նախախնամութեամբ դաշինս
ուխտից ազդեալ 'ի միտս արքայի, և զամե-
նայն վախս և զձաղդայս 'ի բաց 'ի խորհրդոց
նորա տրոհեալ տարեալ, այլ և զսակն ար-
քունի 'ի կամս անձին նորա ըստ կարգի և
կամաց թողացուցեալ, միայն թէ ընդ նմա
յուխտ խաղաղութեան միաբան հարթ հա-
ւատար դարձցի։ Այս այնպիսի բարի լուրս
լուեալ բարեզգեաց բանի պատգամաց, և ա-

խորժեալ 'ի կամս իւր [1], արարեալ հրամենչ բանից հեշտականաց՝ փոխարէն պատասխանի հատուցանէ քարտուղարին 'ի բոլոր տագաւիս օրոց ընդ նմին աւկի . ապա յետակայ երդմանց միմեանց կնքեալ տային :

Իսկ արքայ դարձեալ չուէ գնայ 'ի գիւլուխ գաղաւթան Նրասխաձորոյ՝ 'ի գիւղն Նախճրաձոր , անդ ձմերեալ : Վասն զի սատիկանին կամ եղեւ զհիւսիսային դաշնաշունչ ժամանակ ձմերայինն ցրտոյն 'ի Դվինն անցուցանել : Եւ ապա յայնմ սառնաոյ յեղանակի գեղեցիկ իմն և բազում առ միմեանս բերէին հարկ յարմարութիւն սիրոյ առատ ձեռնածիւք ըստ պիտառութեան ձմերայնոյն : Իսկ անդ ապա Թագաւորն Վրաց Ներսեհ ըստ [2] պատուանէր պայմանի՝ և որընթաց տոկուք արագեալ 'ի տես արքայի Սմբատայ՝ առ 'ի միասին տօնախմբել զոր մեծի պատուքն Զատկին , յուղարկեցաւ յարքայէ բազմապաշխ և երևելի ընծայիւք : Իսկ արքայ Սմբատ չուէր գնայր յարքունական ապարանս իւր 'ի քաղաքագիւղն Շապգգաւորս :

Եւ իբրեւ 'ի բաց եղեւ ձմեռնայինն ձիւ-

(1) Մէ օրէ . 'ի կամսկս իւր . . . պատասխանի մատուցանէ :
(2) Յօրինուածն չէ ըստ , որ յաւելուն ըստ Մորոյն :

Նախաղաղ (1) սառնամանեաց ցրտութիւնն, և գարնանային հարաւահողմն շնչեաց՝ զանե-ղին փոփոխաբերեալ, ապա ոստիկանն Յուսուփ բազում երփիփարս օրանփարս սոսս և ահապա-րանոցս պատրաստեալ՝ բազմազան պճնա-յարմար զարդուք և զինուք ոսկեսանձ ոսկե-նկար պաճուճանօք, այլ և Թագ ևս յոսկւոյ տափերայ կազմեալ, և 'ի նմա յելուզեալ յե-ռեալ փարսակալ մարգարտասող տպաղոր-դութիւ. և այլ ևս ականս պատուականս, և բազում և երևելի զգեստս արքունականս ոսկեճամուկս և շղաշատեան հրաշանկարս, միանգամայն առաքէ 'ի պատիւ մեծարանաց արքային Սմբատայ: Այլ և Աշոտի երիցու-որդւոյ արքային նորանշան ինն պատիւ յար-դարեալ՝ իբր օդասպարհիկ իւր երիվար գեղե-ցիկ զարդուք և զինուք և պերճապաճոյճ երանգս զգեստուց, և կամար ականակապ ընդ մէջ ածեալ, և կացուցանէ զնա իշխան իշխանացս Հայոց: Նայց և ես ևս՝ որ զայս գրեցի, պատուեցայ պատուաւորաբար յոս-տիկանէն զգեստուք՝ ըստ օրինակի կարգիս. և ջորի պաճուճաւոր ոսկէզօծ զարդուք ա-ռաջի մատուցանելով ինձ: Իսկ արքայի խը-րախ լեալ 'ի բարեձիր պարգևս նորա, և

(1) Մի օր · ձիւնախաղաց:

ընկալեալ մեծաւ շնորհակալութեամբ, ոչ ա-
տակաւ ինչ քան թէ բազմամասնաբար յիւր-
մէն եւս նմա ընծայէր բարեվայելուչ և
չքնաղատես և երեւելի վարդս հանդերձա-
նաց, և նկարակերտ կազմուածս բազմակա-
նաց կարմրութեամբ որդանց, և ըմքակս և
նուագս. և կամար 'ի համակ ոսկւոյ՝ գործ
հռոմայական ճարտարաց, յերանգս գունակ
գունակ ականակւոյ, առաւել եւս տամկապա-
տոնկ յաւելուածով քան զմիանգամայն իսկ
ընկալեալն առ 'ի նմանէն։ Իսկ ապա յուղար-
կեալ Յուսուփ յորքայէ՝ գնայ 'ի կողմանս
Եգիպտոսականի։

Իսկ աշխարհիս Հայաստանեայց յաւուր-
սն յայնոսիկ այց արարեալ Տեառն, և պա-
տապարեալ և յաղթեալ 'ի բոլոր բարութիւ-
նս, բնակեցան իւրաքանչիւրոք 'ի ժառան-
գութիւնս իւրեանց. և սեփհականեալ զեր-
կիր՝ անկեալն այգիս, և արմատացուցին բու-
րաստանս ձիթենեաց և պարտիզաց. հեր-
կեցին հերկս արտաքոյ փշոց. և կթեցին
պտուղս հարիւրաւորս. զեղան շտեմարանք
ցորենոյ 'ի ժամանակի լրութեան հնձոց.
լցան գուբք գինւոյ 'ի կութս այգեստա-
նեայց. և լերինք զքնծութիւն զգեցան, զի
բազմացան 'ի նմա արօտականք անդեայք ա-

Ջառոց և հօտք ոչխարաց ։ Եւ գլխաւոր նա֊
խարարք մեր յապահովացեալք և հանգու֊
ցեալք 'ի հինից ասպատակաց, չմնէին եկե֊
ցիս վիմարդս հաստահեղոյս ձուլեալ կրով՝ 'ի
մենաստանս և յաւանս և յագարակս ։ Բայց
առաւել եւս քան զայլովս հոյակապանցն գը֊
րոհի իշխանն Գրիգոր, և նորին եղբարք Սա֊
հակ և Վասակ, որք հայրենական սեփհա֊
կանութեամբ տիրէին գաւառացն, որք շըր֊
ջապատեալ կան շուրջ զեզերբ ծովակին Գե֊
ղամայ ։ Եւ այսպէս վիճակ ցանկալի լի պըտ֊
ղատածօղ արգասիւք պարարտութբ առ֊
հանդորակ ամենեցուն տուաւ ձրի նորին շը֊
նորհօքն Աստուծոյ. և ի նորին (1) յարմար կազ֊
մածոյ. 'ի տանէ Տեառն բղխէր աղբիւր բա֊
րեաց ըստ մարգարէին, և ոռոգանէր զձորն
վիճակաց ։ Ի վերայ այսոցիկ բարեբաստու֊
թեանց՝ Թագաւորն Հոռոմոց Լեւոն ոչ
ինչ սակաւ նախախնամէր զարքայս Սմբատ
իբրեւ զորդի սիրելի, անքակութեամբ ընդ֊
նմա բերելով ուխտ միաբանական սիրոյ, և
բազում ընծայս և պարգեւս և պատիւս ամ
յամէ առաքէր ։ Իսկ և Սմբատ 'ի շնորհակա֊
լութիւն բարերարութեան արքային Հոռո֊
մոց, առատաձիր պարգեւօք հատուցանէր

(1) Ոմանք. և նորին յարմար կազմածոյ 'ի տանէ ։

պղտորձ փոխարինին տասնապատիկ յաւե-
լուածով․ իբրեւ մեհագունի քան զինքն
և հօր հարազատի։

## ԳԼՈՒԽ ԽԱ.

Յաղագս պատերազմին Կոստանդեայ Եգերացւոց ար-
քային և ըմբռնման նորին, և ապերախտութեան Եղիներղեայ
ընդ Սմբատայ։

Զայսու ժամանակաւ թագաւորն Եգե-
րացւոց Կոստանդին յայլանդակ բարս
զմտեալս դաւաճանեալ, և ոչ անկարծեաց
զանչս յուզղութիւն՝ քան թէ ՚ի խորհուրդս
չարութեան, զօրս գումարէ, խաղայ չուէ
գնայ զհիւսիսային կողմանքն որ ՚ի ծործորակե-
րինն Կովկասու, միանգամայն իսկ և յաշ-
խարհն Դուզարացւոց, և որք մերձ ՚ի դը-
րունս Ալանաց բնակեալ.ք են՝ զի ընդ իւ-
րեւ ձեռամբ զնոսա նուաճեսցէ։ Այլ վասն
զի ազգքն այնոքիկ հաւանեալ.ք և հնազան-
դեալ.ք և նուաճեալ.ք էին ընդ ձեռամբ ար-
քային Սմբատայ, գրէ առա թագաւորն
Վրաց Կոստանդեան վաղ ընդ փոյթ առ թա-

գաւորն Եգերացւոց, վասն զի փեսայ նորա էր. ցրել 'ի բաց քակել և կորուսանել 'ի սրտէ զընդունայն և զապիրատ և զմոլոր խորհուրդն, և ոչ շամբուշ մտօք ընդ վեհսն քան զինքն հակառակել: Իսկ իբրեւ լսելիք խցան նորա, և բանից ունկնդրութիւն հեռացաւ, և ոչ բերաւ 'ի խորհուրդս իմաստութեան, ապա արքայ Սմբատ զօրու բազմի գունդ իմն 'ի միասին տուեալ, և ընդ իւր եւս առեալ զԹագաւորն Վրաց, գնացին 'ի միասին հրոսակ ընդ առաջ Կոստանդնի: Նա իբրև ետես թէ ոչ կարէ ընդդէմ նոցա կալ. ընդ կրունկն յամրոց վայրս ինչ դարձեալ որջանոյ՝ հայցեալ 'ի նմանէ զհաշտութիւն: Իսկ արքայ զանէր նորա Ատրներսեհ և զոմանս եւս յիւրոց նախարարաց առաքէ խօսել ընդ նմա 'ի խաղաղութիւն. որք իբրեւ 'ի հանդէս(1) միմեանց բերան, և դեգերեցան 'ի բանս ինչ. յանկարծակի ըստ հրամանի Ատրներսեհի նախարարք արքայի ձերբակալ արարեալ զԹագաւորն Եգերացւոց՝ ածեն առաջի իբրև զուլ մի յայծեաց, զայն՝ որ իբրեւ զառիւծ 'ի մորւոյ խուժէ ելեալ, վարանէր վանել վարատել զազգս: Իսկ արքայն Սմբատայ բա-

(1) Երկու օր. հանդէպ:

դուռն ամրոցս յինքն գրաւեալ 'ի Վուրի աշխարհի, և կուսակալս կողմանց այնոցիկ կացուցեալ, առեալ զեգերացին Կոստանդին ընդ. իւր ածէ, 'ի դխպահոջ կացուցեալ քամուրն Անի երկաթի շղթայիւք. սակայն ոչ քամահանօք ինչ, այլ կրկին պատուով առատացուցեալ 'նմա զամենայն հանդերձանս, և ռոճիկս ալիտոյից ըստ անդաստին բարեբարոյ մտաց իւրոց: Եւ այնպէս ապա ամիսս չորս միայն զնա պահէր յարգելանի բանտին.

Իսկ իբրեւ ետես զերկպառակութիւն Եգերացւոցն, որք շէշտակի ձեղքեալ, և թէ հանդերձեալ են զայլ ոմն բռնաւորագոյն քան զԿոստանդին կացուցանել իւրեանց թագաւոր, ստուգագէտ իմացեալ ոչինչ զանդիտէր փութանակի զնա արձակել, և հաստատել 'ի կարգս առաջնոյ տէրութեան իւրոյ: Մի՛ վասն զի փեսայացեալ էր նա թագաւորին Վրաց, իբր 'ի շնորհակալուս զայս 'նմա առնէր. և երկրորդ՝ զի թերեւս իբրեւ զձեռնասուն իւր, յայնմ հետէ նա գտցի 'ի սակի հնազանդութեան՝ յաղագս առ 'նա անցուցանելոյ զբազում երախտեացն տեսակս: Եւ ապա զգեստաւորէ զնա թագաւորական զգեստու, և դնէ խոյր ոսկի ընդելուզեալ մարգարտով 'ի գլուխ նորա, և

անկանակուռ ոսկի կամար ածէ ընդ մէջ նորա։ Եւ այլ ինն վայելուչ կազմուածս ըստ ուղեւորութեան պիտոյից նմա յարդարէր, և զօր 'ի ձեռս նորա գումարեալ՝ առաքէ զնա. յաշխարհ տէրութեան իւրոյ։ Եւ իբրեւ չոգաւ հաստատեցաւ, և միաւորեաց զիւր սեպհական տէրութիւնն, 'ի բազում հնազանդութի և մանրամասնական ծառայութիւն համախոհութե զինքն արքային Սմբատայ բերէր՝ սակս հայրաբուն նախախնամութեան նորա առ նա, հեշտ և քաղձալի զայն իւր վարկեալ։

Բայց Թագաւորն Վրաց յաւէտս իմն ըղջարեալ վասն արձակմանն Կոստանդնի, իբր 'ի պատճառս հակառակութեան կամ մարտից և Թշնամութեան (1) զայն գործեալ, և յայնմհետէ և անդր աննախանձ (2) պարգեւատուին իւրում Սմբատայ 'ի դրդռութի մարակաց զինէր, Թէպէտ և ոչ յայտնի։ Իսկ Սմբատայ զարմացեալ ընդ Թերի խորհուրդս նորա, ոչ 'ի բանի ունէր զնորայն կառավարութիւն կամաց որ 'ի չարն, այլ միշտ զինքն յաղթանակէր 'ի սէր նորա, վասն զի ոչ բերիւր յիմաստս նորա խռովասէր միտքն։

(1) Ի Վիեն. օրի. չէ՝ կամ մարտից և Թշնամութեան։

(2) Երեք օրի. նա նախանձ։ Մի օրի. նախանձ, երկու բառ խնամոքին.

# ԳԼՈՒԽ ԽԲ.

Յաղագս չարաբնեան Հասանայ և Մարդպետունւոյն ընդդէմ Աշոտոյ արքային՝ առ ՚ի սպանանել զնա:

Իսկ ոստիկանն Յուսուփ զայսու ժամանակաւ յապստամբութիւն զինքն զինեալ ընդդէմ ամիրապետին մեծի. ոչ սակաւ ինչ գործէր նախճիրս ընդդէմ նորա, ՚ի բաց լքեալ և ընկեցեալ և ՚ի կոխումն գարշացուցեալ զհրաման արքունի: Որում իրազգաց իսկ ամիրապետին գոլով, վաղվաղակի հրովարտակս և դեսպանս յղէ ընդ բոլոր ծագս երկրի իւրոյ տէրութեանն, և վրէժխնդրութիւն յարուցանել Յուսփայ անիրաւ ապստամբին: Ըստ սմին այսմ սակի ապա և առ արքայ Աշոտ յղէ զոմն պատուական քարտուղար իւր անշուշտ հրովարտակաւ, զի և նա եւս միջամուխ լիցի զօրու բազմաւ երթալ ՚ի վրէժխնդրութիւն Յուսփայ, և խոստացեալ եւս թողուլ նմա զամի միոյ զսակն արքունի: Իսկ թագաւորն թէպէտ և յաւէտ դժկամակ այսմիկ գտաւ վասն դաշանց սիրոյն՝ որ ընդ Յուսփայ եդեալ էր, սակայն ոչ կարացեալ մերժել լքանել ՚ի բաց զարքունական հրամանն, ակամայ առ

ակամնէ քարտուղարի, զոր գումարէ, գունդ կազմէ, 'ի զէնս և 'ի զարդս պատրաստէ զամենեսեան, տուեալ զինքն քան զյոգունս ցուցեալ 'ի վրէժխնդրութիւն ապստամբին. և արս իբրեւ հազար մի՝ որպէս թէ թուեցուցանէր կարապետ առաջի իւր առաքեալ ընդ կողմն Վասպուրականի ընդ այն չուելոյ:

Եւ իբրեւ գնայր 'ի նմանէ քարտուղարըն, ապա արքայ հրովարտակ 'ի ծածուկ առաքէ ոստիկանին Յուսիփայ, իբր թէ 'ի թիկունս օգնականութեան նմա պայն զոր գումարեալ, և ոչ 'ի պատճառս թշնամութեան ինչ ընդ նմա բերեալ: Իսկ ոստիկանն թէպէտ և յընթեռնուլն զհրովարտակն անսայր բանիցն, սակայն 'ի սադրելոյ սպրդող չար լեզուաց՝ հակամէտ 'ի չարն բերէր. և դարձեալ իբրեւ յամուր որջս 'ի չար խորհուրդս իւր բուռնեալ հին վիշապն, խնդրէր ժամ դիպող թափել զթոյնս յարքայն և 'ի նուաճեալս նորա. ապականել, քանդել, հրդեհել, ճարակ սրոյ զամենեսեան տալ: Բայց ոչ կամեցեալ յայտնել առ ժամայն զչարութիւնն, գրէ պատասխանի նամակին՝ որ 'ի վերայ ունէր զաւետիս կենաց, և 'ի ներքոյ զգաստութիւն մահու: Յետ այսորիկ ապա հաւանական միտս Յուսիփայ իւր սնուցեալ,

եւ 'ի հարթայարմար հնազանդութիւն ամիրապետին բերեալ, զպետութիւն կալուածոց նորա դարձեալ առ նա նուաճել տայր։ Եւ այնուհետեւ ապա յերկոցունց կողմանց՝ յամիրապետէն անտի եւ Յունաց ոստիկանէն բան պատգամաց առ արքայ սաստկանայր կրկին ուժգնապէս հայցեալ տալ ըզսակն արքունի, այլ եւ զանուր լծոյ ծառայութեանն ծանրաբեռն գրեալ։

Իսկ Սմբատ, վասն զի բռնազօրութեանն զդէմ չկարէր ունել, եւ զոճիրս վնասուցն առ 'ի նոցանէն առձեռն պատրաստ տեսանէր, ելս 'ի մահ դնէ՝ զի թէ զմիոյ ամի զսակն լնուլ բաւականացի, եւ զամենայնոց չարութեանն առ ժամայն արտաքս արտահեալ, զապագայն ապա այցելութիւնն Աստուծոյ հոգացի ըստ նախախնամող զօրութեանն իւրոյ։ Եւ սոյա ընդ բոլոր աշխարհս տէրութեան իւրոյ հինգերորդել հրամայէ զամենայն երամակս ձիոց, եւ զանդեայս արջառոց, եւ զհօտս ոչխարաց, եւ տալ 'ի զրադատուգանս սակին. 'ի միոյ իւր զայս միայն զետեղեալ բերեալ, զի թէ միայն յարքունուստ խաղաղութիւն գտցի, չարիքն դիւրաւ դադարուստ անձանց մարթի վճարել։ Իսկ եթէ 'ի բաց տարեալ տրոհի խաղաղու-

թիւնն , և ոչ 'ի հնգին եւս միանգամայն զանեղի առեալ պիտառացի ինչ կցորդութիւն կենաց մարդկան . և զայս ապա առաջարեալ , զմեծար առնոյր այնմ' ամին ասակ : Իսկ այսորիկ ապա յաջս նախարարացն աշխարհի յաւէտ իմն ծանր համարեալ թուէր , զանգիտացեալ ողխառնաքար զառ 'ի յառաջայն' որ գալոցն էր ձաղանս և ձաղկանս :

Նաև ումն 'ի պատուական նախարարաց անտի' Հասան անուն , որ իշխան և հրամանատար էր բոլոր տէրութեանն աշխարհի , և չէր ոք բնաւ որ ընդ ձեռն (1) նորա իշխէր ելանել , այլ և ինքն իսկ թագաւորն միշտ բանի բերանոյ նորա անսայր լսել . սա ապա զՍքիասոփայն կրելով կիրս չարի , և զձախող և զանառողջական իրաց բուռն հարեալ . զապա- նութեան խորհուրդ խորհէր աշխարհի . եւ չար անձրաւեալ 'ի մէջ արկեալ' քակէր յարքայն զօրանս , և յայլոց եւս նախարարացն Վանանդացեաց և Հաւունեաց զհամազ- գիս իւր զգլխաւորս' իբրեւ առ Հնգեւսա- անն : Նա յետ կործանման կեղծաւորութեն բերելեաղ բանս ծածուկս ընդ թագաւորին Վրաց , հաստատէին սպանանել զՍեկուա , և փոխանակ նորա զնա կացուցանել հրամա-

(1) Այլ օրինակն որ . անձին' որ զձեռն :

նատար Հայաստանեայցս, միայն թէ ընդ-
նոսա 'ի գործ չարի մատանցն բերցի ։ Իսկ
նոքա 'ի նոցանէ փաղփաղուկի հրապուրեալ,
այնուհետեւ համագունոդ միջամուխ լինէին
'ի բանս սպանութեան արքային ։ Եւ այս
զօրն Հաւնունի՝ զանէր Հասանայ, որ միա-
բանեալ էր 'ի չար խորհուրդս նոցա, քաջա-
լերեալ յուղարկէին 'ի սպանումն արքային.
Եւ զայլ եւս համախորհուրդս ընդ նմա միա-
բանեալս. որք երթեալ չուեալ 'ի պատճա-
ռըս ծառայութեան արքայի, եւ իբրեւ ընդ-
դրուանս զխաւարայինն խորհուրդս ծած-
կեալ՝ խնդրէին ժամ դիպող ։

Իսկ Թագաւորն Վռամ, եւ երկրորդն Ա-
քիտոփէլ Հասանն, եւ այլ եւս միաբանեալքն
ընդ նոսա իբրեւ հասին յայն օր պայմանին՝
զոր վասն խողխողմանն արքայի եդեալ էին
ընդ Հաւնունոյն զօր առաքեցին, եւ կար-
ծէին կարել կարկատել ինչ զգլուխ սպանմանն,
այլ մղձկեալ սրտիցն ոչ ժուժկալեալք՝ շտապով
տագնապաւ եղանէին զօրու բազմաւ 'ի կող-
մանս գաւառին Շիրակայ ։ Եւ իսկ եւ իսկ ա-
պա Հասանն տայր զամրոցն Անւոյ 'ի ձեռն
Աշոտերանհի, եւ ինքեանք արձանացեալք
դադարէին յարքունական ապարանսն Եւ-
րազդաւորից, վասն զի արքայ Սմբատ էր 'ի

տակ սովորական ծառայութեանն , մինչեւ սպառասպուռ մերկացաւ չքաւորութիւն նորա ։

Իսկ արդ՝ իբրեւ բացաւ պատրուակն , զեկուցաւ մեզ մամանումն եւ սպառնութիւն փշրումն գազանի Հագարացւոյն , ըստ բարբառականն (1) կամեցողի արքայիս Սմբատայ , եւ այլոց եւս նախարարացն սադրելոց , դէմ եդեալ ես տարադէմ գնացի 'ի Պարսս Ատրպատականին առ ոստիկանն դաւանացող , ընծայիւք եւ պատարագօք բազմօք յորդունք թանգարանաց , երեւելի ամենածանուկ ըզգեստիւք , եւ 'ի նկարակերպ կանանց ոստայնանկութեանց բազում բազմականս կազմեալ , եւ բազում ձիս եւ ջորիս 'ի զարդս եւ 'ի զէնս յարդարեալ , այլ եւ գանձս ոսկւոյ եւ արծաթոյ ։ Ոչ միայն զայսոսիկ , այլ եւ 'ի տանէ սրբարանաց մերոց ըստ ձեռին բաւականի ընդ իս առեալ տանէի նմա 'ի նպաստ օգնութեան , զի թերեւս նախ քան զզինումն թագին նորա եւ զհաստատումն քարանց եկեղեցւոյ սրբոյ եւ զկորստական գերչութի ժողովրդեանց Քրիստոսի , մարթասցից հնարս աղաչս ինչ խաղաղութեան առ 'ի նմանէ գըտանել , զի մի սպառասպուռ մայր Սիոն ըստ նմանութեան մօր անզաւակացեալ յորդւոց

(1) Ըմնր , ընդ. բարբարականն ։

նէն ընկալեալ զպարտոն պատուին պայմանի դատնոյ անդրէն՝ հրաւիրակ յոստիկանէն առաքեալ. եղբօրն իւրում գալ առ նա ։ Իսկ յետ ամսոց ինչ ապա գայ հասանէ Թագաւորն Գագիկ ըստ խոստմանն բանիցն և ըղձիւքն կատարեալ, և ըստ վարժից իւրն և հրահանգաց կրթութեան զպարտս մանկական ատլլին մ՚ծարեալ, և 'ի լիապատար թագաւորանաց իւրն նմա ընծայաբերեալ, ամենայն պատուական բանի խորհրդոց նոցա առիմեալ այս և եթ պատմէր, հորդել յարդարեալ զնա ճանապարհին 'ի Հայս, և առհասարակ զերերաց զվրէժ խնդրել յարքայէն Ամիրայից ։ Ոչ խնայեալ եթէ հուր հրդեհեալ յոր կողմ և կայէ վնիւթ լուցեալ զըտանելոյ՝ անհաշտաբար ճարակել յայրել և յապականել. և ապա կրկին Թագաւոր առ 'ի նմանէ. պատուեալ, և այլ ևս պատուասիրութե մեծարեալ դառնայ՝ հանդերձեալ զնիւթն 'ի կարապետութիւն գաղտնեաց ոստիկանին 'ի Հայս ։ Նայց ես անհնարին ոց իւն 'ի դառնուստ Թագաւորին Գագկայ լինէր, զի Թերեւս 'ի սադրելոյ նորա լուծանիցի խնդ 'ի կապարանէն լինիցի, որպէս և չքմեղանէ ակաւն պատրանն. ապահանձէ. այլ անձնիշխանութեան ոչ հանդուրժեաց. այլ ևս չարաչար ըստ մեղաց լինոց կալեցաւ ։

Իսկ իբրեւ գարնանային հարաւահողմն զձմերայնոյն ժամանակ ցրտութեանն 'ի բաց մերկանայր, ապա ոստիկանն գումարտակ զօրու բազմի կազմեալ, չուեալ խաղայ գայ համանէ յաշխարհս մեր անհաշտ խռովութեամբ սրտին մռմռեալ, զկնի իւր և զիւր կապանօք տանելով։ Եւ ապա զիճեալ հասեալ 'ի Նախիջաւան քաղաք, և անդ առ սուրս ինչ զետեղեալ, մինչեւ կարապետացն հրաւիրեալքն՝ Գագիկ և Գուրգէն զայլն համանեին, և գունդք գունդք լինէին։ Եւ զայն զօրէն իմն հրոսակաց ղեկէ եղանէ նախ զկողմանքն Սիւնեաց աշխարհին։ Իսկ գահերէց գլխաւոր իշխանն Սիւնեաց համազգուն եղբարբքն իւրով և համազգունով զօրօք ամրացեալ ունէին զամուրս մայրից, և զկիրճս ճանապարհացն արքականն քաջութեամբ ըստ հզօրակաց անուանակիր հռչակութեանն. զէն 'ի վէր առեալ, առնազէն վառեալ, և զառապարս թաւալգլոր խաղացուցանէին։ Նոյն վասն զի այցելութիւնն Աստուծոյ անտես արար զնոսա, ոչ զօրէցին զօրաւոր կատարութեանցն թշնամեաց հերքել զնոսա, այլ փախուստեայ յամուրս քարանձաւաց և 'ի ծործորս ձորանց բարձանց անկանէին։ Իսկ անօրէնն ընդ կրունկն 'ի նոցանէ դարձեալ, զա-

ըլս միանգամ (1) գտանէր յաշխարհէն փա-խըստէից տեռապերծեալ և մնացեալ յետ-կոյս , զոմանս Ճարակ որոց տայրն , և զայլս ամանս 'ի գերութիւն վտարանդեալ ։ Եւ այս լինէր յաւուրս տօնի մեծի պասեքի ․ Օտա-կաց , և յերեքհարիւրորդի յիսներորդի ու-թերորդի չրջագայութեան թուականս հա-մարոյ ։

Իսկ ոստիկանն իբրև աւուրս երկոտա-սան անդր երեկօթս արարեալ , անցեալ գը-նայր զարեւելից հիւսիսով 'ի մայրաքաղաքն Դվին ։ Եւ անդ տայս զեօտղ առեալ յեզր գետոյն Երասխայ , փախփաղակի գայր հասա-նէր առ նա տէրն Սիւնեաց Սուփան , անձ-նատուր լինելով 'ի սպասաւորութիւն ոստի-կանին ։ Ընդ որ յաւէտ իմն սխրացեալ , եւս քան զեւս զօրանայր 'ի գրգռութիւն չարու-թեան ընդ արքայի ։ Եւ տայս 'ի խաբէու-թիւն մտաց զինքն զինեալ , առաքէ առ ար-քայ Սմբատ , զի թէ բոլորապէս զհարկ ա-մին հատուցէ նմա , զխաղաղութեան պայ-մանս անշուշտ նմա պարգեւեալ՝ անցեալ գը-նասցէ ։ Իսկ նա թէպէտ և գիտէր ոչ ուղախ լինել 'ի բանս պատգամաց խաւարասէր թըշ-նամւոյն , սակայն 'ի մեղադրութենէ աա-

(1) Օրին. ոմն · միանգամայն ։

տուածայնոց և մարդկայնոցս արտաքս ըլին-
քըն որցեալ(1), տայր փաղփաղակի զխնդիրն՝
իբրեւ կշիռս վաւերութեան հազար դահեկանաց.
զոր իբրեւ առընկալաւ, իսկ և իսկ գնեա
երթեալ ձեպէր Սմբատայ մինչեւ յաշխարհ
Սրաց տարեալ մեկեալ հանեալ զնա, մինչև
անկանէր մերձ յանմատչելի ամուրսն Կկա-
ջաց: Իսկ զնա արգելեալ ՚ի քաղաքն Պէլին
՚ի մետաղս բանտից և երկաթի կապարա-
նաց(2), կրեցի այնուհետեւ ՚ի դահճաց ան-
տի մահահոտ բիծս լուտանօք գանս և բան-
տիս և գելարանս և արգելարանս ՚ի խաւարա-
չըտին տեղւոջ և յանձուկ վայրս. այլև ՚ի
միրասս և ՚ի միհս խորոց ընկեցայ սաստիկ
և զառն կատանօք: Նա պահապանացն աստ-
տիկ աղաղակն և ձուչն դատարիւն՝ միշտ ան-
հեռացեալ հատանէր ՚ի լսելեաց իմոց յերե-
կոյէ մինչեւ ցառաւօտն, և սակս այնորիկ
բարձեալ էր յինէն նինջ արտեւանաց և
հանգիստ թրանաց իմոց.

(1) Այլ օր. ալյացեալ:
(2) Երկու օր. կապանաց:



## ԳԼՈՒԽ ԽԴ.

Յաղագս անձնատուր լինելոյ Յուսփայ Աշոտի սպարապետի, և ազատութեան Յովհաննու կաթողիկոսի։

Իսկ ոստիկանն Յուսուփ 'ի բերդ Երնջակս ամրապայնոյն իբրեւ զանգստացեալ առիւծ մռնչեալ, և յորս զենքն Սմբատայ պատրաստեալ, այնպէս 'ի բազում աւուրս գեգերէր ։ Սակայն ոչ կարացեալ ամանել ինչ նմա յայնմ նուագի, մանա 'ի լերինն բարձունս ամրանայյն և 'ի խարասփիտ հորս և յամուրս քարանձաւաց, ապա չուէ գայ դարձեալ 'ի Դուին քաղաք ։ Անդ ապա քնդտուաջ եկեալ հասեալ լինէր նմա չքնաղագեղ և առատամիտ և առատաձեռն 'ի պարգեւս բաշխող սպարապետն Հայոց Աշոտ եղբօր որդի արքային Սմբատայ, ինքնակամ դիմագրաւ երթեալ հասեալ անձնատուր լեալ, և 'ի հնազանդութիւն Հագարացւոցն մտեալ. Թերեւս զենսա առեալ նորա զխարթամաչնորհն Յուսուփ (1), զի գոնէ թէ մենա եւս ընդ նորուն առկի գուցէ շնորհս առաջի երկրորդն փառաւոնի, և նմանաբար դարձուցանել բաւեւյէ 'ի բարիս զքայրս նա-

(1) Չոր. օր. Յովսէփ ։

տափկանին չարի՝ ընդ ազնիւ գրոհի տան իւրոյ- կամ թէ ըստ անրջից տեսութեան՝ թերեւս սատացի ձեռն բաւական շտեմարանել զխոր- հրդական ցորեանն ընդդէմ սաստկացեալ սովոյն՝ առ 'ի յապրուստ կենցաղական կար- գաց նորա Եգիպտոսի, 'ի ռամկական կորստենէ անտի որ հանդերձեալն էր լինել։ Բայց իբրեւ եւտես զհանգարացին զայն Փարաւոն՝ որ ոչ- գիտէր զՅովսէփ, եւ 'ի մտի առնոյր զհնարս մայցողութեան նորա զխորհուրդ՝ առ 'ի չար- չարել զազգս մեր, եւ զոր խնդրէր նա՝ այնմ ոչ եհաս, զանգիտեալ այնուհետեւ 'ի մա- խացող խորամանկութենէ բռնաւորին, մի- անգամայն իսկ եւ 'ի մահուն երկիւղէ, եւ ոչ ինչ եւս այլազգս հաստուածի գտանել մարթա- ցեալ. այնուհետեւ ակամայ կամօք հարկե- ցաւ ամենայն իրօք բերել 'ի կամս տափկա- նին՝ արդեամբք եւ խորհրդովք եւ բանիւ մեր- ձաւորութեամբ, զկնի ընթացաբար բե- րեալ հետեւել 'ի կատարելութիւն կամաց նորա. սակայն եւ այնպէս ոչ կարէ լքակա- տար լինել յանգուցանել զվստահութիւն սրտի սաղաղ եւ մտաւի խաբեբային։

Իսկ տափկանն առկայացեալ ողջանայր 'ի Դուլին, զգառնաշունչ եղանակս ձմերայնոյն 'ի նմա անցուցանել։ Իսկ ապա այնուհետեւ

հարկեցայ ես խնդրել ելս հրաման թողութեան յասպականէն, որպէս ունն երբեմն 'ի սանդարամետէն Պրոզերպինայ. և այս ոչ թերեւս 'ի զանգիտելոյ յառժամանակեայ մահուանէն որ ըստ Աստուծոյ, այլ վասն զի սակս ոսկւոյ տնօրինէր, և 'ի բազմաց օգնականութենէ բազում հատուցեալ էի զգրադատ գանձուց պարտատպանութիւն, և այլ ոչ եւս ունէին բնաւ ձեռն թաւականս 'ի հատուցանել ինչ, և ոչ ոք էր որ օգնէր ինձ, սակս այնորիկ յայս ածայ: Եւ վերին օգնականութիւնն արտաքս զիս առ 'ի նմանէ կորղեաց, որոյ ձեռք իւր լի էր արեամբ, և սակս ահի ծանր սրտին Փարաւօնի փախեայ ըստ Մովսէսի 'ի Մադիամ, և յերկրորդն Յեզաբէլայ ըստ Եղիայի՝ 'ի Սարեփթա Սիդոնեան: Եւ վասն զի չարացն գերչայ չար հէնք դեռեւս սատրկապէս մնծեալ ունէր զաշխարհս մեր, սակս այնորիկ և ես ըստ տէրունեան հրամանի հալածեալ չրջեցայ 'ի քաղաքէ 'ի քաղաք 'ի կողմանս արեւելեայ Աղուանից, առ մեծ իշխանն Սահակ երթեալ, և առ թագաւորն Խոցունց Ներսեհ՝ որ ըստ արեւելից հիւսիսոյ Կովկասու, զի և նոքա 'ի ժողովրդենէ մերմէ և խաշն արօտի (1) մերոյ

(1) Մի օր. յարօտէ:

էին․ և 'ի նոցանէն ոչինչ սակաւ ծախս ուղ-
կաց ըստ իւրաքանչիւրումն սակս կարգէք
մեզ պարտապանաբար՝ վճարելով զպէտս ա-
մենեցունց ։ Եւ անտի ելեալ գնացաք 'ի
կողմանս Գուգարացւոց․ և անդ բնակեցաք՝
ակն ունելով փրկութեան մերոյ 'ի Տեառնէ ։



## ԳԼՈՒԽ ԽԵ․

Յաղագս յաջորդութեանն Աշոտոյ և Սմբատայ արքայ-
որդւոյ․ և նենգաւորութեանն Սեւորդւոյ, և ըմբռ-
նման Սմբատայ ։

Բայց իբրեւ եկն ոստիկանն 'ի Դուին,
ապա և արքայ Սմբատ դարձեալ 'ի փախս-
տէութենէ իւրմէ՝ գայ 'ի սեփհական կա-
լուածս տէրութեան իւրոյ' Յիրազգաւորս ։
Իսկ իբրեւ դրունք գարնայնոյն բացան, և
աւուրքն ջերմանք զտեղի փոխաբերեցին, ա-
պա ոստիկանն գունդս զօրաց բազմաց պատ-
րաստեալ, իբր հրոսակս իմն արքային Սմբա-
տայ՝ տայ 'ի ձեռս Թագաւորին Գագկայ,
և յայլ եւս իւրոց նախարարացն․ և գաղտա-
կծութեամբ իմն առաքէ դաւողս 'ի վերայ
նորա ։ Իսկ Սմբատայ զգացուցեալ ումանց

զզիրժող դաւաճանութիւնն , ապա և նա ևս տագնապով (1) ստիպեալ գումարէ զօրս բազումս , և տայ 'ի ձեռս Աշոտոյ և Մուշեղայ որդւոց իւրոց , և հրամայէ զգուշանալ 'ի ճանապարհացն ։ Իսկ նոցա չուեալ հասեալ 'ի Նիգ գաւառ , տեսին զի ճամբար Այլազգեացն բունեալ դադարեալ էր 'ի հովիտս հարթայատակ վայրի միոջ՝ առ ստորոտով լերինն . ընդ որոյ և Թագաւորն ևս Գագիկ ։ Որդ՝ իբրեւ այն այնպէս իմն նոցա 'ի դիմի հարկանէին ակամայ կամօք , ապա 'ի մարտ պատրաստեցան ոչ գիտելով զնենգութիւն զօրաց իւրոց բնակչաց Սեւտի գաւառի , որք են Սեւորդիք ։ Ընդ ապա Աշոտ և Մուշեղ նախ իմքեանք իսկ անցեալ յասպարիսի՝ շահատակեալ առաքինանային , և բազմահանդէս քաջութեամբ հատեալ ըղռազմ պարու նոցա՝ զմիմեամբք արկանէին ։ Իսկ իբրեւ խոր խոյեցաւ պատերազմն , և տապատակն խառն ընդ միմեանս հարան , յանկարծակի ապա զօրքն Սեւտեացի ընդ կըրունկն դարձեալ՝ ըստ նենգապատիր խորհրդոցն անդառնալի զնոյնին 'ի կամս անձանց ։ Իսկ վասն զի յայնմ կողմանէ զօրուն էր Աշոտ , յակամայ հարկեցաւ ընդ նոսին

(1) Եղեւ օրէ . տագնապելով ։

դառնալ յետս կոյս, զի ապաստան Այլազ-
գեացն զօրացեալ սատանայականն: Իսկ Մու-
շեղ 'ի մէջ Թշնամեացն անկեալ՝ բազում ան-
հընարքն քաջութիւնս ցուցանէր, մինչ 'ի
զարմացումն զամենեսեան ածեալ. սակայն
մենամարտութեամբն ոչ կարացեալ դիմա-
կաց լինել բազմութեանն, ձերբակալ զնա
արարեալ տանէին առ ոստիկանն: Իսկ նորա
զուարթացեալ զուարճացեալ ընդ ըմբռ-
նումն Թագաւորազուն մանկանն Մուշեղայ,
խրախուսութիւնս բազումս յարդարէր զօրաց
իւրոց: Եւ յայնմհետէ ապա նիւթ հրա-
բորբոք դառնութեան մտաց գտեալ զայն-
պիսի յաղթութիւն, հրավիզութիւնս բա-
զումս սփռեալ տարածանէր ընդ ոլորտս եր-
կրի մերոյ. և 'ի միջօրէի խորև 'ի գիշերի մութ
և մէգ և մառախուղ և խաւար աղջամղջին
պատեալ պաշարէր զԱսքանազեանս ազն. և
'ի լծակս կշռոց եդեալ զերկունս տագնապ
տարակուսանաց, հակամիտեալ կուտեալ
դատանէին 'ի վերայ մեր ծանրատաղտուկ ա-
նուր Հագարու՝ առաւել քան զքարինս
ձորոյն Նաքովրայ. վասն զի նեղք հինից և
տէգք Տեառն տեղացին 'ի վերայ մեր: Քան-
զի արմատ դառնութեանն՝ զոր երբեմն խլե-
լեաց Տէր 'ի տանէս Թորգոմայ, կրկին շա-

ռաւիղեալ անկեցաւ յիմանալի յայգեստանս մեր՝ 'ի փշալեղց մնացաւս վերընծիւղեալ յեղծումն և յապականութիւն ։

Եւ այսուհետեւ ահա սիրտ իմ տանջեալ տագնապի տարակուսանօք, և հաշեալ(1) մաշի փոր իմ 'ի լալոյ. զի յանօրէնութեանց մերոց այցելութիւն Տեառն անտես արար զմեզ, և 'ի սեւաձայր տխրութենէ (2) գործոց մերոց՝ խեթիւ հայեցաւ 'ի մեզ արեգակն Աշխարհիս, և մատնեցաք 'ի ձեռս ծանրապատի երկրորդն Փարաւոնի եւ դառն գործավարաց նորա, որք առաւել եւս քան զանուր կաւախաղաղ աղիւսագործութեն՝ մերս 'ի վերայ եդեալ՝ կործանեցին զմեզ անհնարին հարուածովք 'ի վերայ հարուածոց ։ Վասն զի իբրեւ զհիրիկ հողմոյ շնչեալ 'ի մեզ մահառիթ իսմայելեան օդն դառնաշունչ, և ըստ նմանութեան փոշւոյ պտուտաբար ցնդեալ՝ 'ի բաց զմեզ տարագրեաց 'ի մեր բնակութենէ. և ըստ սաստկութեան ուղխից յորձանաց հեղեղեալ ողողեալ՝ արբոյց զհողի յիմարութեան առհասարակ, իբրեւ զոչխար 'ի սպանդ զմեզ վարատեալ ։ Եւ արդ՝ սակս այսորիկ որ յիմումն շտեմարանի մնայցս է տեսութիւն

(1) Մէ օր. հալեալ ։ (2) Մէ օր. տխրութեան ։

չարժութեան, շլացեալ և ունայնացեալ
ոչ բաւէ քանիւ ինչ զնպաստ խորհրդոցն
ըստ ըղձալի աղէտից հասելոյ կալելոյ զմեզ.
Սակայն զհամարձակախօսն Եսայեաս յօժան-
դակութիւն ինձ բերեալ, զի իմաստասիրեսցէ
և ողբալ ուսուսցէ զխղխայթս մերձաւոր
հարուածոց բարկութեան և խրատու ողոր-
մութեան Տեառն: Զարթիր, ասէ, զար-
թիր, և արի կաց. և դիտեա ինձ ասա, Երու-
սաղէմ, զոր արբեր զբաժակն կործան-
ման, զբաժակն սրտմտութեան՝ զոր արբեր
և թափեցեր. և ոչ ոք է յորդւոցն քոց՝ որ
զքեզ մխիթարէ: Եւ ըստ միւսումն անկան-
ելեալ, թէ՝ ո՞ ընդ իս տրտմեսցի, և ոչ ոք գը-
տաւ մխիթարիչ ինձ: Եւ ըստ այլումն թէ՝
Ո՞վ եղիցի տրտմակից ինձ. մի թէ բեկումն
քո, կամ սասանութիւն սովու և սրոյ: Զի՞
սորդարեւ իսկ ըստ նախագուշակ տեսողին
ոչ կարեն մխիթարել զմեզ որդիքն մեր տա-
րակուսեալք և գերեալք և հալածեալք և
ապանեալք, և նջեալք 'ի կիրճս ամենայն
ճանապարհաց: Եւ յիրաւի 'ի մեզ բղխեաց
այսպիսի մնհաշշուկ հոտ դառնութեան.
զի որովք պատուեցաք և վայելեցաք յորհ-
նութիւն քաղցրութեան կամացն Աստուծոյ,
ոչ ծանեաք զնա արժանապէս՝ յորմէ զքա-

ըին (1) կլթեցաք, և ոչ գոհացաք զտուողէն մխիթարութեան՝ որով զպարտն պահանջէր. և սակս այսորիկ ապա նզքիմք և խրատեցաք. և ապա եօթնպատիկ հատուցան մեղք մեր 'ի ծոցս մեր :

Սուգ առնու և ընդ մեզ մարգարէութիւնն ասելով. Հրէաստան կործանեցաւ, և խոնարհեցաւ փառքն Սիոնի : Վասն զի թողան միանգամայն իսկ 'ի խնամակալութենէ Բարձրելոյն աստուածաշէն եկեղեցիքն Քրիստոսի, իբրեւ զտաղաւար յայգւոջ, եւ իբրեւ պհովանի մրգապահաց 'ի մէջ սեխենեաց. և փայտատօք և մրճօք կործանեցին զդրունս նորա, և հրկէզ արարին զսրբութիւն նորա, և պղծեցին զխորան անուան նորա. և ժառանգութիւն Տեառն կոխեցաւ 'ի գարշապարաց պղծոց, եւ 'ի խոզական երկրապէշ անցաւորաց ճանապարհի. եւ անբիծ արիւն կղերց եկեղեցւոյ տարապարտ հեղաւ իբրեւ զջուր շուրջ զԵրուսաղէմաւ. և 'ի տանէ առաւել քան յօտարաց բուսաւ արմատ դառնութեան : Զի կարծեցեալ սիւնք ոմանք ապստամբեցան 'ի Տեառնէ, և զինեալք ըդլեզուս իւրեանց նանրութեամբ և անօրէ-

(1) Մէ օրէ. զքարին :

Թեամբ, խօսեցան խոտորնակս Թիւրս ա-
ռաջի իշխանաց մերոց. և խաբեբայք եւ
պատրիչք փոխաբերեցան ընդ արանց ար-
դարոց և ստուգաքանից. և յաչս զօրավա-
րաց մերոց և գլխաւոր իշխանաց անարգե-
ցան ստոյգ հովիւք հօտի Տեառն. և ստա-
ցան հովիւս բազումս 'ի գայթակղութիւն
իւրեանց։ Ու սակս այսորիկ ստացաք նա-
խատինս յարանց ոտոց և անզգամաց, և ե-
ղաք 'ի կատականս ծաղու ազգաց որք շուրջ
են զմեօք. Եւ հօտք հանդերձ հովուօք
յափշտակեցաք 'ի խուռաց ապստամբողաց
'ի գերութիւն մատնեալք, և վաճառակուր
լեալք։ Իսկ այլք ամանք սուրբ ձեռօք և ամ-
բիծ սրտիւք՝ բազում՝ գանից և գեղարանաց
և կապանաց և խոշտանգանաց և բանտից
և անհնարին նեղութեանց զփորձ առին, և
բարձան յերեսաց անիրաւութեանց այնո-
ցիկ՝ որք բարձրացուցին իւր զանարգանս
մոլորութեան յանձինս իւրեանց։ Ու զփա-
կունք ծառայից Աստուծոյ՝ գէշ թռչնոց
երկնից արկան, և մարմինք սրբոց Բարձրե-
լոյն 'ի կերակուրս գազանաց տուան. և ոչ ոք
գտաւ որ յինքեան բերէր զնախանձ Տեառն
ամենակալի, և 'ի բաց տարեալ արտաքէր 'ի
տանէ Տեառն զմշակն անիրաւութեան, և

կամեցողք այսպիսեացս ապա յիրաւի զանարգութիւն մոլորութեան յանձինս իւրեանց կրեցին ։

## ԳԼՈՒԽ ԽԶ.

Յաղագս հօտորելոյ Յոսեփայ զանձնապարտ իշխանացն, ընդ որս և զՄուշեղ։

Իսկ արդ՝ ես այսուհետեւ դարձեալ դարձուցից անդրէն զբանս յոլովս իմ. և թախծեալ սրտիւ ոչ դանդաղեցայց 'ի խորհուրդ առնուլ 'ի մերոց վտանգաւոր կրից՝ զթուլացեալ գերանդին ընդ օդս. 'ի Զաքարիայ առածութեանցն զսուրն երկաթի ընորբեալն սրբեամբ որդւոց երկրիս մերոյ. ընքաղցմախողխողն զառաքեալն 'ի վրէժխնդրութիւն զօգոց և գողակցաց, սատոյ և սատերդմանց։ Նոր այսուամ և անտանել խոկ եղեւ մեզ յերկուսց Հայրաւոյ բոլորեալ չարիք, և յոգնածախող տանջանօրանք յորդէիս ժողովրդոց մերոց, որք և հարան խոկ և խողխողաթեցան սովով և սրով և խարդաւանականն դրժողութեամբ՝ մինչ 'ի մարմին և յանկերս եւ յուղերս թափանցանց բերեալ ։

Մ՛ի անտեսեսցի ինձ աստանօր և մի՛ւ մարգարէութիւնն, որ իբրեւ զինձ պատմո-հեալ․ ասէ, յուղղոյ այնոցիկ՝ որք չարու-թեամբ են զգածեալք, իբրեւ յայնժամ ու-րեմն երբեմն զկռամոլ Նորբեստանեայն․ Յաւուր կացցէ և ինձ սատ Մովսէս այրն Աստուծոյ, որ զհատուցումն գործոց վրի-ժուց մերոց՝ հրապարակաւ․ որժ առնէ յաւուր վրիժուց խնդութեան մերոյ, փայլակնաբար-ինն սրեալ սուսերին՝ 'ի վերայ հասանել և յագուրդ ոչ առնուլ առ 'ի յուտել զմար-մինս վիրաւորաց գերելոց գլխոց իշխանաց մերոց ։ Զի որք երբեմն 'ի բարձրագոյն առ-ոփծանս նստէին, և 'ի խորանս պետականս վերամբարձ ծոխանոյին, արդ աւադիկ խար-գաւանեալք դիւրադաւ եղեն, և պարտա-ւորք մահուն տուգանաց 'ի չար սատիկանէն։ Վասն զի զոմանս 'ի մետաղս բանտից բերեալ տակաւին դատէր սրով և սովով և գանիւ․ իսկ զոմանս զօր և պատուաւորս առ 'ի յինքն նէ թուեցուցանէր անօտղացն, զնոսա 'ի ծա-ծուկ խարդաւանէր մահու պարտաւորու-թեամբ․ ըստ որում նախ դատեալ դժրեա-ցըն 'ի գաղտնի զիշխանն Գրիգոր զհայկա-զունոյն զարմիւ, և զքեռորդին արքային Արշ-քատայ, որ ըստ նախապատմեալ խմոյ բանին

անձնատուր լեալ էր 'ի ծառայութիւն նմա, զոր դեղըմպութեամբ մահու ողողեալ զբոլորայն նորա, այնպէս տագնապաւ տարակուսից վախճանէր, տարեալ թաղեալ զնա 'ի ձեռակերտ իւր 'ի սրբարանին սուրբ Ճեմաւնեայ: Այնպէս և զքաջարի մանուկն Մուշեղ որդի արքային Սմբատայ, որ ընտ նենգ գործելոյ 'ի բնակչաց Սեւոր գաւառի ձերբակալ եղեւ, և զնա եւս 'ի նոյն տանջանս հարեալ, և զդեղ մահու արբուցեալ՝ վճարէ 'ի կենացն. զորոյ բարձեալ և զմարմին ապարապետին Աշոտոյ, առաքէր հանգուցանել 'ի քնարանի նախնական հանգըստարանացն 'ի Բագարան: Այնպէս և ըզզուարթածաղիկ տիօք զերիտասարդն Աբլբատ՝ զեղբօր որդի Սմբատայ, որ ինքնակամ դիմագրաւ դիմեալ 'ի ծառայութիւն Հագարացւոյն, և զնա եւս նովին դժրոզութե դաւոյ կորուսանէր 'ի կենաց աստի, զոր տարեալ թաղեցին 'ի Դարօնս ընդ հարս իւր: Եւ վասն այսորիկ խոկ 'ի բերան առեալ իմ զսուգ սիրելեացն, և ձայնիւ շըլթանց գուժեալ լալոյ և պաղատանաց կոծիմ կած ողորմ զի վասն մեղաց մերոց վախճանեցան աւուրք մեր ամպով, և կորեան յունայնութեան յուսոյ:

Իսկ ապա և զայլս ոմանս ազատագունդ արեամբ ըստ ամին սակի սպառէին, զորս ոչ է ինձ այժմ ասել մի ըստ միոջէ, և գրել 'ի պատուաւորաց անուն 'ի մեծամեծացն յան-ձնուր նման եղելոցն, և ընդ ձեռամբ ան-կելոցն ոչ ոք ապրեցաւ 'ի չարախառնական և 'ի խարդաւանական մահուն տառապանաց. բայց միայն խոհեմամիտ Թագաւորն Գագիկ և չքնաղագեղ սպարապետն Աշոտ, որ ուշ 'ի կուրծս արարեալ, և իմաստութեամբ մտաց խորհրդեամբ տեսեալ միանգամայն իսկ զեղ-լս գնացից տերանց և եղբարց իւրոց առա-ջի իւր, և յայնպիսի անհնարին մահուց զան-գիտեալ. ամենայնիւ յամենայն բերեալ հա-յան 'ի կամս ոստիկանին 'ի կատարելութիւն բանի և խորհրդոց իւրեանց ճեպեալ զան-ձինս։ Նա և պատանի մանուկն Վասակ եւս՝ որդի Աշոտոյ գահերէց իշխանին Արծրու-նեաց, որ անձնատուր իւրովի լեալ ոստիկա-նին, և ապա 'ի դիպահող զնա արարեալ։ Իսկ յաւուր միում իբրև գիշեր նսեմա-նայր, յանկարծակի զվաղվակաւորն սպաղա-տիկ 'ի գործ առեալ՝ զպահապանսն դիւ-թաւալ կացուցանէր. և ապա հարուստ մի անցեալ գնացեալ, և կախեալ ընդ պատ-ուար պարսպի քաղաքին փախչէր։ Իսկ իբ-

բէւ ձայն պահնակացն զօրացեալ լինէր , և հրոսակս զկնի պատրաստէին , մինչ յայս մինչ յայն՝ նա 'ի փողոցս այգեստանեայն (1) անկեալ, երթայր գնայր 'ի հայրենի ամրոցս աշխարհին իւրեանց :

Ապա այնուհետեւ չարութիւնն զգաղտնի պատրուակն մերկացեալ. ոմանս 'ի պատուական ազատացն բազմախողխող երկաթին տային կերակուր. իսկ այլք ոմանք փախուցեալ 'ի ծործորս և 'ի ծերպս վիմաց տարեալ մղէին. և ապա սպրդեալ ամենայն աշխարհն սրբեցին յայլս, թափեան յանտառս, ելին 'ի քարանձաւս : Իսկ ապա կանայք և պատուականք տիրուհիք ըմբռնեալք 'ի գերչոց անտի, առաւել եւս բարձին զբեռն ծանրութեան մարմնոյ նեղութեանց, ոչինչ յիշեալ զանուն փափկութեան մայրենի ազատութեանն : Այլ ոմանք 'ի դիպահող բերեալք 'ի խաւարչուտին տեղիս, գրեթէ քրձազգեայք և խոշորազգեացք, և կաշկանդեալք չքաւորութեամբ, և կարօտեալք աւուրն պարենի . և ոչ թերեւս ազատ փափկացեալ լինէր քան զգեղջուկ վշտացեալ : Եւ այլք ոմանք մարք յղիք 'ի տուգանս անհնարինս մահաբերեալք՝ գերեզմանք լինէին

(1) Մի օր · այգեստանացն :

մանկանց իւրեանց ։ Իսկ այլք չարախօսավաճառ դատաւորութեամբ մահու սպառեալ զկեանս իւրեանց, ոչինչ ընդհատ երեւէին յայնցանէ՝ որ ոչ ճաշակեցին զաշխարհս ։ Եւ այսպէս ոչ գտաւ լուծեալ կապտորան դստերաց երկրի մերում, եւ ոչ թօթափեալ փոշի գըլխոյ անդաստին իսկ 'ի վշտըմբեր տիկնաց, որ իբրեւ զանձիւն հնոցի մաշեալ ունէր. այլ եղկելի տուգանօք եւ հեծութեամբ բազմատանջեալ ։ Եւ սուգ զգեցան սպասաւք զարդուց նոցա, եւ խանգարեցան սպասք երախանաց նոցա. եւ ծխոտեցան իսկ միանգամայն որահակք եւ որսկապանք նոցա. եւ այսպէս ապա զօրացեալ մահու, եւ կլեալ զբազում՝ արտօսր հոսեալ կալաւ զամենայն երեսս երկրի ։ Այլ այսոքիկ քեզ բաւականացեալ՝ ես 'ի կարգ պատմութեանս դարձայց, ոչ թողլով կիսակատուր զբանիցն ոճ ։



## ԳԼՈՒԽ ԽԵ.

### Յաղագս Սահակայ եւ Վասակայ գործոյն, եւ անգթութեանն Յուսկայ ։

Յայսմ վայրի հայկազուն եղբարքն հարազատք Գրիգորոյ զրաւամահ եղելոյ յուտիկանէ անուն՝ Սահակ եւ Վասակ, զկոյթ

պնդութեան յանձինս բարձրացուցեալ 'ի ժամանակս հալածմանց, և գուն գործեալ զի գտնէ հնարս մարթացեն դտանել, և 'ի դերեւս 'ի նեղչաց ելանել, և ամրանալ 'ի կենսական ամրոցի տէրութեան իւրեանց, և ոչ գնալ չուել յաշխարհս օտարաց՝ մինչեւ անցցէ, ասէ, բարկութիւն Տեառն: Իսկ ապա նաւակառոյցք լեալք (1) որամար թիակօք իբր 'ի տապանի ինչ երթեալ ղօղեալ ամրանային 'ի Սեւան կղզւոջ հանդերձ քրիստոսակրօն և ճգնաւոր մարբն իւրեանց, և կանամբք և որդւովք, և աղատագունդ բնակով. վասն զի զբահեղեր յորձանուս պղտորութիւն խմայելեան հինիցն ևս քան զեւս սաստկացեալ բախէր զաւազահիմն տունս բնակութեանս մերոյ: Իսկ ապա ազդլեալ այն կանանցախօս դառնահամբոյր Հագարացւոյն, և զօրս գումարեալ՝ առաքէ 'ի վերայ նոցա. եւ իբրեւ հասին յեզր ծովակին (2), սուր թշնամւոյն պատնէշ պաշարմամբ շուրջ վնոքօք պատեալ: Իսկ ապա 'ի մտի եդեալ 'ի միասին սիրելի եղբարցն՝ թէ գուցէ լքուցումն ինչ նոցա 'ի թշնամեացն լիցի, և 'ի ջրապատ անդնդոցն ոչ գտանիցի

(1) Այլնոյն օրի. Նաւակառոյց լքեալք:

(2) Մի օրի. յաւելու՝ Գեղամայ:

տեղի փախստեան, և մատնեցին 'ի ձեռս հեթանոսական բռնաւորացն և նոցա որդմոց չարութեանն. և այնուհետև զձեռս նաւաստեացն զօրացուցեալ, և նաւեալ չուեալ գնացեալ մարթն հանդերձ, և առհասարակ ընտանեօք և աղխիւ եւս, որչափ ձեռն բաւականին կարէր կրել, անկանէին հապճեպիւ յամուր գաւառն Սիափորոյ:

Իսկ իսմայելեան զօրապետին մտեալ 'ի կղզի ամրոցին, զմնացեալ կայուտ աւարին ոչ սակաւ ինչս քան թէ բազում ժողովեալ 'ի դիպահող թողոյր, և ինքն սաստապատակ ուփռեալ` դիմէր կրթէր անցանել զհետ նոցա: Որոց ընդ կրունկն դարձեալ առ 'ի դիմի հարեալ թշնամեացն, և բազում վիրաւորս 'ի նոցանէ խածատեալ. և ճարակ սրոյ տուեալ 'ի փախուստ զնոսա դարձուցանէին, և ինքեանք չուեալ երթեալ գնացեալ զօղեալ դադարէին յանձաւախիտ ամրոցս մայրեացն Գարդմանոյ և Արձախոյ, ակնկալեալ այցելութեան Տեառն: Ընդ հանգեաւ 'ի Քրիստոս պարկեշտասուն և սրբափայլ կրօնիւք մեծն 'ի ճգնաւորս մայր նոցունց, և քոյր արքային Սմբատայ. որ յետ ամաց ինչ դառնալոյ և սիրելոյ նոցա 'ի վերայ սեփհական և հայրենի իշխանութեանն, տարեալ հան-

դուցանէին զմարմին նորա 'ի քնարանի իւ-րում մերձ 'ի ձեռնակերտ եկեղեցի իւր 'ի Շաղագայի ։

Իսկ անօրէն ոստիկանն տեսեալ՝ եթէ կուռակալք և կողմնակալք իւր ձեռնթափ լինին յաղթութեամբք մեծաւ յամենայն կողմանս երկրիս մերոյ, և ոչ ոք է որ 'ի դի-մի նոցա հարկանի, այնուհետև ասպատակ չար հինից ընդ ամենայն կողմանս սփռէր 'ի Սիսական աշխս, և 'ի յայնկոյս Տաշրաց և Կանգարաց, և յեզր ծովակին Գեղամայ ։ Նա-ւապա զԹագաւորն Գագիկ հանդերձ իւրով-քըն եւս նախարարօք, և բազում զօրօք ա-ռաքէ յամուրն Վաղարշակերտի, պատնէշխ պատել պաշարել և առնուլ զնա. որք և եր-թեալ պնդեցեալ իսկ, և 'ի բազում աւու-րըս մարտ ընդ ամրոցին եդեալ, ոչինչ կա-րէին տանանել նմա ։ Նա թէպէտ և մարդիկ ամրոցին բազում վիրաւորս 'ի թշնամեաց տապաստ արկանէին, սակայն նոքա ըստ հը-րամանի Ջեռանելոյն ոչ իշխեցեալ անցանել, նստեալ պահէին զամրոցն 'ի բազում աւու-րըս ։ Իսկ այն զօր՝ որ 'ի կողմանս կողմանս առաքեցան յապստամբող ոստիկանէն, իբ-րեւ զհուր կայծակնահարեալ ընդ ոլորտս երկրիս մերոյ, 'ի վեր բարձրացուցին զբոցն

տոչորին՝ առ 'ի ցնդել և 'ի հնձել և 'ի մաշել զարարածեան ազգիս բնակչի. և միանգամայն լոկ ազատն և անազատն, զօրաւորն և պատերազմօղն, իշխանապետն և դատաւորն, խորհրդականն և քննիչն, իմաստունն և հանճարեղն, ծերն և տղայն, մեծն և փոքրն մատնեցան 'ի ձեռս բանադատ գերչացն, ըստ մարգարէութեանն՝ թէ Խաբեբայք ախտացեն ձեզ: Ուր այսպէս նախանձ Տեառն զօրութեանց եղեւ մեզ յաւուրս վրէժխնդրութեան մերոյ՝ զոր չլինելոց էր յապա ժամանակի:

Ուր ապա ամենայն այդ օգնականք իւրեանց առեալ աստուածօք կուռեմիսս. և հայցէ ծով զգլուխս իւրեանց. և աղբերս արտասուաց զաչս. զի մի լքանիցին ողբալ գուժել և կոծել զանցս անհնարին աղէտիցն, քանզի հէնք իմացեալեանց ասպատակացն իբրև ընդդէմ յանխտառս և 'ի շամբս փառեալ այսպէս սփռեալ ապարածեցին զճապակս բազում 'ի մէջ ժողովրդոց մերոց, և դատ ամենայն գլուխ 'ի ցաւս, և ամենայն սիրտ 'ի տրտմութիւն:



## ԳԼՈՒԽ ԽԲ.

Յաղագս անօգնական ծերոյն Սենեքերիմայ արքային, և անձնատուր լինելոյ Յունաց, և փոխարէնն Գագկոյ։

Զայս ապա տեսեալ, և զմտաւ միանգամայն ածեալ Թագաւորն Գագիկ Հանգերձ եղբարբն իւրով Գուրգենաւ, երբ Թէ 'ի ձեռանէ նոցա և 'ի կարապետելոյ այս ամպրոպ չարութեան և ահիւք դառնութեան զեղեալ շուրջ զեկեղեցեաւ Քրիստոսի, և զԱստուծոյ հաւատացեալ ժողովրդովք, այլ և զիւրեանց եւս անձանց զխարդաւանական մահու կարծիս 'ի մտի եղեալ, և զանգիտեալ յերկիւղէ բռնաւորին։ Նայնուհետեւ աստուածային իմն զօգցես երկիւղիւ կշտամբեալ և յանդիմանեալ զանձինս իւրեանց, և զղջացեալ 'ի սիրտս իւրեանց, ապաշխարեցին ապաշխարողական կարգօք, և 'ի մտի եղեալ հաստատել գնալ յաշխարհ տէրութեան իւրեանց. սակայն առ ժամայն ոչ յաջողեցաւ նոցայն խորհուրդ։ Նա այնուհետեւ զնոյն բարեաց իմացուածս յայս ածեալ արքային Սենեքերիմայ, և միաբանեալ ընդ նմա ծածկաբար, խնդրէր ժամ դիպող զիմաստ խորհրդեանն կատարել, և զգործե-

վասն զի անատակ իսկ էր նա 'ի մարդկանէ․
և վասն զի ձեռն Իսմայելի սպառնայրութ․ ա-
ռաւել քան զկարն ծանրանայր․ Զկնի ամի
միոյ՝ յաւուրս Թշնամւոյն պատանէշ պաշար-
մամբ պատեցաւ շուրջանակի զամրոցաւն․
և այնուհետև ըստ հրամանի Ջերմանեցւոյ տա-
ռեկանիցն ռամիկն գրգռէր զազգեանն 'ի պա-
տերազմ և 'ի սպանումն Թիւնոս քաղաքաց՝ փրկել
'ի բեկանող պաղանաց անհարին իւրն Թշնա-
մանց ձայնի․ Իսկ մարդիկ ամրոցին անձնա-
տուր լեալք․ և կորուսեալ Թեամբ կշռեալ ըն-
ձգոտումն մերձենայից, և զնետաձիգս 'ի լայ-
նալիճ աղեղանց․ և զքարինս 'ի պարսատա-
կաց․ յաւէտ իւրն և անհնարին խողխողումն
'ի վերայ մարտիկ զօրացն հաւուցանէին․ Իւ-
վասն զի ընդ ձեռամբ Հագարացւոյն բա-
զումք էին զինուորեալք 'ի հաւատացելոց
Քրիստոսի, զնոսա միշտ զինեալ տայր ընդ-
դէմ պատերազմի ամրոցին՝ յիւրոյն իշխանե-
լով․ Իսկ զայն ոճիրս տեսանելով արքային
Սմբատայ, և զկարօտութիւն քրիստոնէից՝ որ իւ-
րեւ մնացեալ էին դահճաց ձեռնէին խողխո-
ղեալք, այնուհետեւ զմահ մարմնոյ նախա-
տակ կենդանի ատալքի դնէր․ և անձամբ ան-
ձին վեհին հասանել, և փրկութեան այլոց
հոգացող գտեալ՝ զիւր փրկութիւնն անտես

արար . և ըստ Յովսեփու՝ մարգարէաբար-
բառ բանիւն առ Տէր պարտ վարկաւ, զի ինքն
միայն մեռցի, և մի ամենայն ժողովուրդն
կորիցէ . և ըստ Եղիազարու լաւ համարեալ
զմահ քաջութեամբ՝ քան զկեանս խղճիւ ։
Եւ ապա յետոյ երդմամբ ուխտի յատկա-
նէն խնդրեալ՝ դէմ եդեալ էջս առ նա առ-
նէ ; և այնպէս փրկէ առ հասարակ զքրիս-
տոնէադրոշմ ժողովուրդն ՚ի տարապարտ մա-
հուն վտանգէ՝ զոր իւրով ձեռամբ կա-
ցեալն յամիրայէն, այլև որք ընդ ձեռամբ Հա-
գարացւոյն էին զինուորեալ քրիստոնեայք ։
Իսկ տաճիկանն դաւաճանող ըստ խորա-
մանկին սատանայի՝ որպէս երբեմն ընդ Ե-
ւայի, այնպէս և սա ընդ խորհրդական
առնն կաճառէր բարեհամբոյր բանիւ . եւ
նոքա ոսկեհուռ մետաքսէիւք եւ ըսկոնացի
զարդուք և շղաշատեռ վառիւք զնա զար-
դարեալ . և զխարդաւանս ջախջախս նմա
հնարէր մատուցանել առ ՚ի հաւատարիմ
զուխտ երդմանցն իւրոց նմա ցուցանել ։
Այլ և ըստ ագահութեան իւրոյ մնացն ՚ի
ցանկութիւն ընչից հարեալ՝ փութանէր ՚ի
միտս իւր, թէ զուցէ զտանիցի ինչ արքային
՚ի պահեստի, եւ այսպիսի բարեպաշտու-
թեամբ յայտ եկեալ առցէ . և իբրեւ ըդ-

Նշնջակ, 'ի խլել 'ի բբել և 'ի կործանել և յատակել. վասն զի անդ պօղեալ ամրացեալ կային ոսկինայքն բարեպաշտօնք, մայր մեծ իշխանին Սիւնեաց Սմբատայ, և կին նորուն՝ քոյր Գագկայ, և կին Սահակայ եղբօր Սմբ-բատայ, և այլ եւս պատուականք յազգաց՝ արք և կանայք: Նոյն առեալ ընդ իւր տա-ներ և զարքայն Սմբատ պարտաւանդեալ 'ի շղթայս. և անդ առաջս զամրոցաւն անհնարին ինն ամիս պատերազմեալ շուրջանակի պա-տեր, անդուլ և անդադար զկռուանս աղ-մկին 'ի վերայ յաճախեալ: Իսկ ապա արքա-յն Սմբատայ զմահ անհնարին ընձայեցեալ(1) ոստիկանին, տակաւին սպասէր կատարման դա-տապարտութեան զնա դատեալ, և 'ի բար-կութիւնս վրիժուց հատուցման վառեալ, և կրճատեալ 'ի վերայ զատամունս՝ մռանէր զնա անօրէն դահճաց, յորմէ և տանջանս չարաչարս կրեալ՝ Թափէին 'ի նա զԹոյնս դառնութեան իւրեանց. և 'ի վերայ յամա-խէին սպառնալիքն 'ի գլուխ հարկանել, և 'ի կոճեղս պնդեալ՝ և գելորդօք վարակել և խոր-տակել: Նա յետ սաստիկ սովով և ծարաւով ծնդեալ և անսուաղեալ, ոչ միայն զի դա-հիճքն արգելուին զհարկաւոր պէտս ճաշա-

(1) Այլ օր. յղացեալ.

կեացն , քան թէ տուաւել յիւրոց իսկ կամաց աստուածալցեալ՝ Աստուծոյ ընծայէր զպիտու- լն զծառայական , որպէս ուրեմն երբեմն Դա- ւիթ 'ի ծառայս իւր զջուրն՝ որ 'ի ջրհորոյն Բեթղեհեմի ։ Նոյն այսպէս ոչ գոյր նմա 'ի նա- ցանկ եւ ոչ սակաւ ինչ մնան 'ի խնայութեն . եւ եթէ էր երբեք ուրեք մեկուսի լինել , եւ կամ ժամանց ինչ 'ի մերձոյ անցանել 'ի մե- նաստանաւորին լինելոյ ընդդէմ փախծացն , զայն 'ի մշտնջենաւորութենէն յաղօթս եւ յաղերսանս զգաստութիւնս եւ յօրհնութիւնս Քրիստոսի ծախէր . եւ ըստ անշարժ հաստատոյն որ 'ի Քրիստոս՝ առաւ եւ աստուածայինն գոհութեն խորհրդոյն արժանի լինէր հաղորդիլ 'ի վերակացուէ աւանդեալ օրինացն՝ ըստ անս- չութեան Տեառն մերոյ հանդերձելոյ ։

Իսկ երբեմն 'ի փախծման նորա զնա տարեալ մեծին , աստնիկ տուեալ չարչարանաց նորա 'ի հալածողացն տուաւել ողորմելի եւ ստորա- վճռեալ էր՝ քան զզօրծան գլխովն , որ եւ յեշա- ստակաս իսկ եւս կշտամբեալ ցնցոխմ յարտա- քսուս ։ Վասն զի յորդորեց եւ մարդասպանն զապականացն զնենգաւոր շուրջ թունից օձին տուեալ , որ ընդ նմին իսկ զնա հալածէր տա- ռապոյ մարդկային ընտանի բնութեանս բե- րան , եւ տայր զնէր դիւթին 'ի մշտատէր չարա-

Իսկ այս լին ապականութեամբ և անառողջ պղծութեամբ ատտիկանն ոչ հրամայէ մնա թաղել, և զմարմին նորա յերկրի տալ. այլ 'ի վերայ փայտի տարածեալ բևեռակապ պրկէին 'ի Դվին քաղաքի. զի որ թաղեալն էր ընդ Քրիստոսի մկրտութեամբ 'ի մահ, պարտ էր նմա զի ընդ նմին և խաչակցեսցի իսկ, և մի մերժեսցի վկայօրէն համարձակութիւնն առ 'ի նմանէն, յորում և կայ մեծաց վարձուց հատուցումն: Իսկ 'ի տեղւոջ անդ յորում զերանելի և զերջանիկ թագաւորն բևեռակապ 'ի փայտին բարձու պրկեալ էին, ոմանք 'ի հաւատացելոց և յանհաւատից եւս՝ ասէին տեսանել լոյս ճառագայթաւէտ վառեալ իբրև զճրագ ճաճանչաւոր նշուլիւք հարուստ 'ի վեր քան զգլուխ թագաւորի կշռադատեալ հաւասար նմին. և որք ասէինն զայս, ստուգութեամբ իմն հաւատոյ զբանն առնէին: Բայց մեք զայսոսիկ 'ի տեսողս անդր թողացուցեալ, և զորս աչօք իսկ տեսեալ է մեր՝ ոչ դանդաղեսցուք պատմել: Վասն զի հող երկրին՝ յորում 'ի պատուական մարմնոյն աւիշկն որանտի (1) կաթեալ իջեալ էր, բազում բժշկութիւնս հիւանդաց և վտանգելոց և աւ-

(1) Երկ. օրի. աւիշկն կոբանի: Մի օրի. աւիշկն կաթեալ:

տաժեսայց կատարէր ։ Եւ սակս այսոցիկ նշանաց՝ ոմանք 'ի հեթանոսաց անտի 'ի հաւատս քրիստոսականս զանձինս վերածէին , և աւազանին լուսով վերստին ծնանէին 'ի Հոգին սուրբ Աստուծոյ ։



## ԳԼՈՒԽ Ծ.

Յաղագս տաճարն և հայրապետանոցն ամրոցին Եղնջակայ ։ և շինութեան և սրբութեան Աթոռոյ որոյ Ամբաստոյ , և Նախապարէն նորին ։

Իսկ ոստիկանն անօրէն արձանացեալ և մարտ զամրոցաւն Եղնջակաւ եդեալ՝ ոչ հեռանայր անտի , մինչեւ դաղտաբար յինքն գրաւեալ յափշտակէր զամրոցն . դուռն հրարատեան կենաց բնակելոցն 'ի նմա բռնայր ; և զբազում 'ի նոցանէ բազմախողխող երկաթոյն տայր կերակուր . և զայլս ոմանս ընդ չարաչարանօք խմաստից կուրեանց տղամականաց (1) 'ի գերութիւն վարէին ։ Իսկ զհռչակաւորն և զերանելին 'ի կանայս զբարեպաշտօնս , և զգերիմաստ մայրն Ամբաստոյ Իշ-

(1) Երկ. օրէ . տղամայականաց ։

խանեֆն Սիւնեաց , և զպատերազմաշունչն կին նորուն հանդերձ ամենեքեան իւրովն որդեկաւ , և զկին եղբօր նորուն Սահակայ Սիւնեաց տեառն , գերեալ յամրոցէ անտի՝ վառարան-դեալ պահէ 'ի Դվնին քաղաքի բազում նե-ղութեամբ և տառապանօք . որպէս զի ոչ ոք 'ի նոցանէն երբեւեւս լինէր՝ թէ ո՞ր տիկինն էցէ , և ո՞ր նաժիշտն ։ Եւ որ նախ քան զայս գրգեալք և գգուեալք էին 'ի դահաւորակս իւրեանց , այժմ մանուկք իւրեանց փախա-կերին, և զայս տառ ոգեպահէին այնու թիկ վճարէին. վասն զի տանն գանձք նոցա , եւ աւար հարան զարդք և կազմածք տանց ։ Եւ այս-պէս կոծ և աղաղակ և կականումն և ճիչ բա-զում յազգունականս ապարանս նոցա լսելի լինէր ։

Իսկ իբրեւ գոյժ աղմկին աղէտին հասելոյ լսելի լինէր յականջս բարեպաշտազարմ իշխա-նին Սմբատայ , և եղբօր նորուն Սահակայ . միումն 'ի կողմանս Վասպուրականի և միւ-սումն 'ի կողմանս Գուգարաց , թէպէտ և արիաբար զմի զինուորութիւն զինուորէին 'ի վերայ թշնամեացն դիմեալ , և զքաջա-թափ գերելոցն ընտանեացն լինել , սակայն ոչ կարացեալ փաղփաղակի գունդ մարտակս զօ-րաց կազմել , և ոչ 'ի հեռաստանէ անձայա-

բեղ յանբուռ գործոյն, մինչեւ 'ի մեծամեծս
բանակից առեալ ախողակազմ զպահպանու-
թիւն պատրաստէին: Նոյն այսպէս ախոյեանն մեծ
մայրն Սմբատայ, եւ որդեակ նորուն Իսկ իշ-
խան՝ փախձանեալք թաղեցան 'ի միասին
առ դուրս մայրաքաղաքին եկեղեցւոյն Դը-
ւինեայ: Իսկ զկանայս երկոցունց նոցա բար-
ձեալ տարան 'ի Պարս Ատրպատականի, 'ի
դիպահոլ ամուրս իւրեանց կացուցեալ:

Իսկ բազմահանդէսն այն եւ աջողութիւն 'ի
հրահանգս կրթութեան վարժից մարտի՝ Ա-
շոտ որդին արքային Սմբատայ, բազում ըն-
թացութիւնս եւ նահատակութիւնս քաջու-
թեանց ուժեղակ մրցութեանս ցուցանէր
'ի ժամանակի հալածանացն, եւ անցանէր
զանցանէր զամենեքումբք արիաբար հան-
դիսիւ, որք կենօք եւ աւուրբք զուգահա-
ւասար նմա էին: Սա նախ քան զկատարու-
մըն վկայօրէն վախճանի հօր իւրոյ՝ գրեթէ
իբրեւ զարծուի սաւառնաթեւ սլացեալ
ընդ օդս, այնպէս սրավարեալ խոյանայր ըն-
կնի գիշատեալ այլազգեացն, որք աստա-
նակ սփռեալ տարածեալ էին ընդ երեսս
երկրի մերում. եւ նախ քան զամենայն ինչ
'ի փոքր մի վայրկեան ժամանակի յինքն առ-
հասարակ գրաւեալ նուաճէր զբոլոր իսկ

ամրոցս տէրութեան հօր իւրոյ, զոր առեալ կալեալ էր ոստիկանին: Եւ զորս միանգամ պահնակս անդ 'ի Սառակինոսացն գտանէր, 'ի սուր սուսերի մաշէր. և պահնակօք և պատուարօք և բազում ռոճկօք զամուրսն ամրացուցեալ, և ինքն զհետ թշնամեացն կրթէր, ուր և տապաստակք իսկ հինից իսմա-յէլականացն (1) գտանէին. և ամենայնիւ յա-մենայնի աներկիւղաբար սրտի դրեթէ զե-ղխական պատերազմն յարդարէր ընդդէմ հակառակամարտիցն՝ հանդերձ հարազատ եղբարբն իւրով Աբասաւ: Եւ ապա կառա-վար կալեալ զմիտս իւր, առ Աստուած հա-յէր. և հասեալ 'ի վերայ իսմայէլեան զօ-րուն, որ նստէին իսկ 'ի Բագրաւանդ գա-ւառի, որոյ ճարակ զամենեսեան զնոսա տայր: Եւ զգլխաւոր երեց նոցա ձերբա-կալ արարեալ՝ հրամայէր տիկ ձեւացուցա-նել և կախել զպարսպաց ամրոցացն առ 'ի տեսիլ և յահաբեկութիւն բազմաց: Եւ ինքն ապա չուեալ գնացեալ 'ի Շիրակ գաւառ, և 'ի վերայ հասեալ զօրուն՝ որ 'ի նմա որ-ջացեալ զետեղեալ կային, և զայն եւս առ-հասարակ ընդ սուր հանեալ. և զմնացեալսն վարատեալ վանէր: Եւ անտի դարձեալ

(1) Մէ օրէ. յաւելու՝ իսմայէլականաց թշնամեացն:

իբր զօդապարիկ լինի երթեալ չուէ զկող-
մամբք Գուգարաց, և զայնս ևս ամրոցս
իւրոյ (1) տէրութեանն առհասարակ ջնջէ
գրաւէր նուաճէր: Իսկ ապա անտի յեզա-
կարծումն իբրև զորոգայթ լինի հասանէր
'ի վերայ զօրուն Հագարացւոց, որ 'ի մայ-
րաքաղաքն Վրաց կային 'ի Տփխիս. և անդ
զոմանս սրոյ ճարակ տայր, և զայլս 'ի պա-
տուականաց ձերբակալս արարեալ՝ երկաթի
կապանօք 'ի մեռաղս բանտից պահէր, և
ընդ այնոսիկ քրիստոնէից փոխանակեսցէ զբա-
րաւաթափ առնելով՝ որք ըմբռնեալք իսկ
էին 'ի ձեռն չար ոստիկանին: Իսկ ապա անդ-
տի առեալ զաւար և կապուտ բազում,
դառնայ 'ի գաւառն Տաշրաց. և լուեալ
թէ զոր Իսմայէլեանն զօրեալ նստեալ դա-
դարեալ կայ յամուրս խորաձորս Աղստե-
ւոյ (2), և այնուհետև անձնընտիր զզօրս իւր
արարեալ իբրև արս երկու հարիւր, և եր-
թեալ գռոյթ լինի 'ի վերայ զօրու Հագա-
րացւոյն, առեալ անհնարին մարտ քաջու-
թեան՝ առհասարակ զնոսա սրոյ ճարակ տայր.
և առեալ զկապուտ կողոպուտն դառնայր
'ի բանակն իւր: Իսկ և իսկ չուեալ եր-

(1) Ե. ձեռ. գրի. իւրեանց . . . ինքն:
(2) Երկու ձեռ. գրի. Աղստեւոյ. այլ գրի. Աղստեւոյս:

թեւով առ յաւէտ սիրելի իշխանն իւր Գուրգէն, եւ անդ 'ի միասին զհասարակացն հոգա խորհրդաբար տեսեալ. ապա երթեալ գընայր զկողմամբք ամրոցացն Արշարունեաց. Իսկ յայնմհետէ ոչ եւս յաւելին ելանել ապականիչքն յաշխարհ տէրութեան նորա:

Զայս տեսեալ ապա Թագաւորն Աբբաս, այլ եւ զօրացն իւրոյ՝ եթէ այց արար նմա Տէր, եւ պատրաստեաց նմա եւ յաջողեաց 'ի բարութիւնս, ապա այնուհետեւ հարթ հաւաստութեամբ 'ի մի կամս եւ 'ի միտս զինքեանս բերեալ, եւ Թագ նմա կապեալ Թագաւորեցուցանէին զնա փոխանակ հօր իւրոյ. յինքնակալութեան իմն ուղղմանի պատուոյ զնա համարեալ, եւ Աստուծոյ անձնական զպապագային յանձն արարեալ:

## ԳԼՈՒԽ ԾԱ.

Յաղագս ժողովելեանց Գագկայ արքայի, եւ գումարէր հարստածոց երկիր Սերամ, եւ նահապետութեանց Բաղմայ.

Յայնմ վայրի ապա եւ Թագաւորն Գագիկ հանդերձ փայելչաղինաւ եւ բարեպաշտօն եղբարբն Գուրգենաւ, ոչ սակաւ ինչ

քան թէ բազում մարտս տագնապէց 'ի վերայ պատրաստէր Թշնամեացն, որ ջոկերս առեալ էին ըստ հրամանին Յուսիփայ 'ի կողմանս Ատրպատականի: Նա այսպէս առնաբար քաջութիւնս յանձինս իւրեանց ցուցաւորեալ հանդերձ սպասալօք և զօրագոյն գնդիւն, զբաղում 'ի Հագարացւոցն թաւագլոր խաղացուցանէին. ոչ մի անգամ՝ այլ և բազում անգամ ստէպ ստէպ զայս արարեալ՝ առ ստորոտով աշխարհին Կորդուաց և Մոտկաց (1) և Ատրպատականի. յորմէ խուճապեալ Թշնամեացն իբր յահագին իմն ձայնէ բեկանող գազանաց՝ արգելեալ գտանէին 'ի սաստիկ տարապանակէ հինիցն: Այլ և զՄիսականաց տերանց և ազգաց ոչ սակաւ ինչ աղմուկ շփոթի շուրջ պատէր յաստիկանէ անտի, որք և ամրացեալք իսկ 'ի խոխոմս խորոցն ձորոց, և յամուրս քարանձաւաց՝ բազում արշաւասոյր հէնս 'ի վերայ Թշնամեացն հասուցանէին, և գումարտակս սփռեալ արեանց ճապաղիս հեղուին:

Զայս ամենայն ոյժ պնդութեան տեսեալ չար ոստիկանին ըստ ամենայն կուսակալութեանց, և ահագին իմն զայրագնաբար մռմռեալ մղձկեալ սրտիւ 'ի թեթեւագոյնս

(1) Մի օր. Ռոստականաց:

անդր զթոյնս թափէր . և այնուհետև ապա հետամուտ լեալ, և զհետ մտեալ(1) իւրաքանչիւր ոք 'ի կուսակալաց այլազգեաց ըստ իւրաքանչիւրոց կողմանց 'ի փախուստ 'ի նոցանէ դառնային ռամիկն և անռամիկն, մինչև ամենք 'ի մերոց անտի հատեալ շնչով հազիւ թէ ճողոպրել կարէին 'ի սոյն՝ որ լցեալն էր արեամբ . վասն զի կարիք մեղացն զօրանային յանդուման ամենեցուն առ 'ի պատուհաս առնել զմեզ մահու : Իսկ մեծամեծք աւագանւոյն՝ ձորոց և լերանց և անտառաց և քարաժայռաց եւ ամրոցաց պարապէին(2) . և այլ ևս խառնիճաղանճքն և բոկոտն և մերկանդամ և թափառական, 'ի սով և 'ի ծարաւ և 'ի լքուցումն հարեալք և մաշեալք , ցան և ցիր լերանց և դաշտաց բերբէին : Ոմանք 'ի ձմերային սառնասայզ ձիւնախազաղ սառնամանեացն մրսեալք ծայրատէին և հեղձնուէին . իսկ այլք յամառնային հիւղական(3) յորդաբորբ ջերմութենէ տոչորմամբ կիզեալք այրէին և խորովէին : Իսկ տկարացեալքն 'ի հալածեալ փախստենէն, և մատնեալք 'ի ձեռս գրժողացն՝ անխնայ անողորմ սրոյ նոցա տապաստ արկեալ՝ առ-

(1) Մի օր . զհետ պնդեալ :
(2) Մի օր . պարսպէին : (3) Մի օր : հիւսական :

գանէին արեամբ զերեսս երկրի. և ոմանք
գրեթէ իբրեւ զանբան անասունս 'ի գե-
րութիւն վարէին. բազում երեւելի արս և
կանայս և մատաղ մանկտի իբրեւ զգառինս
'ի մէջ գայլոց ածեալ 'ի սպանդ վարէին. Իսկ
զոր պարտն վարկանէին վաճառակուր լինել,
զայն արտաքոյ տարեալ տրոհէին յայլոց,
զորդի 'ի հօրէ, զեղբայր յեղբօրէ, զկին յառա-
նէ, և զմայր 'ի դստերէ, և զհարսն 'ի սկես-
րէ, և զստնդիացիկն 'ի մօրէն 'ի ստենէ 'ի
բաց 'ի գրկացն յափշտակեալ։

Ու անդ էր տալ տեսութիւն ողորմելի.
և ողբք անհանդուրժելիք, և լալումն ան-
տանելի, և բախումն կրծից, և կքումն ար-
տեւանաց, և դողումն անձին, և տապա-
փումն սրտի, և ճչումն կոծոյ, եւ ցաւումն
գեղոյ, և խզումն հերաց։ Իսկ զոչ պիտա-
նացումն 'ի գործ վաճառաց կամ սողոմայա-
կան արբանեկութեանց՝ 'ի մետաղս եւ 'ի
բանտս և 'ի շղթայս տարեալ մղէին, սաս-
տիկ տանջանարանօք խոշտանգեալ, և ըստ
հոմերական օտար կանոնին՝ 'ի փարթամէն
և 'ի փանաքէն զնոյն կշիռ միապէս պահան-
ջէին զանձս ոսկւոյ և արծաթոյ։ Ու միան-
գամայն իսկ զմեծս և զփոքունս 'ի մի տան-
ջանս մահու դատապարտեալ սպառէին ըստ

պանդխտամբ յաշխարհէ տարի. և զայլս եւս ոմանս ըստ Սոդոմնեան օրինին՝ առ սակաւ սակաւ զարիւնս նոցա ծծէին, աղճատեալ չարիմաց խորհրդով ապահութե յագուրդ ոչ առնելով: Իսկ զայլս ոմանս մահացան դե-ղօմպութեամբ խարդաւանեալ՝ որպէս թէ սղորմութեամբ զայն 'ի նոցանէ լեալ այնո-ցիկ զորս ներգործէին զչարն, և զայլս հնա-րիմաց խեղդամանօք (1) հեղձամղձուկ սա-տակէին: Նա զոմանց զսարսափելիս իմն ընդ-կեանս խառնեալ. զի մինչ դեռ եւս յստա-նաւ որ նոցա կալով՝ կենդանւոյն 'ի կրծիցն 'ի վայր դահիճքն արով զորովայնն հերձուին, և մինչեւ զշունչն աւանդեալ էր՝ 'ի դուրս զերդն կորզէին, մատուցս տալով զայն խու-րաքանչիւր ումեք իւր 'ի կատարումն ինչ լրութեան պիղծ պաշարմանն իւրեանց: Իսկ այլք ոմանք՝ որք թեթեւ համարեալք և ան-տեսեալք էին յաչս նոցա, համարձակութիւն տակս այնորիկ առեալ, իբրև զորիկ կէին և գնային. զորոց պհեստ մնեալք փախչելքք եւ տապարօք և նրամնօք իբրեւ զտունկս ինչ սա-տաքանից արարեալ ծայրատէին, և անպիտանս առնէին 'ի ձեռաց և յոտից և 'ի բոլոր ան-

(1) Այսպէս ունին ամենայն օրինակք. գուցէ՝ խեղդամնօք կամ խարդաւանօք:

դամոց ։ Իսկ այլ ոմանց պարանս առաստկաց
յերկոսին կողմանս 'ի գլուխս և յոտս նոցա
եդեալ, եւ բազում ուժեղակ մարդկանց
այսր անդր ձգձգեալ՝ մինչեւ լուծանել մի-
ջոյն. և ապա երկսայրի սրով բախեալ միջնա-
չափ ընդ երկուս բաժանէին ։ Իսկ զի դեռ-
եւս շնչոյն 'ի նոսա գոլով՝ առ տապոյ վշ-
տանգին, կամ յայլոց եւս ձեռաց ապրելոյ՝
ըստ գլխոյ կուսէ մասնն կանգնէր. կայր փոքր
մի 'ի վերայ հատածի միջոյն, և խօսնայէր
խօսել կամ զանցս ինչ աղէտին, կամ ըստ
հայցուածոյ ինչ նմա ոմանց, թէպէտ և վշ-
տանգն շուլթափուլթի լեզուին տուեալ՝ ոչ
բաւէր զբանն ինքնակատար յայտնել ։ Իսկ զո-
մանս հրամայէր զի կապեսցեն յանխնայ և հա-
տուածեսցեն մորակօք արջառաջլաց 'ի կողս
և յորովայնս թափանցանց վիրաւորեալք ։ Եւ
մինչ շունչ նոցա կենդանի էր 'ի նոսա, արկա-
նէին յերկիր և քարշէին ։ Իսկ կիսոց զունչս և
զականջսն հատանէին, և զմատունս մարմնոյ
նոցա կտորէին, և զմատունս նոցա ծայրաքաղ-
առնէին. և զոմանս յետ անհնարին հարուա-
ծոց 'ի կոճեղս պնդէին, և պրկեալ կային ըզ-
ծառօք յոտսն յերկոսեան, մինչ զի անհնարին
լինէր նոցա նստել կամ ընկողմնել. և զխանձ
տապոյ աշխատութեան սակաւ ինչ բժշկել ։

Այլ ՚ի նոցանէ և յոլովք բազմաց [1] որք վասն առ ՚ի Քրիստոս հաւատոյն բազում անգամ ՚ի հարց և ՚ի փորձ արկանէին, պարգեւս և սպառիւս բազում պերճութեամբ խոստանային, և պաճուճազարդ պատմուճանս եւ երեւելի զարդս նոցա պատրաստեալ յարդարէին առ ՚ի խոստղել ական տեսանելոյ. եւ պատուաւորաց ոմանց գանձս եւ գերդաստանս առաջի մատուցանէին, միայն թէ զնոսա պաշտամանս նոցա պատուեալ պաշտեսցեն: Այլ Քրիստոս որ յանձինս նոցա զարթոյց զկամս կենարարս [2] և զյոյս զքանչելի հանդստեանն, նոյն ինքն հրաշիւ աստուածային զնոսա ջեռուցեալ ՚ի սէրն սուրբ Աստուծոյ, և միջամուխ հաւատով ընդդէմ նոցա վառեալ, զի ապականեսցեն ՚ի բաց զչար խմաստութիւն [3] չարին, և լուասցեն զկապուտակ ներկուածս նախանձու հակառակորդին, եւ հատցեն զարմատս ագահութեան ՚ի հոգեւոր պատերազմին: Նու այսպէս զամենայն սատանայական դիւթութեանց պաշտամունս առ ոչինչ համարեալ, ոչ շեղեցան ՚ի շղուաքա-

(1) Ի միւս օրի. չէր՝ բազմաց:

(2) Մի օրի. կենդանարարս:

(3) Մի օրի. ունէր յետոյ ուղղեալ և եղեալ զչարխմացութիւն:

րոյ շողմոգութիւնս նոցա, և ոչ զարհուրե-ցան յահագին սպառնալեացն և 'ի տանջա-նարանաց՝ զոր պատրաստէին նոցա։ Նա և իբ-րեւ այսպէս առհասարակ սոքա զգաստա-ցեալք լինէին 'ի պատասխանատուութիւն աւետարանի փառացն Քրիստոսի, եւ ըղ-ջուեալն յանկանէ իբրեւ 'ի վերայ բարձր տանեաց քարոզէին, թէ քրիստոնեայք եմք, և . . . օրինացդ ձերոց ոչ կարեմք հնազան-դել, այնուհետեւ զանդատապարտան իբրև զդատապարտս վարեալ, և մինչ մահու 'ի դատաւորաց անձն 'ի վերայ նոցա եդեալ, որով զնոսա առհասարակ վատնէին. որք և ընկալան իսկ զբրաբիոնն յաղթութեանն՝ յԱստուած թագաւորեալք։

Իսկ յայլում վայրի դարձեալ այլք ոմանք ըմբռնեալք վարեցան ածան առաջի դատա-ւորացն։ Նա և իբրեւ հարցան 'ի նոցանէ, և բազում աղերսանօք և հեշտալի բանս բազ-եւաց պարգեւաց առաջի դնէին, միայն ե-թէ պաշտօն մատուցան կուռանցն Անահի-տի հաւանեալ դարձցին։ Նոքա և ոչ պա-տասխանւոյ անգամ զդատաւորսն արժանի գրեցին, այլ միայն ընդ միոս իւրեանց և ընդ Աստուծոյ խօսէին, որոց հաւատա-ցեալք յարդարութիւն, և բերանով խօս-

տակառնեալք զփրկութիւն ։ Եւ այնուհետեւ հարուածս 'ի Թիկունս 'ի Թշնամեացն ընդունէին, և ապտակս 'ի ծնօտս, և զան սաստիկ 'ի պարանոցս, և հանեալ մզեալ փարեալ տանէին յասպարէզ կառամարտանն ։ Եւ 'ի մի ջոկէր զաւուրբան գնդեալ, և իբրեւ զպարիսպ շուրջանակի զնոքօք փաղակաւոր դահիճքն բազձաձեալ, այնպէս տուք 'ի վերայ եգեալ կոտորէին ։

Իսկ այրք ոմանք 'ի Թշնամեացն յայնցանէ որ շուրջն կային, տեսեալ 'ի սրբոցն անտի մանուկ մի զուարթատեսիլ և գեղեցիկ երեսօք՝ Մ՛իքայէլ անուն, յաշխարհէն Գուգարաց, որոյ չեւ եւս էր փաղփաղեալ բողբոջեալ մրաղիր բոյսք մօրուացն ընդ ծնօտսն, եւ իբրեւ մարդասիրել 'ի նա խոկացեալ, և բուռն հարեալ զնմանէն(1) յինքեանս կորզեալ ձգէին, զի մի ընդ այլսն և նա կորիցէ ։ Իսկ նա արտօսրաթոր կականմամբ զաչսն յերկինս համբարձեալ, և զօրացեալ վերին օգնականութեամբն, 'ի բաց զինքն 'ի նոցանէն շոպեալ ձողոպրէր, և հապճեալ տուեալ և դիմագրաւ դիմեալ առ ընկերս իւր՝ առաջի սրոյն զգլուխ իւր կամաւորաբար մատուցանէր ։ Եւ այսպէս 'ի բանա-

(1) Եւրին օրի. 'ի նմանէն ։

ւոր ողջակիզումն զինքն Քրիստոսի նուի-
րէր ընդ այլ ևս անարատ պատարագացն և
զենմանց 'ի հոտ անուշից Հօրն երկնաւորի։

Ին յայնժամ եղբարք երկուք, 'ի նախ-
նեայն Գնունիք, որոց անուանքն մինումն
Գուրիթ և միւսումն Գուրգէն ճանաչիւր.
որ և ըմբռնեալք 'ի գերչացն՝ ածան առաջի
բռնաւորի ոստիկանին։ Եւ իբրև հարց
և փորձ ընդ նոսա լեալ, և գրեթէ զկէս տէ-
րութեանն իւրոյ տալ նոցա խոստանայր,
այլ և բազում զգեստս և զարդս ոսկեճա-
մուկս, և ծիրանիս և երեւելի լսկանացի, և
բեհեզս նոցա մատուցանէր. և կամարս և
մանեակս ոսկեղէնս, և նժոյգս սրավարս ճո-
խապաճոյճս 'ի զէնս և 'ի զարդս. և ապա ըզ-
ձեռն իւր 'ի նոսա կարկառեալ. և գիրկս ըզ-
պարանոցօքն արկեալ, և հուպ ընդ հուպ
'ի համբոյր մերձեցուցեալ զնոսա՝ այնպէս
շոգմոգէր շողոմութեամբ բանիւն, հնազան-
դել նորայն բանի, և խնայել յարբունս ման-
կութեան իւրեանց, և դառնալ . . . յօրէնս
զոր ինքն պաշտէր։ Իսկ նոցա գեղեցիկ իմն
մտութեամբ 'ի զէն զինուորութեանն Քրիս-
տոսի զինքեանս վառեալ, համարձակաձայն
բարբառով զբարուոք դաւանութիւնն քա-
րոզէին առաջի ամենեցուն՝ թէ «Քրիստո-

նեայք եմք և զճշմարտութիւն Աստուծոյ՝ որ ինքն զանմահութիւն ունի, և 'ի լոյս անմատոյց է բնակեալ, ոչ կամիմք փոխանակել ընդ ձեռում ստութեանդ, որ ոչինչ խակ են, և յոչինչ համարեալդ։ Իսկ իբրև զխորհուրդ նոցա այսպէս 'ի սէր նահատակադրին Քրիստոսի արձանացեալ տեսանէր Թշնամին, հրամայէր այնուհետև սրով զնոսա սպանանել։ Իբրև ածան 'ի Թէատրոնն իբրև՝ զոչխար 'ի սպանումն, աղօթս մշտնջենամնունչս և պաղատանս աղերսալից անդր առ Աստուած մատուցանէին, գրել զնոսա 'ի Թիւ վկայից սրբոց, որք սիրեցին զօր երևելոյ գալստեան նորա։ Ու հանդերձեալ դահճացն ղերէց եղբայրն կատարել սրով, նա աղաչանս նոցա մատուցանէր. նախ զկրտսերն քան զինքն տալ կերակուր սրոյն, 'ի մտի եդեալ թէ գուցէ 'ի վերջ քան զնա մնալով՝ ըստ մանկութեան տիոցն զարհուրեսցի ինչ յիսմայէլեան սրոյն սպառնալեացն. վասն զի մրազարդ (1) մօրուքն 'ի ծնօտան դեռևս էր տիգեալ և ընձիւղեալ. և դարձեալ յեղբայրըն կոյս ասէր. « Եղբայր ցանկալի, նախ դու ընծայեցիր Քրիստոսի յուսոյն մերոյ՝ մատուցանելով զքեզ ինքն բանաւոր ողջակէզ և

(1) Մի օրի, միացեալ։

զենուածն նուիրական նմա, որ վասն մեր եղեւ
մեռեալ, և վերարգելեալ զմեզ 'ի կեանսն ։
Իսկ նորա ոչինչ գրեալ զվիշտսն, և ոչ 'ի
մտի եդեալ զանհնարին մահուն տուգանս,
յօժարութեամբ դիմեալ 'ի տուրն ։ Այսպէս
հաստատ գլուխ նորա, պսակեալ 'ի Քրիստո-
սէ անթառամ պսակաւն ։ Զկնի այսր ե-
րէց եղբայրն յետ բարւոք պատերազմին և
կատարեալ ընթացիցն և պահպանութեանն
հաւատոյն՝ 'ի նոյն միտս զինքն փութայր
յանողորմ սրոյ անտի սպանանի 'ի կենաց՝
և կենդանանայ յանդ երանութիւնս ան-
փոխման ուրախութեանցն վերին արքա-
յութեան ։

Այսպէս ամենեքեան սոքա սուրբք՝ որ
առ 'ի յինէն պատմեցան, յիրաւի տարեւո-
րական տօնախմբութեամբ պատուին միշտ
յեկեղեցիս սրբոց, որ յիշատակի սոցա սահ-
մանեալ մարերի ամսոյ՝ որ օր քսան և եօթն ։
Վասն զի շիջուցին զհարուածս տանջանաց,
և գրեցան յորդիս վերին Սիօնի, անխէթ
հաւատով յաղթեցին խորամանկութե՛ նո-
ցա, և հատին կորեցին զոստս մահաբեր
սրտոց նոցա. զի չէք ինչ անհաւոր՝ ուր սէր
Հօր է, և ոչ այն ինչ որ ցաւեցուցանէ՝ ուր
փառքն Քրիստոսի են ։ Նա այսպէս ասպ

աստուածային իմաստութեամբն 'ի բաց մեր-
ժեալ յանձանց զամենայն ինչ որ ապստամբ
և վայրենի է, և սրբեալ զինքեանս 'ի մարդ-
կանէ պղծոց և կրքուանց, կենդանացուցին
իւրեանց զհարկաւոր մահ մարմնոյ, և կա-
մաւորաբար անձանց իբրև զոչխար 'ի զենու-
մըն, և փոքր նեղութեամբ վայրկենիւ՝ յահ
և յերկիւղ Տեառն յղացեալ, երկնեցին և
ծնան զհոգի փրկութեան. և առ ըը խնդ-
րուածք նոցա իջուցին զհրեշտակս 'ի փրկու-
թիւն իւրեանց, և նովին խոնարհութեամբ
հասին երկնաւոր բարձրութեանն ։ Առան
աւետիս 'ի հեռաստանէ, և զուարթագին
սրտիւ զտանջանս և զմահ իբրև զանմարմինս
կրեցին. նմանեցան քաջ նահատակացն մա-
հուն, և դիմեցին խաղաղութեամբ առ Աս-
տուած ժամանեալք. առին զյաղթութեան
բրաբիոնն, և վերադասեցան յորդիս վերին
Երուսաղէմի ։ Որպէս սկսանն քաջութեամբ,
նովին և կատարեցին զհանդէս նահատա-
կութեան ըն երկնաւոր սիրոյն, և արտափայ-
լեցին իբրև զարեգակն 'ի մէջ տիեզերաց.
որոց և անուանքն նոցա գրեալ են 'ի դպր-
ութիւն կենաց ։

Իսկ այլք ոմանք թշուառականք և կո-
խեալք 'ի սատանայէ, զարհուրեալք յա-

ժամանակեայ մահուանէս , և դիւրացու-
ցեալ 'ի միրտս իւրեանց զ'ի նմանէր և զսնոտի
խոստմունս նոցա , շուրջ զինքեամբք պատե-
ցին զերկունս մեղաց մահու , և ուղխիւք
անօրէնութեան հեղեղեցին զանձինս իւ-
րեանց , և վրիպեալք 'ի ճշմարիտ լուսոյն՝
խաւարազգած նսեմութեամբ կուրացեան .
մոլորեալք յարքունական պողոտայէն , և
քեցեալք 'ի բաց յատակ ծորանէ քաղցրու-
թեան խորհրդոյն աստուածայնոյ՝ զմրուր
դառնութեան բաւականաբար արբին , որ
վերջին է չարութեան և առաջին կռապաշ-
տութեան . և ուրացեալք 'ի հաւատոյ՝ չար
եւս քան զանհաւատսն գտան , ոչինչ օգ-
տեալք և 'ի խոստմանց ինչ նոցա՝ գոնէ մի-
այն ըստ մասանց կենացս . այլ երերածուփք
և տատանեալք և թշնամանեալք էին , և
յամենայն կողմանց հարեալ և վատթարեալ ։
Եւ ազատ մարդիկ այնպէս ուրացութեամբն
ծաղեալք և հասեալք 'ի խոր աղքատու-
թիւնս , մինչեւ 'ի դրունս տնանկաց շրջել
և հաց մուրանալ . և միայն զկորստական մո-
լորութեանն և զանարգութեան անուն ժա-
ռանգեալք ։ Եւ ոչ գտաւ խոստովանութիւն
'ի շրթունս նոցա . իջին 'ի դժոխս անհնարին
դառնութեամբ , առիթք գտեալ հրոյն գե-

հենի ։ Իսկ այս գրեալ եղեւ յինէն առ 'ի կշտամբութիւն յանդիմանութեան այնոցիկ . որք խորհին ցանկացողք գործոց նոցա լինել ։



# ԳԼՈՒԽ ԾԲ.

Յաղագս յառնելոյ օտար ազգաց 'ի վերայ երկրիս մերում, և անմիաբանութեան նախարարաց մերոց ընդ իրեարս ։

Բայց և ես տխրական ողբամութեան բանս ինչ յառաջ բերեմ՝ ասել. քանզի դրացիք մեր և ազգք որ շուրջ զմեօք են, Յունականք և Եգերացիք և Գուգարացիք և Ուտէացիք, և հիւսիսական ազգք բնակեալք առ ոտամբքն Կովկասու, 'ի մտի եդեալ՝ եթէ գուցէ յինքեանս հետի աղագս գտանել մարթասցի ստախկանն չար, թէ երբէք չէն գտցէ զքաղաքս և զաւանս և զգեօղս, վասն այսորիկ 'ի խլել և 'ի բրել, կորուսանել և յատակել ջնջնացեան առ ստորոտով իւրաքանչիւր աշխարհացն իւրեանց ։ Իսկ ապախառն ընդ նոսին եւս աւազակք(1) և որի֊

(1) Մի օր. ռամիկք ։

կայք եղեն 'ի մարտս ընդ երկրի մերում. եւ քաղաքում ինչ այն էր՝ որ 'ի նմանէ անցք ընդ աստուածաշէն եկեղեցիս անցանէին յեղ-ծումն և 'ի խոպանումն եւ յապականութիւն փարակեալ: Եւ զքաղաքումս զաշխարհս իբրև զանապատս անկոխ (1) անջրդի ցուցեալ տա-պալէին. եւ գրեթէ իբրեւ զերկիր որ ոչ անց մարդ ընդ նա, և ոչ բնակեցաւ 'ի նմա որդի մարդոյ. այնպէս զապարանս անապատս առնէին: Եւ վասն ընդ միմեանս բախելոյ՝ քաղաքում ծապաղխ արեան հեղեալ. դիակ-կամբք լնուին զերեսս երկրի մերոյ, և առ-հասարակ յաւարի առեալ կապուտ քաղում խաղացուցանէին յինքեանց ըստ իւրաքան-չիւր աշխարհաց կշիռ: Եւ այսպէս անմար-դացեալ և անզաւակացեալ, խոպանացեալ և անշքեղացեալ, այնուհետեւ (2) անդաս-տանք մեր եղեն իբրեւ զանդաստան մայրա-ռախիտ, և ցամաքեցան բողբոջք բուսոց արտավարաց եւ արօտից. և քաղաքք մեր կործանեցան առ 'ի չգոյէ բնակչաց, և երկ-րագործք մեր սպառեցան, և սուգ զգեցան: Եւ այսպէս ծածկեցին զմեզ անարգանք մեր. և 'ի մեզ բովանդակեալ լցաւ մարգարէու-

(1) Յերջնում օրի. չեւ՝ անկոխ:

(2) Մէ օրէ. այնուհետեւ աւանք և շէնք մեր եղեն:

թիւնն Եսայեայ , եթէ՝ Երկիր ձեր աւե-
րակ է · քաղաքք ձեր հրձիգք · զաշխարհս
ձեր առաջի ձեր օտարք կերիցեն , աւերեալ
և կործանեալ յազգաց օտարաց։

Եւ եթէ այսպէս կրեցաք տագնապս
տարաժամուց 'ի հինից օտարաց , 'ի մերս ա-
պա լինէաք 'ի Թագաւորս և յիշխանս ան-
նակառոյց , այլ և 'ի պետս և 'ի Նախարարս
երկրի մերոյ . և յուսացեալ սպասէաք ոչ
եւս ընդ փորձութեանն խառն վրիպել աւ-
ցա և անկանել , այլ ջան առաջի դնել և
զերս ներողութեանն հնարել . և վայելչաբար
'ի միասին կոչակցիլ հասարակ եղբայրու-
թեամբ , և եթէ զմի այլ միանալ . և ըստ (1)
Պաւղոսի պարապաքարել զնորս Պողիկամու մը-
տեղէն բուրգն , կամ ըստ Կեղեճնի՝ ըստ
հոլովելոյ երկնականն սրով Տեառն վանել
զհամբարս Թշնամեացն , կամ ըստ Յայտնի՝
Թերեւս գտնել յետ զկամին արբուցանելոյ
ցցով վարսաւորել ընդ ծամելան Աքսարայ ,
կամ եթէ զՍամարէ՝ 'ի շուրջ պատեալ
պատերազմէն փրկել ։ Նու այսպէս աղաւել
զկաթուղիկէ եկեղեցի , և լուծանել զլուծ
'ի պարանոցէ հաւատացելոց , և շահել զոր-

(1) Աթենացի օրէ · առնէին ընդ Պաւղոսի — ընդ Դիոնեսիոսի · ընդ Յայտնե ։

դիս սպանելոց։ Բայց ոչ զայս եղեւ տեսա-
նել մեզ, այլ զնորին հակառակն կրեցաք.
վասն զի նուազունքն քան զմեծամեծսն ձեռ-
ներէց լինել ջանային. և ծառայքն ըստ Սո-
ղոմոնի հնարէին՝ զի զտեարս տրեխաւորեալ
'ի գետնի գնացուսցեն, և ինքեանք ելցեն
յերիվարս ահիպարանոցս և առաւթուր հա-
րողս, խրոխտացեալք և սոնքացեալք մեծա-
ապստամբութեամբ։ Իսկ թագաւորք մեր
և պետք և իշխանք, զորս 'ի բնէ նախարա-
րութիւնքն էին, ջանային վարատել և խը-
լել յիւրաքանչիւրոյն բնակութեանց, եւ
ըստ ախորժից իւն ձեռական և նոր ստեղ-
ծանել պայազատս և սպասալարս։ Նա և
եղբայր ընդ եղբօր. և ազգայինք ընդ ազ-
գայինս ընդվզեալ՝ 'ի նախանձ և 'ի չարա-
կնութիւն և 'ի գրգռութիւն, և 'ի կատա-
րեալ ատելութիւն ընդ միմեանս բերէին։
Նոյն այսպէս համազգունք ընդ միմեանս հա-
րեալք 'ի հակառակութիւն և 'ի կռիւ պա-
քարէին, և միշտ սուր յազդեր ունելով՝
բազում եւս քան զթշնամիսն հեղուին 'ի
միմեանց զարեան ճապաղիս։ Նոյն առհասա-
րակ զքաղաքս և զգեօղս և զաւանս և զա-
գարակս, այլ և զտունս իւրեանց քանդէին
ձեռօք իւրեանց. և գրեթէ այն ինչ օծիրք

հակառակութեան դասն պատճառք հինիցն
եկելոց 'ի վերայ մեր ըստ Սողոմոնի, թէ՝
Ատելութիւն գրգռէ զբարկութիւն: Եւ
առ մեզ լցաւ միւս մարգարէութիւն, եթէ՝
Անկցի այր ընդ այր, և այր ընդ ընկերի իւ-
րում. ընդհարցի մանուկ ընդ ծերոյն, և
անարգն ընդ պատուականին: Այսպէս ա-
պա ամենայն առաքինի քաջողջութիւն եւ
շինութիւն և խաղաղութիւն քայքայեցաւ,
և եղծումն և ապականումն զանեղի փոխա-
բերեցաւ: Եւ սակս այսորիկ ապա մարգարէն
ընդ մեզ ողբակցէ զառաջին բարեզարդու-
թիւնն, և զվերջին ընդդիմակազմութիւնս.
եթէ առաջ նորա դրախտ փափկութեան,
և վերջ նորա դաշտ ապականութեան:



## ԳԼՈՒԽ ԾԳ.

Յաղագս տառապելեան փարերոյ և ոսկոյ և հարուա-
ծոց Իշխանեաց, և մարդասէր Գաղանաց:

Ըստ հարուածոցս դաժանութեանց
և սարերըքս եւս յեղափոխեցին 'ի մեզ ըղ-
դառն առաքինութիւն չարի. վասն զի բա-

զեխառն օդք հիւսիսայինք 'ի գառնաչանչ-
հողմ հարաւային շրջեցան, և քաղցր և հեշ-
տալի գարուն 'ի ձմեռային սպաւորութիւնս
յեղանակեցաւ ։ Յայնժամ (1) երկրագործք
մեր բազմայորդոր էին 'ի վաստակս ձեռաց
իւրեանց, իսկ այժմ լքեալք և ընդարմա-
ցեալք. յայնժամ շտեմարանք լցեալք, իսկ
այժմ դատարկացեալք և ամայացեալք ։ Նոյ-
նօրք արօտականք ծաղկաւէտք խայտա-
ցեալք, առատ խամրեալ և յոյժ պակասեալ ։
Յայնժամ դաշտք պարարտութեամբ լցեալ,
իսկ այժմ տխրութեամբ ։ Նոյն և հովիտք
բազմացուցեալ ցորեան, առատ կարկտիւ և
չար ուղխիւք հեղեղեալ ։ Յայնժամ անձրևք
քաղցունք և շահեկանք, իսկ այժմ անոյ-
տանք և ջաղջք և թորթորեալք, յապակա-
նել զհունձս և զկալս՝ թէ և գտանի ուրեք
պտղեղութիւն (2) ։ Նոյն լերինք զյնծութիւն
զդեցեալք, իսկ արդ անզարդացեալ առ 'ի
չգոյէ արօտականաց ։ Տառն լուծք եզանց
գործեցաք, և տափոր մի մեզ տուաւ. սեր-
մանեցաք՝ և ոչ հնձեցաք, տնկեցաք՝ և ոչ
կթեցաք, թզենի ոչ ետ զպտուղ իւր, որթ
և ձիթենի ոչ ետուն զզօրութիւն իւրեանց.
թէ շտեմարանեցաք ինչ, և զայն եւս այլոց

(1) Մէ օրէ. յառաջն ։ (2) Մէ օրէ. պտղաբերութիւնս,

թողուք ։ Եւ այսպէս անդրադարձեալ եղեւ մեզ տէրունեանն բան. զի մեք վաստակեցաք, և այլք 'ի վաստակս մեր մտին ։ Եւ այսպէս յամենայն յուսոյ բարւոյ զրկեալք՝ ծածկե-ցին զմեզ անարգանք մեր ։

Եւ այսպէս 'ի յափշտակութենէ թշնամեաց և յանպարգիւն անպատուութեանց, ապա և սովն եւս 'ի վերայ սաստկացեալ զօրանայր ուժգնապէս ։ Վասն զի հուրն կայծակնացայտ որ անցեալն 'ի մեզ, և սուրն անողորմ պատերազմողացն որ միշտ 'ի մեզ բղխէր զհոս մահու, մինչեւ չեթն ամ ձգեալ ընդերկարեցաւ ։ Եւ վասն այսորիկ մնացեալքս պանդխտեցաք 'ի կողմանս Կեղարու, և թափառեցաք և ասպնջացաք 'ի ստացուածոց, և 'ի քաղցր պարենից ռոճկաց, և 'ի չքնաղ կերակրոց ։ Նա և այնուհետեւ սկիզբն առնոյր սովն կորստական, և ապականէին առհասարակ դըրաբնակեան աշխարհիս ծնունդք, 'ի քաղաքս և 'ի գիւղս և յագարակս իբրեւ զդիակունս գունդատեալ և լքեալ դանդաչէին ։ Եւ այլք 'ի փարթամաց զստացուածս իւրեանց առ սակաւ սակաւ վաճառեալք ընդ աւուրն պարենի՝ 'ի վերջին տնանկութիւն հասանէին, և յաւէտ յաղքատութիւն և 'ի կարօտութիւն ։ Եւ

մութիւն, յետոյ յանողորմ բարս խստու-
թեան ընդ մուրացիկսն դառնային, զի խոր-
ճէին եթէ գուցէ լինիցին և նոքա իբրեւ
զնոսա : Նարձեալ էր այս յամենեցուն 'ի
նոցանէ սեղան ուղղել. զի ամենք առ սա-
տիկ կարօտութեանն զցորեանն իբրեւ չէր
աղացեալ կամ թրմեալ՝ ուտէին, և այլք 'ի
կտակարանաց զաղահունմն յանիշատակեալ ու-
տէին : Զապշարանաց էր կերակուրն՝ զոր
թէ գտանէին երբէք, և արտասուաց ար-
ժանի սարժանական և ողորմելի ճաշակքն :

Պղծումն և սովումն և տարափումն ա-
տամոր զկս պատեալ պաշարէ 'ի բանէս՝ որ
առաջի կայ ասել. զի մարդք հաւատարիմք
ստուգեցին մեզ զբանս ճշմարիտ, եթէ մարք
ամենք զտավամահ որդւոց իւրեանց զմարմինս
'ի կերակուր իւրեանց պատրաստեցին : Եւ
այլք զմնկերակիցս իւրեանց գաղտակծու-
թեանք իմն իբրեւ զոչխար 'ի սպանդ վարեալ՝
կերակուրս իւրեանց պատրաստէին : Եւ այս
անդր եւս քան զդէժխնդրութիւն Երու-
սաղէմի արժանի անհնարին ողբոց գործս ինչ
տեսեալ լինի. փասն զի ձեռք կանանց ողոր-
մածաց եփեցին զմանկունս իւրեանց, և ե-
ղեւ նոցա 'ի կերակուր. և որ 'ի գիրկս գրը-
գեալք և գգուեալք էին, գիրկս արկեալ

աղբեւաց Թարթափեալք Թռուչէին և ոս-
տէին իբրեւ զկերակուր ։ Կցեցան լեզուք
դիպացին մանկանց 'ի քիմս իւրեանց՝ 'ի ծա-
րաւս իւրեանց , զի ոչ գոյր նոցա դիեցուցանի
'ի մարց . տղայք չորացեալ հացին խնդրէին և
արտասուք ընդ ծնօտս նոցա Թափէին , և ոչ
ոք էր որ տայր նոցա . և այնպէս ամայն պա-
կասեալ Թափեալ Հանեալ զոգիսն 'ի ծոց
մարցն իւրեանց , ընկեցեալ դրուեալ ցրն-
դեալ կային առ հրապարակ ծնեալքն և ծնող-
քըն 'ի մէջ քաղաքաց ։ Այսպէս մատնեցան
որդիք Ժողովրդեան մերոյ յապականութիւն
'ի յանօրէնութեանց մերոց . և ծնուցեալ ե-
ղեն 'ի վայրկեան Ժամանակի ։

Բայց առաւել քան զայսոսիկ հաւ ողջացն
վտանգ խաչմանգանաց ընտա կորուսանէր ,
զի թմբռնեալքն 'ի ձեռաց նոցա 'ի հարուա-
ծոյ անհնարին չարչարանաց տանջեալ լինէ-
ին ., Թէ զուցէ զացի ինչ առ նոսա կերա-
կուր ։ Եթէ գտանէր երբեք ուրեք , կրկնա-
պատիկ ազգի ազգի տանջանս հնարիմացն 'ի
վերայ նոցա ածէին . ոմանց զառաջանս ընդ-
ներքին հանէին վարէին , և այլոց փայտս սր-
բեալ յետսատանին ցցէին , և կիսոց զամօթո-
հնոցի հրախառն 'ի ծոցս և 'ի պղուխս վայ-
րէին ։ Ոմանց զներքին անդամսն եւ զմա-

ծուլ՝ արութիւնն կապեալ սանձօք , և
նովիմբ զբարձու վանդակաց կախէին մինչ ՚ի
խզել խլել թոկ ՚ի բաց համայն , յորմէ և սա-
կաւք ՚ի բազմաց թէ ապրէին . և զայս ոչ մի-
այն ՚ի թշնամիսն՝ այլեւ ՚ի մարդս մերձաւորս
և յընկերակիցս և ՚ի ծանօթս էր տեսանել :
Եւ այսպիսի խոր խաղաղութիւն պատէր զքա-
ղաքօք , և գիշերըն մահուամբ զգիւղիւք և
զդերբաստանօք . և մարմինք մերկք քնե-
ցեալ կային ՚ի փողոցս և ՚ի հրապարակս . և
անտի սարսափելի անարգութեան այսքին
տեսողացն , որպէս զի ոչ եւս ոք կարէր տալ
ընտոս գերեզմանաց : Եւ այսպէս ապա շանց
և շաղղակեր գազանաց և թռչնոց երկնից
լինէին կերակուր . և յայնմանէ սովորութի
կալեալ գիշամուխ գազանացն՝ յարձեցին
զզօրացն բազմացան աշխարհակեր գայլք .
և այնուհետեւ փոխանակ գիակաց զկեն-
դանաէր մարդիկ իբրեւ զանբան անասուն
ժանեօք մանրեալ աղացեալ ուտէին . և ՚ի
միասին հնձեալք լինէին ՚ի ձիրանաց գազա-
նաց անտի՝ պատուականն և անարգն . քան-
զի թմբութիւն մեղաց և զանձեղս եւս ընդ-
միջով խուրով լծեալ ծնդէր . վասն զի ելք
էն հաստաբակաց ՚ի տարերց աստէ յաշխարհէ .
և սահմանեալ աւուրն հատուցման պահք

պատիւն (1) և պատուհասն ։ Այսպէս տարածեցաւ մահ 'ի սակաւ աւուրս , և լիզալջինջ արար զազգ.քահանայեան ազն , և առ ամենայն մարդիկ քարոզեալ երևեցաւ չար ամպարշտաց արկածք . և տուներք մահու մեղաց ծածկեցին զմեզ յոյժ . վասն զի ոչ կացաք յուխտի Տեառն , անփոյթ արար զմեզ ։

Իսկ ես առաւօտոր պանդխտաքար ընդ հարծանաց ժամանակին նստեալ կայի 'ի մէջ Գուգարաց և Վրաց , մերձ առ մեծ իշխանն Աշոտներսեհ Թագաւորին կացելոյ յայնմ նահանգի . որ թէպէտ բազում հիւրասիրութեամբ և առատաձեռն ուղէկօք առ 'ի նմանէն պատուեցայ , սակայն ընդերկարեալ իմ 'ի պանդխտութեան անդ՝ որպէս երբեմն Իսրայէլ 'ի վտանգս Եգիպտացւոց , յաւէտ իմն տրտմեալ տառապէի անձկալեալ և սպասեալ փրկութեան Տեառն Աստուծոյ ։

(1) Մէ օրէ . պատիժն և պատուհասն ։



# ԳԼՈՒԽ ԾԴ.

Յաղագս գրելոյ Նիկողայոսի պատրիարգին Կոստանդնուպօլսոյ նամակ առ Յովհաննէս կաթողիկոսն, և նորա ևս գրելոյ առ Կոստանդին կայսր։

Ապա սակս սաստկութեանց և վրդովմանց մերոց լուեալ մեծի պատրիարգին Կոստանդնուպօլսի՝ Նիկողայ (1), գրէ թուղթ առիս օրինակ զայս։

"Ամենամաքրի, աստուածասիրի և հոգեւոր հօր՝ տեառն և յաւէտ սիրելի եղբօր մերում Յովհաննու կաթողիկոսի Հայոց Մեծաց։ Ի Նիկողայոսէ ողորմութեամբն Աստուծոյ յարքեպիսկոպոսէ Կոստանդնուպօլսի, և 'ի ծառայէ ծառայից Աստուծոյ՝ Տերամբ խնդալ։

"Կարծեմ ոչինչ զանխուլ է, տէր իմ, 'ի քոյոյ յաստուածասիրութենէդ՝ յոյժ արտմութիւն և անպակաս ցաւք սրտից մերոց յաղագս Հայոց և Վրաց և Աղուանից միահամուռ քոյդ հաւատացեալ հօտից. որ եհաս 'ի վերայ դառն տագնապ չարչարանաց և նեղութեան 'ի Սառակինոս իսմայելեան բռնակալացն։ Զի թէպէտ մարմնով մեկու-

(1) Մի օրի. Նիկողայոսի.

ափ եմք, և աչօք ոչ տեսանեալ զվկայանս. Հօտի ձերոյ, սակայն ՚ի լսելն ՚ի չարեն չարչարեալ պաշտօնէից ձեր, յոյժ կոծիմք անձամբք և յոգւոց երանեմք մեծաւ տրտմութեամբ: Իսկ եթէ մեք հեռագոյն ՚ի ձէնջ՝ միայն ՚ի լսելն այսպէս ընկալաք յանձինս մեր սուգ դառնութեան, ապա ո՞րչափ եւս առաւել դուք հաղորդեալքդ ՚ի չարչարանս ընդ հօտին ձերոյ, և հալածեալքդ յանօրէն և պիղծ ապստամբացն. և զի՞նչ պարտ է և պատշաճ է լինել, և կամ զի՞նչ այնչափ չարութեանն խնամոյ մխիթարութիւն. և ո՞րպէս ուղղութիւն զհետ եկեղեցւ փարատել զառաջակայն որոգայթն և գայթակղութիւն:

Արդ՝ եթէ պատշաճ թուեսցի սրբութեդ ձերում, պարտ է նախ զաստուածայինն ացերութիւն և զօգնականութիւնն յամենայն ժամ վերակարդալ, և ձեռս ՚ի վեր համբառնալ, և բոլորով սրտիւ ՚ի գութ ողորմութե կոչել զամենակալն Աստուած քոյոյ Հօտից Հայոց և Վրաց և Աղուանից, և խորհել ըզհասարակացն օգնել. և ապա մի եւս այլ բնաւ անսալ կորստեան դոցա. և փոյթ յանձին ունել ամենայնիւ յամենայնի առհասարակ զամենեսեան խրատել աստուածային գիտութեամբ, և քրիստոսաւանդ բանիւն

կապել և արձակել, որպէս և ընկալայք պատուէր իշխանութեանդ (1) խոկ յերկինս եւ յերկրի, և դադարեցուցանել զոնէ 'ի հակառակութենէ չարութեանն՝ որ ընդ միմեանս։ Եւ մի տար թոյլ մնալ 'ի վայրենի գազանութեանն, որք բարկացեալք և դիմեալք են 'ի սպանումն միմեանց. և պահեալ 'ի մարդկային մտածութիւնս, և 'ի քրիստոնէական հանդարտութիւն, որով բերի խոկ 'ի փրկութիւն մնացելոց մասանց մարդկան Հայոց աշխարհացդ, և Վրաց և Աղուանից։ Ուստի նոր տեսութիւն իմ յառաջագոյն փութացայց գրով ձեռսել տալ ձեզ սուղ ինչ պատճառ յորդորման սիրոյ (2)։ Ես ամենայնի առաքեցայց թուղթ և առ կուրապաղատդ, և առ աւագն Ափխազաց խրատելով առ 'ի լսել խրատուցդ ձերոց, և մտանել զընդ միմեանս հարումն, և նայել 'ի սէր և 'ի միաբանութիւն և 'ի հաշտ խաղաղութիւն ընդ միմեանս, և ընդ հասարակ իշխանս Հայոց և Աղուանից, և միանալ միաբան, և մարտնչել ընդդէմ ամբարիշտ թշնամեացն Ապուսիձայ (3). զի մի հասարակ ձեզ կորուստ

(1) Մի օրի․ ընկալայք պատուէր իշխանութեանդ . . . . և մի տալ թոյլ։

(2) Երկու օրի․ յորդորման սիրոյ։

(3) Ի միում օրի․ չէ՝ Ապուսիձայ։ Մի օրի․ յաղթելոյ որդւոցն Ապուսիձայ։

եղիցի, և որ ընդ ձեզ այլ ևս մերձաւո֊ րաց ազգաց սասանումն բերցի:

Իսկ արդ՝ պարտ է ձերում սրբութեանդ բերան 'ի բերան և թղթով և պատգամօք, և եպիսկոպոսօք և քահանայիւք, և որ֊ բովք արամբք գուն գործել, և 'ի բաց 'ի միջոյ բառնալ զչար հակառակութիւնս դո֊ ցա. և առանց բանի պղերգութեան հե֊ տևել յայդպիսի մատակարարութիւնս, և մաղթել դառնալ 'ի լաւագոյնն և առ փրկ֊ կական խորհուրդս և գործս. զի այդպէս միախոհք և միաբանք լինելով՝ մի ևս կարօ֊ ղասցի ինչ 'ի վերայ աշխարհիդ ձերոյ ապա֊ կանիչ չարն: Իսկ մինչ այդ այդպէս 'ի ձէնջ կազմիցի, ապա և ինքնակալ և աստուածա֊ պսակեալ թագաւորս մեր 'ի դէպ ժամանակի պիտոյից առաքեսցէ զօր բազում յօգնակա֊ նութիւն ձեզ. զի և կուրապաղատդ ևս և աւագն Եփխազաց, և իշխանք և մեծա֊ մեծք Հայոց միաբանեալք մերոյն զօրաց, մեծաւ օգնականութեամբն Աստուծոյ եւ ձերով մեծ քահանայագործութեամբդ պա֊ տերազմեալ ընդ թշնամիսդ՝ (1) կարծեցեալ կորստեան արբանեկին սատանայի վերագոյն գտցին: Յայնժամ ապա և մեղանչականու֊

(1) Այլ օր. պատերազմել ընդ թշնամին:

թիւն հակառակութեանն՝ որ ընդ միմեանս եդին ապիրատութեամբ, և դուք և մեք առհասարակ դոցա թողութի՛ շնորհեսցուք: Եւ զիւրաքանչիւրոց զիրաւունս յիւրաքանչիւրսն ընձեռեսջիք, որպէս և վայելէ իսկ ձերում սրբութեանդ. զի յառաջագոյն իսկ 'ի կարգս քահանայապետութեանն իւրաքանչիւրոց տարեալ հաստատեցի: Այսմ հետէ խաղաղութիւնն Քրիստոսի հաստատեսցի 'ի ձեզ, և սրբափայլ աղօթք ձեր եղիցի ընդ նուաստութեանս մերում»:

Իսկ ես ընթերցեալ զայս և ընկալեալ սիրովն Քրիստոսի, 'ի սոյն միտս և 'ի սոյն խորհուրդ համոզեալ հաստատեցի զԹագաւորն Վրաց, մինչեւ խոստովան եղեւ պհել երթեալ խաղաղութեան և սիրոյ և միատարր միաբանութեան ընդ ամենեսին՝ ընդ իշխանս և ընդ տեարս աշխարհիս Հայոց և Վրաց, անշուշտ յետակար երդմամն ինչ ապդրմ մասին տուեալ: Իսկ ապա լուեալ ես զտառապականս տրամութե՛ ամենայնայց՝ որ տեղացան իսկ 'ի վերայ ժողովրդեան Տեառն, առ ի սուգ սաստիկ, և ակն իմ իջոյց զարտասուս զհոսանս ջուրց: Վասն զի տեսի բարձեալ զվայելչութիւն 'ի տանէ Տեառն. եւ պղծեալ զսրբութիւն նորա 'ի հեթանոսաց,

և զի քահանայք նորա հաչեն և հառաչեն, և յոգւոց ելանեն. և ջնջել զօր տառապանաց անմխիթարական կենաց, որ երբեւ զպանց ծըգեալ էր ինձ սրտիցս. և զտկարացեալ զօրութիւն իմ՝ տակաւ ինչ կազդուրեալ և գօտեւորեալ՝ չուեցի գնալ յաշխարհն Տարօնոյ, և անդ 'ի մերձաւորաց իմոց իշխանաց և ժողովրդոց գտեալ՝ 'ի մխիթարութիւն տառապանաց վշտաց իմոց, արծարծեցաւ յիս հոգի իմ:

Բայց հակառակորդն մեր՝ որ կախեաց ըզսրբութիւն Տեառն, դեռեւս արձանացեալ նստէր 'ի մայրաքաղաքն Դվին, և մռմռեալ անհնարին դառնութեամբ, շրջէր խնդրէր հայցէր թէ զո՞ կլանիցէ: Նա ընդ բոլոր ծագս երկրի մերոյ առաքեալ զզօրս իւր սփռէր-եւս առաւել զմեղս իւր՝ որ էր 'ի ծննդեան կամութեան չարին՝ 'ի թագաւորն Գագիկ քան յայլս ամենայն հնարէր լափել. որոյ և իրազգած իսկ լեալ նորա նենգաւորակի արբանեկութեամբն չարի, և տեսեալ զեկեալ հասեալ առ դուրս մերձեալ հէնն, այնուհետեւ ապա զզաղթ ընտանեաց իւրայոցն և զկապուտն գանձարանաց, այլ և համագունդ իսկ զամենայն աշխարհակոյտ խառնիճաղանճս տէրութեան իւրոյ 'ի ծործորս

ամուր լերանցն Սոկաց և Կորդուաց չուեալ ցօղեալ բուռնեալ Թագուցանէր ։ Եւ ինքն եղբարքն իւրով և սպասաւոր գնդիւն փախերովք արձանացեալ դադարէր 'ի միջերկրայս, անդ զգուշացեալ յանգառագեղ գազանէն, 'ի պատրաստի միշտ ունելով զմիտս իւրեանց ընդ որս էր և մեծ իշխանն Սիւնեաց Սմբատ, սպասելով յաստուածուստ խաղաղութեանն ։

Բայց սպարապետն Հայոց Աշոտ դեռեւս 'ի մէջ ուղխիցն չարութեան կայր առկայացեալ, և ոչ կարացեալ կարողել[1] ըզհատուածիլն 'ի Յունաց, վասն զի միշտ 'ի վերայ նորա պհայեցուածն իւրեանց զգուշաքար պահէին 'ի ծածուկ ։ Սակայն սպարապետն գերիմաստ արտադրութեամբ ըստ կամս ոստիկանին ամենայն իրօք զկեանս իւր նուաճէր, միայն զփրկութիւն անձինն առ 'ի նմանէն անօրինեալ հոգայր ։ Բայց Աշոտ որդին Սմբատայ՝ զոր Թագաւորեցուցին Ար-աբաց արքայն և զօրք իւր 'ի վերայ Հայաստանեայցս, այր անդր յամուրս աշխարհի ուժեղութեան իւրոյ ամրութեբերէր . բազում մրցմունս և արիական քաջութիւնս ընդդէմ բոլոր Թշնամեացն մարտիւ կանգնէր և կար-

(1) Մէ օրէ. կարդէլ։

գէր, ոչ միայն ընդ Սառակինոսայն, այլ եւ ընդ Վրաց և ընդ Բուղարայ. որք այխրատոս զնմանէ խորհէին։ Իսկ իմ ապա տեսեալ զծփական և զանդորու հինից արշաւանորս, մինչ դեռ եւս էի 'ի Տարօն գաւառի, գրեցի թուղթ առ Կոստանդին կայսր Հռովմայեցւոց՝ օրինակ զայս։

« Բերաբուն և ինքնակալ կայսր Հռովմայեցւոց օգոստոս Կոստանդիանոս, յաստուածուստ պսակեալ և պերճացեալ մեծ և բարեյաղթ թագաւորք տիեզերաց՝ աստուածասէրք և բարեպաշտք. 'ի հանդիսի կենացս հասարակաց լուսաւորութեանց մերակացուք, և հանուրց եղելոցս ճշմարիտ խաղաղարարք, երկնացեղիկ ինն դասուցն համեմատք, և շինութեան հոգեւորի առիթք. այսքանեաց և այսպիսեաց ազգաց և ազանց՝ սուրգապէս առաջնորդք աստուածային, արդարեւ արմաւենի 'ի տան Տեառն տնկեալք։ Ողջոյն ձեզ և խաղաղութիւն և խնդութիւն բազում և սէր հաստատեցէ յայսմիկ կաթուղիկէ եկեղեցւոյ. որ թէպէտ և 'ի թշնամեաց սաստի գերեալ, և իբրեւ զանապատ անջրդի խոպանացեալ՝ ըստ նմանութեան մօր անզաւակացեալ յորդւոց, սակայն կայ և մնայ 'ի սէր փառացն Աստու-

ծոյ։ Ողջոյն եւս և յինէն ՚ի Յովհաննիսէ Հայոց մեծաց նուաստ կաթողիկոսէ։

«Շնորհք և խաղաղութիւն բազմասցի ընդ Աստուծոյ հօր, և Տեառն Յիսուսի Քրիստոսի։ Ահա և որ ընդ իս իսկ եպիսկոպոսունք և բովանդակ ուխտք սրբոյ եկեղեցւոյ, որք և զանձնեալք իսկ և հարուածեալք և չարչարեալք և հալածեալք եղեալք ՚ի մահարիթ և ՚ի նենգաւոր չեչոյն Ամաղեկայ, որ բղխեացն զմարդադանախանձ (1) չարին դժար մախանսն. եւ ընդ վայրենի մոլորութեան իւրոյ անղեաց ՚ի մեզ զամպրոյ դառնութեան և ըղորոմնութիւն բարկութեան վրիժուց անհնարին։ Սակայն մեք կայցուք յանձինս մեր զշնորհս ուրախութեան և սիրոյ Տեառն. և ընդ որում առաքեալն Պօղոս, նախ քան զամենայն աղաչացուք աղօթս մշտնջենաւորունս և պաղատանօք աղերսալից, և խնդրուածս հաշտարարս, և գոհութիւնս արժանընկալս յաղագս անյաղթ և ինքնակալ և աստուածապսակեալ թագաւորացդ. կեալ ձեզ յամայր ամս ընդ պտղոյ արդարութեան կենացս, և ճշմարիտ խաղաղութեան երկնաւոր թագաւորին, և ընդ վայելուչ և գեղեցիկ ոսկեզերաբնակ բնակութեան պայա-

(1) Մի օր. մարդախանձ։

տանդ կայսերականի ։ Նա զի պատրաստաբար և հանդարտաբար եղիցի գնալ ձեզ 'ի խորհուրդս կենսակիրս և աստուածամերձս, և ամենայն աստուածպաշտութեամբ և նազելի սրբամտութեամբ և սուրբ ուրախութեամբ և մեծաւ խնդութեամբ ծաղկեալ էտեալ ձեզ զկէս հանդիսի աստուածայնալուչ հանդստեանն ձերոյ․ ըստ որում և ընկալայք (1) իսկ պարգեւ 'ի բարեսիրութենէ այսոր ձերմէ ըստ արժանի քաղցրաբարոյ պետութեան և առաքինազօր կրօնից ձերոց․ որով հաւատացեալքդ (2) իսկ էք և սիրուն․ և սպառազինեալ ես ընդ ա՝ 'ի հաստատութեան(3) վերժուց ամբարշտաց ։ Նատածոյ ասպատաւոր և մեզ 'ի բարիս բարեացապարտ և խըղճակալ քրիստոսապաշտեալ կայսր Յուստինիացւոց․ զոր այժմս համարձակեալ հարկեցայ անցանել հրաշափառապէս պատմութեամբ ընդ արկածս նեղութեան՝ որ հասին մեզ․ յաղագս մերոց տարակուսելոցս է՝ վասն որոյ և խօսիմք իսկ ։ Խորհուրդ խօսողացս 'ի ձեզ հայցին յուսով խնդութեան, և այն ես մերձով և հեզիկ ոգւով և ուսանք իսկ՝ եթէ մի

(1) Մի օրի․ ընկալայք ։ (2) Մի օրի․ հաւատեալ ։

(3) Այսպէս ամենայն օրինակք մեր․ իսկ ըստ այլոց՝ սպառազինեալ ես ընդունի զհաստատութիւն ։

որ լուիցէ արտաքոյ զբարբառ նորա. վասն զի աստուածամերձ լսելիք ձեր ոչ ձայնի կարօտանան առ 'ի զգալ, քան թէ երկնային իմաստութեանն 'ի ձեզ տպանալոյ, 'ի շարժմանէ նորին ճանաչել զհայցեալն:

“Նոյն արդ՝ շնորհս ունիմ այնմիկ որ պատրաստեալ զօրացոյց զօգտակարն և զինքնակալ թագաւորաց յաղթութիւն մեզ: Վասն որոյ և զգացուցանեմ զհայթայթանս համբաւոյ նեղութեանս մերոյ 'ի ներքոյ լըսելութիւնդ բարեպաշտացդ: Վասն զի յամենայն զօրութենէ իւրմէ յուզեցաւ 'ի վերայ մեր մախանք գազանականք թշնամեացն ճշմարտութեան, և իբրեւ զանգղեխ չարամախաչ տամփսօք յանդգնեալ յարձակեցաւ յանպատ առագաստ հարսին եկեղեցւոյ՝ առ 'ի յապականել զժառանգութի Տեառն, և աղծել զտաճար սուրբ նորա. այլ և յարուցել 'ի կռխումս և 'ի կործանումս և յոլկծումս, և 'ի կորուստ ժողովրդեան Տեառն, և ծառայելով ունել զնոսա Իսրայէլ, և աւերել (1) զտեղի փառաւոր անուան նորա:

“Նոյն քանզի յայտնի էր ամենայն ազգաց սպահանական պարիսպ ամրութեան երկիւղի ձերոյ ընդդէմ թշնամեացն, և 'ի հովանի

(1) Մէ օր. աւարել:

թեւոյ ինքնակալացդ պատրաստաբնակու-
թեամբ կայաք որպէս 'ի վայելուչ քաղաքի.
յայնժամ ապա և ապագաստ Հարսին եկե-
ղեցւոյ ոչ աղտեղացաւ 'ի բնակողէն Կեդա-
րու, որ ատեացն իսկ զողջոյն սրբութեան[1],
և բռնութիւն մարտակցին բելիարայ զխա-
ղաղարար փեսայն ոչ կարաց հեռացուցա-
նել: Իսկ իբրեւ անփոյթ գտաք 'ի ջատա-
գով լինել ձեր, և զանխուլ եղեւ թոյնք
դառնանկալ օձին Պանոյ յիրաւադատ մե-
ծութենէ, և ոչ խնդրեցաւ պարտապանու-
թիւն վրիժուց չարախօսին մերոյ, դարձեալ
միւսանգամ սկսաւ անիծեալն սատարապարտ
ատելով զեռալ սպրդել՝ զանձն 'ի ներքս ար-
կանել 'ի հոգեւոր ցանկապատ յայգեստանս
Տեառն զօրութեանց: Նա հուրն որ երբեմն
արհամարհեցաւն և չիջաւ, սկսաւ վերստին
արծարծիլ, և բոցակէզ հրդեհս մեծամեծս
գործել: Նա գործողք խարդախք գտան քրի-
ստոնէական հաւատոցս որ 'ի Քրիստոս,
և յարուցեալ հալածանս 'ի դէմ եկեղեցւոյ
սրբոյ, արարին իբրեւ զխուժս մոգապահաց,
և իբրեւ զանտառս մայրից՝ փայտատով կա-
տորեցին զդրունս նորա, և այրեցին 'ի հուր
զսրբութիւն Տեառն, և պղծեցին յերկրի

(1) Մէ օրէ. զաջոյն սրբութիւն:

զխորան անուան նորա, և զենլին զենումն անօրէնութեան, և զոհեցին զոհս պղծութեան 'ի յարկս արդարոց, և արհամարհեցին զխոստացեալս 'ի Տէր Աստուած. և 'ի կերակուր գազանաց և 'ի գէշս թռչնոց երկնից արկին զդիակունս մարմնոց սրբոց Բարձրելոյն. և տարապարտ արիւնք կղերաց եկեղեցւոյ իբրեւ զջուր հեղան շուրջ զԵրուսաղէմաւ։ Այլ և քաջութիւնս պատերազմաց Յեռաց լքուցեալ սպանմամբ մեծաւ և արեամբ թօթափեցին. և զնախարարութիւն Թորգոմեանս ազգի՝ զքաղաքականս և ընդեղձուկս առհասարակ վարատեալ փարատեցին դառն սաստանմամբ. զոմանս մատնեալ 'ի բանտ և 'ի շղթայս. և յանտանելի մետաղս չարչարանաց, իսկ զոմանս ծախեալ ծարաւի սրով. և զայս չարաշուք գժտողութեամբ գերեալս վտանգաւորս լինել. եւ մնացեալքն 'ի չար արքանեկութենէ չարացին՝ մեծամեծք և փոքունք ցան և ցիր ցնդմամբ սփռեալք ընդ երեսս երկրի, ղօղեալք և թագուցեալք 'ի լերինս յայրս և 'ի փապարս, մերկութեամբ և սովով և սառնութեամբ և դողմամբ ահի, և դառնաշխատ քրտամբք յերկունս մահու վտանգեալք, և իբրեւ զխուփս ինչ 'ի հողմոյ տարաբերեալք՝

դանդաչեն իբրեւ զկիսամեռ 'ի վտանգէ նեղութեանց ։ Այլ յայսմ ամենայնի ձեռն Աստուծոյ ոչ վաստակեցաւ զբազմախողխող երկաթն արեանք արբուցանել. զի 'ի նենգաւոր ընչոյն թւրոյ մահ բղխէ յամենեսին. զոմանս կոտորեալն եւ մահուցու դեղոց արբուցմամբ 'ի ծածուկ խարդաւանէ. իսկ զոմանս հրկիզութեամբ առհալթեալ մահէ. եւ զայլս հեղձամղձուկ սատակմամբ վճարէ. եւ զոմանս սրախողխող դառնութեամբ տապաստ արկեալ, մինչեւ 'ի այանելոց անտաքցեալ եղեն հիմունք երկրի մերում։

«Ո՞չինչ բան այս աստ յաւելուլ բերից յաղագս Սմբատայ Բագրատունւոյ, եւ բազորից արեւելեայցս գլխաւորի. որ հոգեւորապէս արժանացաւ անուանիլ 'ի ձէնէ որդի ձեզ ծառայն ձեր. զի առ բարեգործն այն եւ խնամակալն եկեղեցւոյ եւս շնորհատուոյ բան առ ամենեսեան գտաւ չար թշնամին։ Ան զի ըստ մեղաց մերոց մատնեցաւ խնամածուն այն հօտին Քրիստոսի 'ի ձեռս անզգամին եւ ամբարշտին, եւ վտանգեալ տագնապեալ չարաչար չարչարանօք զնա, որ 'ի ծերութիւն պարարտութեն հոգեւոր խաղաղացուցեալ էր զԱրամեան ազգս յամենայն վտանգից չարի՝ 'ի սադրելոյ ինքնակալ Թագաւորացդ.

և ժողովեալ զբանաւոր հօտս Քրիստոսի ՚ի փառս և ՚ի գովեստ Աստուծոյ ։ Զի յարգելանս բանտից և ՚ի խաւարային տեղիս և ՚ի մեհս անհնարինս և յանձուկ վայրս , և յաղէտս չարաչարս տագնապեալ տառապեցոյց զծերութիւն նորա ։ Յետ որոյ ապա և դառըն կշկոծմամբ , և փութաման տանջանօք մատնեաց զնա ՚ի սպառումն սրոյն ծարաւոյ. և առհասարակ մեք զրկեալ մնացաք ՚ի խնամոց հաւատարիմ ծառային ձերոյ ։ Եւ ահա այժմ մնամք ՚ի ներքուստ , և արհաւիրք ՚ի վերուստ տագնապէ զմեզ. և խորհրդական որդիացեալն ձեր չէ ՚ի միջի , որ խրատէրն և յորդորէր ՚ի մարտս զամենայն ձեռն պատերազմողաց ։ Սեդեկիա ՚ի գերութիւն վարեցաւ , և Զօրաբաբէլ ոչ ուրեք է , որ նորոգէ զպետութիւն գղրդեալ աշխարհիս Հայոց ։ Ազայէլ հրաւիրեալ է ՚ի կոտորել զԻսրայէլ , և պատերազմ զմեզ շուրջ պատեալ և պաշարեալ . և Մակաբէ խարդաւանեալ ՚ի դահճաց չարագունից՝ ոչ զօրէ փըրկել զմեզ ՚ի վտանգէ նեղչացս ։ Անտիոքոս բռնադատէ թողուլ զքրիստոնէական օրէնս կարգաց մերոց . և Մատաթիաս չէ կենդանի՝ որ ընդդիմակռուէ ընդդէմ չարամարտ բըռնաւորին ։ Եւ այսպէս եկեղեցի Քրիստոսի

խոպանացեալ եղեւ և իբրեւ այրութեամբ
ելին անխնամ և անհոգացող մնացեալ, և
լռեալք 'ի տօնից տարեկանաց. եւ հօտք
Քրիստոսի միանգամայն իսկ զրկեալք 'ի հայ-
րենի օժանդակէն, և 'ի սեփհական վերա-
կացուէն. և եղկելիք և աշխարելիք մնացեալ
աշխարհս արեւելեան միշտ չարժամանք հե-
ծէ. և աշխարանս ողբերգական արտասուաց
բերէ զյաւէտախաղաց արկածս չարիս այս-
միկ հասելոյ կալելոյ զմեզ, և զգայութիւն
դառն կստտանացս:

"Զինչ ապա զիմ նուաստագունի Յով-
հաննու նեղութիւնս բերից 'ի համար, զի
ոչ իսկ համարիմ զանձն արժանի արդարոցն
լինել չարչարակից. սակայն որ ըստ մեղաց
իմոց սաստկացաւ 'ի վերայ իմ վտարանդումն
և նեղութիւն, և փրկութիւն 'ի փորձու-
թեանցն որ կամաւ զիս առաջի եդի՝ հարկ
առնէն այսուքիկ ըստ Պօղոսի պարծել զտկա-
րութեանն. զի ժուժկալութեամբ ոսկամբ (1)
ընկալեալ զփառանդաւորսն՝ բազում տառա-
պանօք տագնապեցայ 'ի ձեռաց որդւոցն
Հագարու, խուարայրին բանտիւ և ընկեցիկ
լինելով 'ի գուբ տղմոյ, և կապեալ երկաթի
շղթայիւք, և գելանիւ և դանիւ, և այլ ևս

(1) Ամենայն օրէ. ոանձինն ոմանք.

պէսպէս հնարիմացութեամբք, որ բաւական էր քաղել հանել զշունչ իմ յինէն։ Նոյն թէպէտ և այր մի տառապեալ եմ ես, սակայն յոյսն մեր Քրիստոս, որ զօրութեամբ ճանաչի և ոչ տեսլեամբ պատմի, ապրեցոյց զիս 'ի մարմնոյ աստի մահու, և դարձոյց զգերութիւն իմ և որք ընդ իմն են որպէս զուղխս 'ի հարաւոյ, և արտաքս կորզեալ եհան 'ի ժանեաց վիշապին, և ըստ Եղիայի փախըստեայ եղէ 'ի Սարեփթա Սիդոնեան 'ի մարգարէասպանն Յեզաբելէ, և ըստ Պօղոսի վանդակաւ կախեցայ ընդ պատուար պարսպին Դամասկեայ, և փախեայ յազգապետէ Արետացւոյն։ Եւ կրեալ զայս ամենայն ըստ արժանի իմում, և ըստ տէրունեան հրամանին հալածեալ քաղաքէ 'ի քաղաք, հասեալ կամ առ դուրս հզօրագունից եւ մեծագունից ինքնակալ թագաւորացդ, 'ի հեռաստանէ աստի խնդրել ողորմութիւն 'ի բարեպաշտին և 'ի ներողամիտ խնամածութենէդ ձերմէ. ոչ միայն ինձ, այլ եւ բոլոր Նաքանազեանս գրոհի. շահել ձեզ զորդիս սպանելոց ծառայից ձերոց, որք առհասարակ արբաք զբաժակն բարկութեան 'ի հարաւային բռնութենէ. արբաք և քամեցաք զմրուր սրտմտութեան և զբաժակ խռովու-

թեան ՚ի թշուառացուցչացն մերոց ։ Այլ աղաչեմ զայն՝ զի իմաստութեամբ և քաղցրաբարութեամբ շնչոյ ձերոյ համբարձջիք զձեռս ձեր ՚ի վերայ ամբարշտութեան թշնամւոյն մինչեւ իսպառ, և փրկեսջիք զմիձակ ժառանգութեան ձերոյ, և լցուցանիջիք ըսփիւռ ծախիւք զտաճար մեծվայելչութեան Աստուծոյ բարձրելոյ, որ գերեալ և կապուտ կողոպուտ մնաց յապստամբացն աստի ։ Այլ հալածեալ զգաղթնս չարաչարս, և զգայլս յափշտակողս, և զհեթանոս ապստամբս, և զբարբարոս վայրենիս, նուաճեսջիք ընկողմանս զայսոսիկ՝ զոր ստացայք ՚ի սկզբանէ ՚ի ձեռն քաղցր օրինաց ձերոց, որ լի է ողորմութեամբ ։ Այլ թօթափեսջիք զմեզ ՚ի հաղոյ աստի՝ յոր և մածան մէջք մեր. և լուծէք զլուծ ՚ի պարանոցէ մերմէ, որ ՚ի ձեռն բռնակալիս այսմիկ ծառայեցաք մինչեւ ՚ի մահ. և սրբեսջիք զայս աշխարհ և զքաղաքս, որ ՚ի հակառակութիւն և ՚ի նախանձ արկաւ ՚ի պղծոց և ՚ի կորուսելոց, և ՚ի չարաչար իշխանաց ատելեաց Աստուծոյ. և ըստ մարգարէականին ժառանգեսջիք զերանութիւնն, հատուցանելով դստերն Բաբելացւոց թշուառականին, զոր եւ նա մեզն հատոյց ։ Վասն զի և ըստ սմին իսկ պատճառի ըմա-

ընաց իւր Աստուած զանձին բարեյաղթ թա-
գաւորացդ, զի որք սիրեն զԱստուած 'ի ձե-
ռն բարեխօսութեան կուսից ձերոց, խա-
ղաղութիւն տացի նոցա, և խաղաղաւէտ
կենդանութեանք զպարտականս ծառայու-
թիւնն Հաստուցեն ինքնակալացդ, և խաղա-
ղութեանք ժամանեսցեն առ Աստուած:

"Եւ այսօրինակ փառս Հասարակացս բանա-
ւոր Հօտի Հաւատացելոյ ինձ 'ի Տեառնէ
մաղթանք ակներևանաց առաջի ձեր եդաւ:
Իսկ անձին առանձին այս ինչ է, զոր առ
քրիստոսասէր և բարեյաղթ թագաւորդ-
ունիմ առել, նեղութիւն և անձկութիւն,
Հալածանք և չարչարանք, և սով և սուր և
գերութիւն, և Հայրենային բռնութեամբն
ամենեքեան տարագնացեալ զծերութիւնս իմ:
Արդ՝ 'ի գետս Բաբելացւոց նստեալ տոչո-
րիմ բազում արտասուօք, յորժամ յիշեմ ըզ-
գերութիւն Սիոնի, և 'ի խնայելի ողորմած և
ինքնակալ կայսերդ ապաստանեալ Հասեալ
կամ առ ոտս ձեր, Հայցեմ, ոչ զոր ոչ լեալ (1)
նախ քան զայս բնակութիւն և կայանք ա-
թոռակալացն սրբոց որ յառաջ քան զիս էս-
ին, այլ զոր 'ի սկզբանն Հաւատոյս 'ի Հոմանէ
թևոց 'ի նախնեաց ձերոց ունէին զբնակու-

(1) Մի օրի. եղեալ: Երկու օրի. ելեալ.

թիւնս. և [1] յապահովացեալք 'ի զօրութենէ տէրունեան սուրբ Խաչին, և 'ի նախախնամող ողորմութենէ անյաղթ Թագաւորացդ, արածէին անմեհեր փութով զհաւատացեալ հօտն՝ յիւրաքանչիւրում ժամանակի անզբաղապէս սրտիւ և աներկեւոն հաւատով: Օր և ես Ինքն զնոյն հայցեմ՝ բարեխօս ունելով զկենսատու Խաչդ փրկական, մի զրկեր զիս և որ ընդ իս են՝ յերկրպագութենէ աստուածընկալ Էջմնիդ, և հանդիպամին աստուածակարդ Թագաւորացդ: Եւ անձուկ յոյժ ունիմ 'ի բազում ամաց գալ առ ձեզ. Թէպէտ և արգելեալ մինչեւ ցայժմ: Այլեւ զկայանս հանգստեան կենաց խաղաղականաց ընձեռել խնդրեմ՝ ըստ օգոստական ողերձ և պանծալի հզօր Թագաւորութեանդ, զի Թերեւս յիմացելականաց աստի արտաքս զերծեալ, և 'ի հովանի Թեւոց ձերոց ամրացեալ և առկայացեալ՝ արածեսցուք որ 'ի մեզ հօտս է Աստուծոյ. և առ հասարակ մշտնջենաւոր աղօթս մատուցցուք առ Աստուած վասն խաղաղութեան և ապահովութեան և բարեհաստատութեան Ինքնակալ և տիեզերաքարոզ Թագաւորացդ. և օգնականութեամբ ձերով մեծաւ և փառօք և

(1) Մի օր. և ապա հովանացեալք:...

չնորհօք պատրաստեսցուք զՀայաստանեայս ազգս , ժողովուրդ կազմեալ Նախ Տեառն և ապա ձեզ՝ կամօքն Աստուծոյ ։ Վասն զի յայտնի է այս ինչ առաջի փառաց աթոռոց ձերոց , զի եթէ Նուազ հովիւս հօտից բնակիցեմ ընդ հովանեաւ զօրափառ սուրբ Աջանդ , և ընդ խնամակալութեամբ Ինքնակալ Թագաւորացդ , ո՞րչափ եւս առաւել հօտս Աստուծոյ և ժառանգութիւն Քրիստոսի ըղհետ շաւղաց իմոց հետեւին , և հորդանտան ընդ խաչին արօտի այդմ տիեզերական աշխարացդ բանականաց եղանել (1) , և առհասարակ հետազօտել ընդ Հռովմայեցւոցդ իշխանութեամբ որպէս Իտալիա (2) և ամենայն Ասիա ։ Իսկ որք ոչ գայցեն , և արտաքս 'ի գաւթէ հօտէ Տեառն եղանիցեն , այնպիսիքն կրեսցեն զդատաստանս 'ի մէնջ (3) ո որք և իցէ , և ես անպարտ և արտաքոյ մեղադրութեան մնացից ։

"Եւ արդ՝ երկնաքերձ և լուսաշաւիղ ձառագայթաւէտ սուրբ Աջանդ , որ արեգակնապէս ընդ երկնայնոցն 'ի մէջ տիեզերական և փառաւոր քաղաքիդ այդր բնակեալ է , զընակութիւն պալատան ձերոյ

(1) Մի օրի . ընդ եղանել ։ (3) Մի օրի . 'ի ձէնջ ։
(2) Ոմանք յԻտալիա ։

փրկեսցէ յամենայն կորստենէ (1) ապականացու հնարից չարի. զի ոչ մերիկ ինչ ծովանման վերացաւ 'ի ձեռն ծփական ալեաց օտարհինից, և ոչ ուժգին հողմն ինչ անօրէն արձակիցի և ածիցէ ձմեռն ապականութեան. և ոչ կոհակք լեռնանմանք և ոստխք գովելեաց կարասցեն երկիւղիւ շարժմանց լուծանել կամ դրժել զարքայդ քրիստոսաւանդ, որ 'ի ծագաց մինչև 'ի ծագս տիեզերաց բարձրացեալ և փառաւորեալ է անուանդ ձեր: Այլ մեծապէս խնդասջիք և ուրախ եղիջիք 'ի գեղեցիկ հանգստեան ձերում լռութեամբ խաղաղութեան. և ցնծասջիք 'ի փրկութեան ձերում, մի եւս սասանել յողորմութենէ Բարձրելոյն. և ժամանեսջիք յօրհնութիւն քաղցրութեան նորա, որ պսակեացն զձեզ հրաշալի փայլուն պսակաւ 'ի քարէ պատուականէ. և բարձրասցի արդարութիւն ձեր 'ի զօրութեանն Քրիստոսի. և մեք փառաւորապէս օրհնեսցուք զանուն քո, ինքնակալ և բարեյաղթ բարեացապարտ Թագաւոր, օգոստոս Կոստանդինոս կայսր Հռովմայեցւոց»:

(1) Երկու օրէ. ամենայն կորստեան: Մի օրէ. յամենայն կորստեան:



## ԳԼՈՒԽ ԾԵ.

Յաղագս գնալոյ Աշոտոյ արքայի առ կայսրն, և նուաճմանն Յուսփայ յերեսաց արքային Գագկայ:

Իսկ երբև ընթերցեալ եղև այս թուղթ առաջի կայսեր, և ՚ի միտ էառ տակաւին՝ որ դեռևս շուրջ զմեօք էին զեղեալ հարաւային չար արկածք, և զդղրդումն և զկործանումն մեր, և դարձեալ զելս կենաց բարեացապարտ և երջանիկ արքային Սմբատայ, զոր մարտիրոսական հանդիսի վիճակացն համարէին լինել վերընկալուչ. ապա փաղփաղակի առաքէ ՚ի խնդիր նմա, և թագաւորելոյն Աշոտոյ արքայորդւոյն՝ զօրն Թէոդորոս Վասլիկոս բազմահարկի պատուասիրութք, և ընտանեբար սիրոյ հարազատութեամբ. ընդ ուշի եւս կապեալ զսէր կատարման հօր իւրոյ Լեւոնի՝ որ ընդ հօր նորա Սմբատայ էր. և փութացուցեալ երթալ ՚ի միասին տեսանել և տնօրինել զհասարակաց օգուտս: Եւ վասն զի արքայորդին Աշոտ էր յամուրս տէրութեան իւրոյ դարձեալ դադարեալ, իսկ ես ՚ի Տարօն գաւառի զետեղէի. վասն այնորիկ նախ առ իս չուեաց եկն Վասլիկոս: Իսկ իմ՝ ապա զհրաւիրումն երթալոյ նմա

յանձն առեալ, առ արքայորդին Աշոտ յե-
նէն յուղարկեցաւ. որոյ երթեալ և զկայ-
սերական հրամանն առաջի ընծայեալ, յօ-
ժարական կամօք կազդուրեալ Աշոտոյ՝ չուէ
գնայ վաղվաղակի զճանապարհայն. և բա-
զում հիւրամեծարութիւնս և արքայական
պատիւս յիջաւանս այնր պողոտայի գտեալ։
Երթայ ապա 'ի հանդիպումն մեծի կայսերն.
և անդ առ 'ի նմանէն մեծավայելուչ գահիւ-
պատիւ առեալ քան զամենայն գահերէցս՝
ընկալեալ զփառաց փարթամութիւն, ոչ
իբրեւ զայլս ոմանս պատուաւորս, այլ իբ-
րեւ զԹագաւորազուն բողբոջ. գրեթէ ընդ-
իւրով իսկ կայսր զնա հարթայարմար ցու-
ցանէր, եւ Թագաւորական հրահանգաց
հանդիսիւ ճոխացուցանէր։ Ապա միանգա-
մայն իսկ և ուստր զնա մարտիրոսի և որդի
սիրելի կայսր իւր անուանէր. և զարդարէր
զնա ծիրանազգեաց փառօք, և երեւելի ու-
կեհուռն հանդերձիւք, և ոսկետառուն վա-
ռիւք. և կամարակապ ընդ մէջ ածէր, ոչ
միանգամ կամ երկիցս, այլ բազում ան-
գամ նոքա զայս արարեալ, և երիվարս սրա-
վարս և ահիպարանոցս գեղեցիկ զինուք և
զարդուք առաջի կացուցանէին. և այլք եւս
բազում ընծայս և սպասս և բազում կազ-

մուածս ոսկեղէն և արծաթեղէն նմա պատրաստէին։ Այլ և իւրոցն եւս նախարարաց զկնի տարելոցն ոչ սակաւ պատիւ պերճութեան տային, և բազում հռոգս և առատաձեռն ռոճիկս նոցա յարդարեալ կազմէին՝ մինչեւ 'ի դարձ նորա այսրէն։

Իսկ իմ չուեալ գնացի 'ի գաւառն Գերջան, և ամսօրեայ աւուրս ինչ 'ի նմա զետեղեալ, թէպէտ և ստէպ ստէպ հրաւիրանս կոչէր սիրալիր կամօք երթալ 'ի պալատըն առ կայսր, սակայն ես ոչ կամեցայ, ըզմտաւ ածեալ թէ՝ գուցէ գտցի ոք, և ընդակամբ հայեսցի զանդ երթալն իմ 'ի քաղկեդոնիտոն յարակցել ինձ համարեալ. և ապա այսպէս ոչ կամեցայ գնալ 'ի գայթակղութիւն մտաց տկարաց։ Ապա ըստ ըղձակերտ իմոյս կամաց չոգայ յայրն սուրբ, յորում և նախ իսկ սուրբ կինն Մանի, և ապա զկնի երից երանեալ Լուսաւորչին մերոյ 'ի նմա բնակեալ. ուր և տկար մարմնովս զանմարմնոցն բերեալ ինքեան զվարս՝ յաղթեցին բռնութեան կարեաց, և անդր քան զհրամանն զհանդէս առաքինութեան լցին սրբափայլ կրօնիւք կենսականօք, և անհամեմատ երանութեանցն արժանացեալք փառաց պարծանօք պսակեցան 'ի Քրիստոսէ։

Տեսի և անդ փոքր ինչ փորուած այրս 'ի ծոր-ծորս քարանձաւի միոյ դժուարամատոյց դը-ռամբք, և անհամբոյր առ 'ի բնակել անդ քարաժեռ խոշորութեանն. յորում և տէ-րունեան սեղան 'ի նմա կանգնեալ միշտ Քրիստոսի բնակելոցն 'ի նմա նուիրականաց պատարագաց:

Զկնի այսր ահիւ սրտի չոգայ կացի ընդ քարաժեռ վիմին, յորում և լուսաւորու-թեանս մերոյ առիթն՝ երկօրեայ 'ի նմա առ-կացեալ սպասէր կատարման որքոյն Մանեայ. և անդ ամենազօր տէրութեանն Քրիստոսի երկրպագեալ՝ չոգայ 'ի բարձրահամ աղբերին. յորմէ զովացեալ սուրբքն վիմէին 'ի տապոյ քրտնաճուր երկոցն՝ և հոգեւոր մշակու-թեանցն. որ և երաստոյ վիմօք պարփակեալ շուրջանակի, և դրամբք պատեալ (1). և յո-րոյ տեղւոյ մատուռակեալն իսկ էր յարբե-ցուցն իւր սուրբ և ամբիծ ձեռն Գրիգորի: Ի նմին տեղւոյ և ես թշուառականս ա-փոյց (2) կամօք իմովք արժանի գտայ ճաշակել ջուր յաղբերէ փրկութեան 'նորոգողին ըղ-մեզ, զորոյ և զաւթոռն իսկ ընկալայ, երանի

(1) Երկու օրի. պատուեալ: Այլ օրինակ մի 'ի կասանայս գրել՝ փակեալ:

(2) Այսպէս ամենն գրոց օրինակի: Մի օրի. ափեյց:

թէ և զօրինակն ։ Ո՜ւր հող օրհնութեան և ՚ի փլուզեալ դարակէն, յորում պատուական գանձն հոգեւոր ՚ի հոլուաց էր ծածկեալ. յորոյ վերայ շինեալ էր եկեղեցի նախ քան զայս խնմ հրամանաւ ՚ի մահարձանաց ինչ կրով ձուլածոյ ։ Տեսի անդ ՚ի ծործորս եւ յամուրս քարանձաւաց բնակեալ՝ սոս կուսակրօնս, խարազնազգեստս, գետնախըշտիս, բոկագնացս, խոշորաճաշակս, մշտամռունչ յաղօթս և յաղերսալի պաղատանս, աշակերտաց արդար վարուց, և ծնունդք առաքինութեան ։ Այլ սոքա ոչ թերեւս միախուռն (1) ՚ի միասին բնակեալք, այլ ցան և ցիր առ ստորոտով լերինն կալեալ կայանըս, որք եւ բազմաշխատ քրտամբք երկոց խուրաքանչիւրոց զհարկաւոր պէտս մարմնոյ վճարէին ։

Այլ իմ տալա այսպէս ՚ի նոցանէն օրհնեալ՝ չոգայ ՚ի գիւղն Թորդան ՚ի տեղի ըղբօսանաց պարտիզկանն սրբոյն Գրիգորի, յորում գանձք իմաստութեան և անմահութեան ծածկեալ կան Աստուծոյ՝ կենդանի ոսկերք սրբոյն. որք անցին ընդ կարգս աշխարհիս ամենայն ճշմարտութեամբ, և յանմատոյց լուսոյն փայլեցին իբրև զարեգակն,

(1) Երևի գր. միախառն ։

և հրով հոգւոյն վառեալք ջահազարդեցան զամպարափայլ անշէջ լուսով 'ի փառս Աստուծոյ ։ Այլ անդ երեկօթս արարեալ. եւ երկրպագութիւն տէրունեան հատուցեալ. հատի նշխարք 'ի ծառոյ անտի հացւոյ՝ զոր սրբոյ Լուսաւորչին էր տնկեալ բուրովք ձեռօքն ։ Այլ ապա ընդ կրունկն անդրէն 'ի լեռնակողմն 'ի մենաստանսն դարձեալ, եւ ամիսս իբրեւ ինն ընդ նոսքն ազօթակցեալ հրապուրեցայ 'ի շողոմարար շոգմոգեալ բանից մերոց Թագաւորացն, և դաւաճանեալ 'ի խոստմանց նոցա բարեաց որ ըստ Աստուծոյ՝ դարձայ յերկիրս Հայոց ։

Ոչինչ ապա ըստ խոստմանն հատուցումն ինչ 'ի նոցանէն տեսեալ. այլ նանրացեալ խորհրդովք և խառնարագած միօք խոտորեցան զկնի ապիրատութեան, և դղրդեալ սասանեցաւ ողորմելի աշխարհս մեր 'ի մերոց աստի ։ Այլ եւ կրկին կարօտէի տարաբնակ լինել 'ի բնակութենէ աստի, և առ նոյն սուրբ յայրին բնակել, թէ մահ անգամ այս կատարել. այլ այս եղև Տէր կամեցի ։ Բայց մինչդեռ քարքն դառնաշունչ 'ի Դվին քաղաքի որջացեալ կայր, և համակէր միշտ 'ի չար խորհուրդս խածանել (1) չար թունօք

(1) Մէ օրէ. խանչել ։ Երկու օրէ. խաչանել ։

խորհէր զԹագաւորն Պապիկ, կամ թէ համագունդ ինչ զամենայն նախարարսն ընդ նմա, և արկանել ապստամբութեան յեղծումն և յապականութիւն: Այլ նա յուսացաւ ՚ի Տէր, ոչ ահեաւ ինչ ձայն ամբոխի աղմկաւորաց շփոթի ՚ի վերայ նորա ածեալ բըրդեալ(1) հեղոյր կուտակելոց և գործակալաց նորա, եւ զօրաց և զօրապետաց. քանզի այս մարզէ Հերայ և Զարեւանդայ, և Նախճաւանայ. և դրեթէ ՚ի բազում աւուրս աստպատակաւորաց նորա և զօրաց և զօրապետաց ընդդէմ նորա զինեալ մարտիքաջութեամբ՝ արեան ճապաղիս հեղոյր:

Իսկ ապա զայն ամենայն ոյժ պնդութեան տեսեալ չար ստրկանքն, որ իբրեւ զանարգագ և զարհամարհեալ միշտ առ ՚ի նմանէն առատն հարեալ լինէր, խանդացեալ ընդ իրսն, և զայրացեալ մռմռեալ յոյժ, անցեալ դիմեալ երթեալ դիպէր առ ինքն զանթիւ զօրաց կարաւանս: Գնայր դայր հասանէր ըղկողմանքք Մարդաստանի և Տոսբ գաւառի. մեծամեծս փքայր ընչել ջարդել ջախել հարկանել խորտակել բաղկել(2), և ՚ի միջոյ ՚իբաց կորուսանել, ՚ի սուր սուսերի մաշէր

(1) Երկու օրէ · բարդեալ:
(2) Մէ օրէ · բաղկել:

միանգամայն իսկ զտոհմ եւ զզարմ և զգա-
ւակ։ Իսկ իբրեւ զայն ամբոխ բազմութեան
տաճկաստան զօրացն տեսին՝ տարմաբար ե-
կեալ հասեալ ՚ի վերայ, եւ պնդեալ ածեալ
զիւրայոց եւս ռամկաց թուլասրտից ձեռս լը-
քեալս առ ՚ի պատերազմել, և եթէ ոչ ու-
ղիղ գան ՚ի հարթ հաւատարմութիւն, այնու-
հետեւ առաջի ածեալ զոչ կարող կատարել.
և կալ ընդդէմ նոցա պատերազմաւ. ապա-
չուեալ գնացեալ առ գաղթն, և ես զնաւս
զգուշաբար իւեն ամբարպահեստ առնէին։ Եւ
ինքեանք առ հասարակ զմի միաբանութիւն
զինուորեալ. և վառեալ ՚ի զէնս և ՚ի զարդս՝
ելանէին ՚ի ստորոտս ամուր լերանց և խորա-
ձորս և յամուրս քարանձաւաց. և այսր անդր
տագնապեալ տեթեւեթեալ սլացեալ երթա-
յին գային ընդ հետամնացոց թշնամեացն
զկնի նոցա։ Իսկ ՚ի տարուբեր երթեւեկու-
թեանց նոցա կոհակաց ՚ի կոհակս առ ՚ի յար-
շաւասոյր շարժութեանցն, որ ըստ Սողոմոնի՝
իբրեւ զուղս այծեմանց վազս առեալ ընթա-
նային ՚ի վերայ լերանց Բեթելայ, ոչ կարէ-
ին զկնի նոցա բերել զկռոհք թշնամեացն, և
ոչ զկամս անձանց զինչպիտոյութեան իւրեանց
կատարել։ Եւ գրեթէ իբր յափշտակութեք
քան յիմարեալք խելացնոր կարծեաք իբրեւ

ամիսս երկուս, ապա անցեալ թողեալ՝ 'ի բաց գնացեալ երթային զհարաւային կողմանցն Ոստկաց գաւառին 'ի Հեր և 'ի Սաղամաս. և անտի 'ի քաղաք Ատրպատականի 'ի տեսչութենէն Աստուծոյ։

Բայց սպարապետին Աշոտոյ անդուլ և անդադար և մշտնջենաւոր միամտութիւն ծառայութեանն ոչ յիշեցան չար բանադատին Յուսփայ, և ոչ փոխահատուցին զանխաղաղ սիրտ նորա, զի մինչ 'ի խորհրդոց չարաց ապրանէր։ Եւ իբրեւ հանդերձեցաւ նա երանել զկողմանբք Վասպուրականի, ապա զմեծ և զբարեպաշտ տիկինն ըզմայր սպարապետին և զերկուս եւս զքորս նորա ընդ կողմն Նախջաւանայ յուղարկէր 'ի Պարսս Ատրպատականի, 'ի դիպահոյզ զնոսա կացուցեալ ըստ պայմանի պատանդաց։ Զկնի սուղ ինչ աւուրց ապա և զինքն իսկ զսպարապետն Աշոտ 'ի դուռն կոչէր սուտպով սաստիկ, որոյ և վաղվաղակի իսկ չուեալ գնացեալ առ ահի ընտանեկացն, պատուասիրաբար զնա ընդունէր և առատաձեռն ռոճիկս նմա կարգէր, և պարգեւս և պատիւս նմա յարդարէր։ Բայց Թագաւորն Գագիկ և համազգունք իւր և նախարարք իբրեւ տեսին զգրահեղեղ ուխս չարին

չորացեալ ցամաքեալ և անցեալ գնացեալ՝ առ հասարակ փառաւոր առնէին զնախախնամօղն Աստուած։ Նա ապա դառնային յիւրաքանչիւր գաւառս, 'ի քաղաքս և 'ի գերդաստանս և 'ի գիւղս և 'ի տունս, ոչինչ վնասեալ 'ի հինէ չար ոսոխին, բայց 'ի սակաւուց ինչ՝ որք պարաւանդեալք 'ի թշնամւոյն ոչ կարացին ժամանել անկանել յամրացեալ գաղթն։ Նաև մեծիմաստ և բարեխորհուրդ և արդարակորով իշխանն Անձեւացեաց Տոմ՝ ոչ սակաւ զօրութեամբ մառուցանէր թիկունս օգնականութեան թագաւորին Գագկայ. և ինքն ըստ իմաստայեղց խորագիտութեանն՝ մանաւանդ թէ աստուածային իսկ այցելականութեամբ (1) 'ի բաց տարեալ մղեալ վարատէր յաշխարհէն և 'ի տանէ հօր իւրոյ զբոլոր ուխս չարութե չարալլուկ չար հինիցն առանց բանուի պատերազմաց. և յամենայն՝ 'ի հրացայտ չարութենէ հրաքորբոքն Յուսփայ ամիրապահեստ լինէր 'ի հովանի թեւոցն Աստուծոյ։ Այլ և իշխանն Մոկաց Գրիգոր եղբարբ իւրով Գուրգենաւ բազում յարդարէր ընծայէր զամ հարկի ծառայութեան առաջի Գագկայ 'ի հալածանս անդ. և ինքն խորավիհս

(1) Մէ օր. այցելութեամբ։

և դժուարաժայռ. եւ ամուր աշխարհաւն իւրով փրծանէր ողջ և ամբողջ ՚ի գերչացն նեղչաց ։

---

## ԳԼՈՒԽ ԾԶ.

Յաղագս դառնալոյ Աշոտոյ արքայի ՚ի հայրենիս իւր, և Թագաւորելոյ Աշոտոյ սպարապետի, և պատերազմին նորա, և խաղաղելոյ Յովհաննու կաթողիկոսի զնոսա ։

Արդ՝ իբրև զայս ամենայն լուեալ արքայորդին Աշոտ մինչդեռ էր ՚ի Հռովմայեցւոց տէրութեանն, ապա մեծաւ շնորհակալութեամբ և բարեխորհուրդ ծառայական խոստմամբք խնդրէ հրաժեշտ դառնալոյ անդրէն ՚ի հայրենի տէրութիւնն ՚ի կայսերէ, յայտ արարեալ նմա՝ թէ այց արար Տէր և յաջողեաց ՚ի բարութիւնս աշխարհին Հայոց ։ Իսկ կայսր Կոստանդին ըստ ժամանակի լռութեան բարւոյն սիրալիր սրտիւ հաւանեալ խնդրոյն Աշոտոյ, ապա և յոգնապատիկ պատրաստէր նմա պարգևս եւ պատիւս, և բազում կարասիս և երևելի զարդս և զէնս, և նժոյգս ոսկեղէնս և ոսկեսանձս, եւ բազում ևս գանձիւք զնա

փարթամացուցեալ, և բազում զօրավարս և զօրս Հռովմայեցիս 'ի ձեռս նորա գումարեալ՝ յուղարկէ յիւրական աշխարհս։ Արդ չուեալ երթեալ անցեալ զբազում օթեւանօք, և եկեալ հասեալ յաշխարհն իւր, զբազումս նուաճեալ 'ի հնազանդութիւն ինքեան կացուցանէր, և 'ի բազմաց նորընծայ իմն հիւրամեծարութեամբ ակնկալեալ սպասէր։ Իսկ վասն զի մեծ դաստակերտն Արզն դիւրագրաւ ընդդէմ նորա գտանէին չարութեամբ, ոչ երբէք հաւանական միտս 'ի հնազանդութիւն սակի տուացեալ. վասն այնորիկ իսկ 'ի գերութիւն Յունականացն զնոսա մատնէր։

Եւ ապա Աշոտ սպարապետին Հայոց 'ի սմին իսկ յայսմ ժամու եղեւ իսկ և իսկ դառնալ յոստիկանէն Յուսփայ, եկեալ հասեալ մտեալ 'ի մայրաքաղաքն Դւին։ Եւ քանզի խորամանկ ոստիկանն խորհրդաբար 'ի մտի եդեալ ունէր հակառակութեան 'ի մէջ նոցա արկանել, այսպիսաբար նանրական մտօք թագ կապեալ սպարապետին Հայոց, և սուսեր ընդ մէջ ածեալ՝ առաքէ յաշխարհ իւր. որ գրեթէ գիրկ ընդ խառն 'ի դիմի միմեանց հարան, ինքն և համանուն իւր արքայորդին։ Իսկ իբրեւ եկն և ետես զաշ-

խարհս առ հասարակ ապաւեալ սատակմամբ ,
և զայլս փախստականս ըրեալ , և զմնացեալսն
ցան և ցիր անկեալ և սփռեալ յօտար ազ-
գս , և սիրելի զաստակերտն իւր վանեալ
փարատեալ և գերեալ յարքայորդւոյն Աշո-
տոյ և 'ի Հռովմայական զօրացն , և զայլս
ևս զգերդաստանս նորա և զգեօղս յաւարի
առեալ . ապա այնուհետև երկաքանչիւր
նոքա իբրև զօտարածին թշնամիս ընդ մի-
մեանս 'ի գրգռութիւն մարտից մարտու-
ցեալ , ջանաջնար լինէին զմիմեանս երա-
նել 'ի հակառակութիւնս և 'ի կռիւս : Եւ
վասն զի 'ի վերայ երկոցունց նոցա թագա-
ւորական անունս կառուցեալ եդեալ էր 'ի
նախանձ չարակնութեան յաչաղման ընդ մի-
մեանս բերեալ , վասն այնորիկ իսկ առաւել
ընդվզեալ զչարէին իւրաքանչիւրոք 'ի նո-
ցանէ զիւրն խնդրելով կացուցանել : Յայ-
սմ . վայրի եկն ապա մեծ իշխանն Սիւնեաց
Սմբատ 'ի Վասպուրական կողմանէ անտի առ
արքայորդին Աշոտ , և բազում պատուասէր
և սերտ հարազատութեամբ ընկալաւ զնա ,
մեծապանծ պատուով շքեղացուցեալ : Եկն
և մեծ հայկազունն Վասակ՝ եղբայր ման-
կագոյն իշխանին Գրիգորոյ , և զնա եւս 'ի
նոյն պատիւ մերձութեան վայելչական կար-

դօք մեծարէր ։ Եւ ապա հոմանունքն երկո-քեան, որք զԹագաւորական անուն ժառան-գեալք էին, առաւել եւս սաստկացուցանէ-ին ՚ի մէջ իւրեանց զաղմուկ խռովութեան ։

Իսկ իմ ապա ըստ դիպաց ինչ ՚ի ժամ դէ-պօղ ժամանեալ եկեալ հասեալ ՚ի հեռաս-տանէ հալածանացն, և տարուբերեալ եւ համոզեալ ՚ի մէջ նոցա, զվայելուչ եղբայ-րական լծակցութիւն պատրաստել ՚ի մէջ նոցա ջանահնար լինէի. ըստ որում ապա յունկնդրութ̃ի (1) ինձ եկեալ երկաքանչիւ-րքն, և հաւանական միտս ստացեալ՝ ՚ի պայ-ման միաբանական եւ խաղաղաւէտ սիրոյ հաստատեցի նոցա ։

## ԳԼՈՒԽ ԾԷ.

Յաղագս յառնելոյ ՚ի վերայ արքային Աշոտոյ Վա-սակայ, և Աշոտոյ և պարտելոյ ՚ի նմանէ ։

Իսկ ապա Թագաւորն Աշոտ արքայոր-դին չուէր գնայր երթայր հասանէր ՚ի կող-մանս Գուգարաց, մերձ յամրոցն մեծ՝ որ ՚ի

(1) Յամենայն օրէ. ունկնդրութիւն ։

եզու Վրաց Շամշուլդէ, այսինքն երեք նետաւն անուանի. վասն զի հօր նորա զազգան զայնուիկ շուրջ զամրոցաւն սեփականացուցեալ էր իւր, և զեղբարս երկուս՝ Վասակ և Աշոտ 'ի տոհմէ Գնթունեաց բերդապահս և վերակացուս նահանգին այնմիկ կացուցեալ: Իսկ սա զնոյն հնազանդութեան կարգ առ 'ի նոցանէն առ իւր պահանջէր գալ 'ի մտերմութի ծառայութեան: Եւ վասն զի նուազունս և սակաւս անդր գտանէր ուծիկս զօրացն, վասն այնորիկ զզօրսն իւր 'ի մօտակայ գաւառին առաքէր երթալ հոգալ գտանել զապրուստ իւրեանց՝ մինչեւ անդրէն ընդ կրունկն ինքն դարձցի: Եւ ինքն սպասէր վայելուչ եղբարբն Աբասաւ և երկերիւր յեսուն արամբք երթեալ առկայացեալ դադարէր դադարէր մերձ յամրոցն՝ որ կոչէր Սակուրէթ:

Իսկ Վասակ և Աշոտ իբրեւ տեսին զայն՝ թէ կարաւան սպայից սպառապուռ 'ի նմանէ պակասեալ է, և առ ումեքէ հուպ ընդ հուպ չիք նմա օգնականութիւն, այնուհետեւ տենչացեալ ստուարացեալ եւ կիրս ընկեցեալ, միանգամայն իսկ գումարտակ զզօրս իւրեանց առնէին ծածկաբար, ընդ ինքեան ունելով (1) և զմիւելիսն իւրեանց

(1) Մի օր. կոչելով:

յամբոխ գործոյն զապայարարսն Տփխեաց և զծործորոյն Կովկասու , և իբրև արանց աւելի քան չորեք հազար արանց սուսերամերկաց վահանաւորաց Նիզակաւորաց փաղանգաւորաց . և այս յերկակարծումն ժամու 'ի վերայ հասեալ ապաստանակ արա էին։ Իսկ զայնպիսի Նոցա տեսեալ սաստիկ հէնս և զաղթըս բազմութեան զօրաց զինքեանք շուրջ պատեալ , այս բազմապաղատ արտասուօք յօգնականութիւն զբարձր բազուկն Տեառն Աստուծոյ կարդային , որ կարող է միով՝ ըզհազարսն (1) հալածել ։ Եւ կնքեալ զինքեանս Նշանաւ Խաչին , ահապին իմն դղրդմամբ ձակատս մարտից ընդդէմ յարդարէին . և արիաբար առնաբար առնազէն ասպազէն 'ի վերայ շահատակեալք , առ 'ի քթթել ական փաղփաղակի հերձեալ ընդ մէջ զջոլիրս ապարափակ ռազմին բազմութեան ընդ կըրունկն դարձուցանէին . և երկերիւրոք միայն արամբք զչորեք հազար սպառազէնս Նայա ջնջեալ ջարդեալ փախեալ փարատէին ։ Ոմանս 'ի սուր սուսերի և 'ի սլաքս Նետից և 'ի տեղս Նիզակաց հաշեալ մաշեալ սատակէին . իսկ զոմանս ձերբակալ արարեալ ըզՍառակինոսն սատակէին . և զոմանց զունչս

(1) Մի օր . զհազարաւորն ։

և զաւրանըզն կարէին ։ Իսկ 'ի քրիստոնեայսն խնայեալ՝ կատաղուտ կայլակուտ արարեալ զնո-սա թողուլին երթալ գնալ 'ի բաց ․ և գրե-թէ ոչ ոք 'ի նոցանէ ճողոպրեալ գտանիւր, բայց միայն Վասակն սակաւ արամբք փա-խուստեալ անկեալ յամրոցն Շամշուլդէ ։ Արդ՝ այս այսպէս իրագործեալ, քանզի որ-պէս նկատակն Գեդէոնի՝ դարձեալ հոլովեալ 'ի բանակն այլազգեաց, և լիզաջինջ զնոսա արարեալ, ինքն Աշոտ եղբարբն իւրով դառ-նայ գնայր խնդութեամբ և յաղթութեամբ բազմաւ և մեծ աւարաւ զկողմամբք Վրաց աշխարհին, առ յաւէտ սիրեցեալն իւրեանց իշխանն Գուրգէն ։

Բայց հեզահամբոյր իշխանն Աբունեաց՝ ընդ կրունկն յարքայորդւոյն դարձեալ Ա-րագած լեռնէ անտի, չուէ հանդիպէ եղ-բարց իւրոց երեցունց, Սահակայ Աբունեաց տեառն և Բաբկենի և Վասակայ ․ վասն զի նոքա դեռ ընդ դեռ եկեալ անցեալ էին յաշխարհն տէրութեան իւրեանց 'ի փա-խստենէ անտի հրոսակի նոցա Յուսփայ ։ Եւ առեալ փոյթընթաց սիրով 'ի միասին մի-ախորհուրդք զմիտս կառավարեալք՝ տիրէին 'ի վերայ սեփհական իշխանութեանն իւր-եանց, դուն 'ի վերայ գործեալ՝ չքնել ես-

նորոգել զհայրենի տէրութիւնն, զամենայն և զկործանեալն 'ի թշնամեաց: Այլ և կանայք եւս իւրաքանչիւրոցն եղբարց գրաւեալքն 'ի գերութեան, զերծեալք 'ի ձեռաց գերչացն՝ յետ երկեամ մի ամաց [1] գային հանգչէին 'ի գահս և 'ի սենեակս տերանց իւրեանց: Բայց և հայկազունն եւս եղբարքն Սահակ և Վասակ՝ բնաբար կուսակալք գաւառացն որ շուրջ զեզերբ ծովակին Գեղամայ, յայսմ 'ի սոյն աւուրս եկեալք 'ի հեռաստանէ հալածանացն, տիրէին պայազատեալք զաշխարհս տէրութեան իւրեանց:



## ԳԼՈՒԽ ԾԲ.

Յաղագս պատերազմելոյ Աշոտոյ արքայի ընդ Աշոտոյ· և պարտելոյ 'ի նմանէ:

Իսկ Թագաւորն Աշոտ, վասն որոյ աժըմ բանս ճառէր վասն նորա, լուեալ զմիւս Թագաւորէ հոմանուն իւր հօր եղբօր որդւոյ, եթէ ոչ եկաց մնաց 'ի սահմանեալ ուխտին որ 'ի մէջ նոցա, այլ ընդ իւրում ձեռամբ նուաճեալ կացոյց զաւառս և զա-

(1) Ցորենաջան չէր ամաց:

գնդակն՝ որ չուրջ զՎաղարշապատ քաղա-
քաւ, սակս այսպիսի հեռաքրքիր լեալ 'ի
Թշնամութիւն ընդ միմեանս, եւ ամբոխս
մարդկան եւ հոյլս հեծելոց պատրաստեալ,
միջնորդեաց Աշոտ անկասկածաբար կեայր նս-
տեալ զօղեալ 'ի գիւղն որ Վաղաւերն ա-
նուանի, յեղակարծումն ժամու յառաւօտին
պահու յանկարծօրէն 'ի վերայ ժամանեալ՝
Զաքարիա. Զախջախս Զարդուցաց 'ի վերայ զօրու-
նորա անձէր. և միաձի միահանդերձ զինքն
և պճնազարդ գունդն վարատեալ փախըս-
տականութեամբ, առ հասարակ յաւարի ա-
նոյր զամենայն կարասւոյ կողոպուտ նոցա, և
զզէնս և զզարդս և զձիս և զջորիս բազում
յոյժ. և ինքն դարձեալ չուեալ 'ի Վաղար-
շապատ քաղաք առկայացեալ արձանանայր
'ի նմա։ Իսկ միւս եւս Աշոտ չոգաւ նստաւ
'ի Դվինն քաղաքի։

Իսկ ես տապ ժամանեալ անդ 'ի մէջ նո-
ցա, ոչ սակաւ ինչ բանս յանդիմանութեան
և ընտրացող ապառումն խռովութիւն 'ի վե-
րայ արքայորդւոյն ածէի արտօսրաթոր տը-
րտմամբ՝ սակս այսպիսի մահահոտ դըժոխու-
թեանցն վըր տարար։ Եւ թէպէտ բողոք բար-
ձեալ ջանահնար լինէի բառնալ 'ի միջոյ նոցա
զչար սերմանացանի որոմն, զի մի գտցի 'ի նո-

ատ խմորք ցաւոց. որ թէ և առ ժամանակն ամոքեալ տուեալ բանին հաւանական ցուցանէին (1) կամս 'ի հաշտութեան սակի. սակայն ոչ կացեալ մնացեալ 'ի բանին բարեգգեացս, այլ փաղփաղուկ 'ի չար մախանս դարձեալ հակամիտէին. եւ այսպէս սակաւ ինչ ընդ միջեանս դատէին կշտամբութեամբ չարի եւ բարբոքեալ նախանձու: Եւ ապա երկպառակչիւր նորա հետամուտ լեալ միմեանց, եւ զմիմեամբք պարագայածեալք, առ հասարակ դղրդեալ սասանեալ աւերեալ քանդեալ կործանեալ լինէր սեփհական տէրութիւն աշխարհին իւրեանց, և զմեծութիւն և ըղփառս իւրեանց ազգի օտարի տուեալ 'ի փարթամութիւն այլոց՝ և յաղքատութիւն ինքեանց տարածեցին զճանապարհս իւրեանց: Եւ այսպէս զերկեամ մի եղուգակոթէն վկնի միմեանց դուսթե ասյին: Իսկ ես աւագ եղկելի անձին իմոյ կարդացի. զի բազում անգամ բնակեաց անձն իմ ընդ անոսիկ՝ որք ատէին զաղջոյն. վասն զի ես էի խաղաղարար, և յորժամ խօսէի՝ մարտնչէին ընդ իս.

Իսկ Թագաւորն Արքայորդին գնացեալ անձամբ 'ի կնութիւն իւր զդուստր իշխա-

(1) Այծեմայն գրյ. ..էին՝ անցուցանէին.

Նմին մեծի Սահակայ. որ Սեւադայն յորջոր-ջէր. և անդ զպարսն պարեալ, և զկայքաւն յօրինեալ. առաքէ Նմա ամիրայն Յուսուփ Թագ արքայական և զզարդս զգեստուց պա-տուականս և պայծառս և փայելուչս, և ձիս ոսկեսանձս պատուական զինուք եւ զար-դուք. եւ հեծեալս օգնականութիւն Նմա գունդ խմբեցելեան: Իսկ Նորա պսակեալ Թագիւն՝ որ առաքեցաւ յամիրայէն, եւ բազմամ կազմածս և զանձս նա ամիրայէն առաքեալ. առեալ եւս այս ընդ իւր բը-գօրս իշխանին Սահակայ աներոյ իւրոյ. գայ չուէ հասանէ ՚ի դուռն Դվին քաղաքի, վասն զի ՚ի Նմա իսկ առկայացեալ կայր միւս Թա-գաւորն համանուն Նորուն, և զա մարտեալ այս ընդ միմեանս սփռեալ տարածանէին ՚ի մարտ: Իսկ եւ ՚ի խաղաղութիւն միշտ խօսէին ընդ երկաքանչիւրսն, որպէս միան-գամ՝ երկիցս և երիցս:

Այլ արքայորդին Աշոտ ՚ի բազմութիւն զօրացն ապաստանեալ, և ՚ի քաջութիւն իւ-րեան Նա յուսացեալ՝ ամբարտաւանս եւ-բարձրայօնս փքայր, ընդ որս ոչ Թերեւս հա-ճեալ Տեառն: Նա իբրեւ մարտն ընդ մի-մեանս բաղխեալ՝ ըստ գրդռութեան յուզ-մանն Գրիգորոյ աներոյ արքայորդւոյն, եւ

որդւոյ իշխանին Սեւադայի, 'ի փախուստ առաջի նոցա դառնային զօրք Աշոտոյ արքայորդւոյն, եւ զբաղումս 'ի զօրացն որոց ճարակ տային ըստ իմաստնոյն բանի՝ Թէ Տէր ամբարտաւանից հակառակ կայ: Ապա գընացեալ չուեալ երիթեալ արքայորդիքն առ մեծ իշխանն Վրաց Գուրգէն, և զօրս բազումս 'ի նմանէ գումարտակեալ, դարձեալ գայր հասանէր 'ի Վաղարշապատ քաղաք. և յայնմ նուագի ապա ոչ տուաւ նոցա առ 'ի յինէն Թոյլ՝ մարտիւ ընդ միմեանս հարկանել. այլ բաղխեալ իմ՝ զգործարանս իմաստից նոցա. խրատու բարւոյ զունկն մատուցանէին, զզգաստութիւն սիրոյ ընդ միմեանս խնամատութեամբ բերեալ:

Զայսու ժամանակաւ ապա իշխանն Սահհակ, որ սեփհականաբար պայազատէր ըզգաւառն առ ծովեզերբն Գեղամայ, փախճանեալ փոխի 'ի կենացս, թողլով իւր ուստմի մանկիկ տղայ փոխանորդ. և դնեն զնա 'ի քնարանի առ դուրս ձեռակերտ եկեղեցւոյն իւրոյ 'ի գիւղն Նորատունս.

# ԳԼՈՒԽ ԾԹ.

## Յաղագս պատերազմին Նշաւոյ արքայորդւոյն ընդ Մովսէսի իշխանին և յաղթելոյ նմա.

Բայց թագաւորն Նշաւ արքայորդին չուեալ գնայ առ մեծ իշխանն Սահակ աներ իւր. եւ աղաչ զկնի իւր զնա համագունդ հանդերձեալ՝ իւրովքն զօրօք երթայ գնայ Մեծի գաւառն առ ՚ի հնազանդել զքիւս ապստամբութիւնն Մովսէսի, զոր իւր իսկ կացուցեալ էր զնա իշխան և հրամանատար Ճուաղաքարոյ ազգացն այնոցիկ Մեծի գաւառին։ Ընդ որս մեծ քաջակորովն, որ պայազատէրն իսկ զնման Կուրգարայ՝ մերձ ՚ի դրունս Եմնայ, զայր հասանէր զօրու բազմաւ ՚ի թիկունս օգնականութեան թագաւորին։ Իսկ Մովսէս տեսեալ զբազմութիւն զօրացն տարմաբար հորդեալ առեալ ՚ի վերայ նորա, այսպէս և նա եւս գումարեալ մեծ առնէ յանդուգն և անձանց զօրաց, գրեթէ իբրև զպարանս ինչ ողխոյ ընդ զառ ՚ի վայր հեղեալ, որք և ընդվզեալ փութային հանել մերժել զթագաւորն ՚ի բնակութենէ իւրեանց։ Իսկ նա պատգամ առ Մովսէսն յղէր՝ զառաւուցեալ

Նա մինչդեռ թագաւորն առկայացեալ Ասորի գաւառի համօրէն նուաճել զխառնա-պարանաց աւազակս մարդիկ աշխարհին. յանկարծակի դիմեալ չուեալ գնացեալ Սով-մէջն 'ի Աբխազաց կողմանցն, 'ի մօր գնէր երթալ առ մեծ քաղաքապետականն Օմնա-յեայ. և բարուց խոստմամբ միաբան ընդ իւր զնա կացուցանել, եւ գրաւաթաւ իւրոյ ազգութեանն լինել: Զայն անգս աղէտք ընդ. հաւասպ գգացուցեալ թագաւորին՝ վաղ-վաղակի զհետ անձամբ պարեալ կրթի, և ձի 'ի ներքս տարեալ 'ի սաստիկ վառեալն և 'ի կազմեալն Սովկէսի, և մօտ առ նա հաւա-նեալ, և զաղուցեալ գլխաւորացն երկաթի վա-ղերբ դիպեցուցեալ՝ չէշտ ընդ մէջ ձեղքէր զոմն գլխաւորացն, և յերկիր զնա հարկա-նեալ, եւ ընդ կրունկն դարձեալ՝ առեալ ընդ իւր զՍովկէսն առնէր, և խարեալ զաչս նորա խաւարեցուցանէր կուրութեամբ. վասն զի՝ որ կամաւ կուրութիւն յինքն կրէ, ոչ երբեք կարէ նա գալ յառողջութիւն:

Իսկ երբեւ այս այսպէս 'ի կամս անձին եղեւ հրաւադրեալ. ապա չուէ գնայ առ թագաւորն 'ի գաւառն Շիրակ, և սիրալիր սրտիւ առ ինքն կոչէ զեղբայր իւր զԱբաս՝ զոր իշխան իշխանաց էր կացուցեալ, և զկն-

խանն Վրաց Գուրգէն զնորուն անէր, չէու-
եւս զխոհելով զոր առ 'ի նոցանէն էր նմա-
նիւթեալ դաւաճանութիւն չարակնութե
նախանձու. եւ հանդիպեալ միաբանից 'ի
դեօղն Արմանի՝ մեծապատիւ զնոսա առնէ
ըստ օրինի Թագաւորաց՝ բազմապարգեւս
բարութեամբք: Եւ վասն զի ոչ լինէր յաղ-
ջողեալ նոցա յայնմ տեղի բանալ նոցա ըզ-
դուռն կորստական ըստ երկնային այցելու-
թեանն, յուղարկի 'ի նոցանէն, եւ եկեալ
ռահվայանայ առանց իմիք կասկածանաց 'ի
քաղաքագիւղն Եւրազգաւորս: Իսկ նոցա 'ի
ձեռն պատրուակի սիրոյ զգաւելն Թագա-
ւորին խորհեալ. եւ հնարս որոգայթից նիւ-
թեալ՝ յանկարծակի 'ի վերայ յարձակէին
բազկել զնա անյայտաբար: Իսկ այգա փոքր
ինչ յառաջ իբրազէկ լեալ Թագաւորն. եւ
սոխալով առեալ ընդ իւր զուստր Աբասայ
եղբօր իւրոյ, եւ զզաւլթն Եւրազգաւորից. եւ
հաղիւ 'ի խարդաւանական որսորդութեանց
ճողոպրեալ՝ չուէ գնայ յԱւարի գաւառ: Իսկ
նոցա եկեալ եւ ոչ գտեալ մարթեցուցանել
զոր կամէին, ամօթ զանձամբ արկեալ եւ
զյետս կոյս մեծացուկան զաւլթն յաւարի ա-
ռեալ դառնային: Եւ յայնմ հետէ այսպ
սաստիկ թշնամութիւն 'ի մէջ նոցա զեղեալ

ընդր յայսպիսի խորհեցեալ մահահոտ չարութենէ ։

Բայց Վասակ՝ որ սեփհականաբար պայազատէր զտէրութիւնն Գեղարքունեաց, կարծիս իմն երկիւղի յարքայէ 'ի մտի եդեալ՝ խնդրէր առ 'ի նմանէ յետկար երդման, զի անկասկած լիցի 'ի մտանելն առ նա և յելանելն ։ Զոր իմ խակ ընկալեալ յարքայէ ըզնամակն, և տուեալ առ Վասակ, ապա չուէ գնայ առ Թագաւորն. և յառաջնում նուագին իբրև զհամամիտ գործակից և զեղբայր սիրելի հաւատարմացուցեալ իւր՝ ընդունէր զնա պատուով մեծաւ ։ Իսկ զկնի ապա հրապուրեալ յոմանց՝ որք ատէին Թուղթս առ նա գտեալ զմիւս Թագաւորին Աշոտոյ և Գուրգենայ աներոյ իւրոյ 'ի ձեռն սուրհանդակի միում՝ լի ամենայն խորամանկ խորհրդով, սակս այսորիկ կալեալ կապէ զնա երկաթի կապանօք, և դնէ յամրոցի անդ որ Կայեանըն կոչի ։ Իսկ ես Թէպէտ և սաստկագոյն բան յանդիմանութեան 'ի վերայ ածեալ Թագաւորին՝ պաշարեցի զնա կշտամբութեամբ մեծաւ վասն ստելոյ ուխտին երդման, և կապելոյ զՎասակն և խաբելոյ ձեռամբըն զտէրութիւն նորա նուաճելով, սակայն նա 'ի Վասակ զխնամն տարեալ մղեալ հանէր,

և փոքր ինչ յաւուրս ժամ՛ եղեալ՝ յանձն առնոյր արձակել 'ի կապարանէն, և հաստատել զնա յաշխարհն տէրութեան իւրոյ. սակայն և եւ սակս այնորիկ Թոյլ ետ ժամանառուեալ, զի մի Թերեւս լուր մանկական քաղուցն գաղտնական ինչ առնացի կամս, և զանկարգին դրժեալ գործեսցէ իր. որ և այսպէս սակս այլում ունելոյ զայսորիկ Թազի հոգալ երկնաւոր այցելութեանն յանձն առարեալ:

## ԳԼՈՒԽ Կ.

Յաղագս ընդվզելոյ Սահակայ եպիսկոպոսին յՄ․րոյ. արտաքսէն, և ըմբռնելոյ 'ի նմանէ. և յաղագս գործոց ինչ այլոց եպիսկոպոսաց:

Յայսու ժամանակաւ ոմն Հագարացի Փարկինի անուն իւր, տոհմական 'ի Հայս յամիրապետէն անտի առաքեալ, և ընդ իւր բերեալ Թագ դնել 'ի գլուխ Թագաւորին Գագկայ, երեքկին զնա պսակեալ 'ի վերայ Հայաստանեայցս, և այլ եւս բարեփայլելուց զարդուք զնա շքեղացուցեալ: Նա և Թագաւորն եւս ոչ սակաւ ինչ պատիւս և

ջութեան ցուցանել. և այսպէս համոզեալ 'ի մէջ նոցա դաշինս հաստատեն խաղաղութեան. և ապա բազում ուխտ երդմանց գրով կնքեալ տան իրերաց քրիստոսադիր կիտիւն և միջնորդութեամբ սրբոյ նշանի խաչին: Եւ ապա Թագաւորն ընդ կրունկն դարձեալ՝ փաղփաղակի չուէ գնայ ընդ դուռըն Դվնին քաղաքին, և անդ բազում արեան ճապաղիս 'ի նոցանէն հեղեալ, և առհասարակ յաւարի առեալ զնոսա՝ հնազանդեցուցանէր զամբարտաւան և զխրոխտ ապստամբութիւն նոցա ընդ լծով ծառայութեան իւրոյ:

Նա ուրեմն ապա մեծ իշխանն Սիւնական տոհմին Սմբատ, երկս եւս եղբարքն հանդերձ, ցասմնական իմն սրտիւ դըժգմեալ ընդ Հագարացւոյս, որ յայնժամ զգաւառն Գողթան բռնակալեալ պայազատէր, խնդրէին առ 'ի նմանէ առ յինքեանս դարձուցանել զսեփհական իւրեանց ամրոցն Երընջակ. և զառստորոտով նորա զգաւառն՝ զոր Յուսփայ ոստիկանին առեալ տուեալ էր 'ի ձեռս Գողթան բռնակալին, այլ նա իբրեւ յարքունուստ զայն նմա շնորհեալ համարէր, և ոչ առնոյր յանձն տալ: Իսկ ասա երկաքանչիւր կողմանք զօր գումարեալ

փունդ կազմեալ՝ իբր հրոսանուէր լինի դը-ղրդմամբ մարտ ընդ միմեանս հարկանէին ։ Եւ իբրեւ ջոկէր ուղղին կազմեցաւ, եւ ա-պատանին զմիմեամբք սփռեցան, եւ գունդն Հազարապետութն աղմկեալ յետ կայս հարան մերձ 'ի պարտել, մինչ ապա զօր զաքաւո-նացն՝ իշխանին Ամրատայ որ 'ի Թիկանց կու-սէ կայրն Վասակայ եղբօր նորուն 'ի ձախա-կողմն Թեւոյն, յանկարծօրէն(1) խորհրդեամբ չարի համագունդ ընդ Վասակայ ձի 'ի ներ-քս տարեալ, եւ առհասարակ 'ի վերայ յա-րուցեալ՝ դիմաթաւալ յերկիր զքաջն եւ ըզ-կորովին Վասակ արկանէին, եւ ինքեանք Թիկունս առ 'ի գնալ դարձուցեալ՝ չուէին 'ի Նախիջեւան քաղաք ։ Իսկ զդիակ գեղեցիկ երիտասարդին բարձեալ եղբարցն 'ի տեղւո-ջէ ճակատուն, տարեալ եդին ընդ հարս իւրեանց, արարեալ կոծ մեծ 'ի վերայ նորա ։

Բայց Թագաւորն Աշոտ իբրեւ զկամա-կատարս զՄշէն քաղաք պատրաստեաց, ա-պա Թիկունս առ 'ի գնալ 'ի նոցանէ դար-ձուցեալ՝ չուէ յաշխարհն Վրաց ։ եւ մինչ ընդ իւր զԹագաւորն Վրաց Ատրներսեհ առեալ, երկաքանչիւր նոքա 'ի մարտ ընդ իշխանին Գուրգենայ մտեալ խնդրէին զի-

(1) Այլ օր. յանկարծակի ։

րաքանչիւր վրէժս, զորս նենգաւորաբար չա-
րակնաբար գործեցին նմա՝ ահս ապիրատս
և աշխարհաւեր կործանումն։ Եւ թէպէտ և
միւս եւս Թագաւորն Աշոտ և եղբայր ար-
քայորդւոյն Աբասայ գրոհ իւրն ՚ի Գուրգէն
սաւեալ հաւաքէին, սակայն ոչ կարացեալ
ըստ օրինի մարտից զդէմ նոցա ունել, ՚ի
հովկոտս խորամիտս և յանտառախիտ լերա-
ձորս ամրացեալ լինէին։ Բայց անձկութե
վայրացն ոչ թերեւս սպառասպուռ զհամա-
տակ հինին ՚ի նոցանէ կորովանայր արդե-
լուլ, այլ միշտ զբազմութիւն վահանակից
զօրուն իբր ասպարափակս իւրն ընդդէմ նո-
ցա տուեալ, և ՚ի յաղեղն և ՚ի սուսեր վա-
ռեալ՝ բազում վիրաւորս ՚ի նոցանէ տա-
պաստ արկանէին, մինչև խօսել(1) նոցա ՚ի հը-
նազանդութիւն և ՚ի խաղաղութիւն, և զո-
րս ՚ի ձեռանէ նոցա բերան աւերումն և
սասանումն աշխարհին՝ կրկին տուժիւք ըղ-
նոսա նորոգեալ։ Եւ մինչդեռ այնպէս ըղ-
սահմանն խաղաղութեան մերձ էին ընդ մի-
մեանս հաստատել, խոկ և խոկ ժամանեալ
գուժկան Ալուի գաւառէ առ Թագաւորն
Աշոտ հասանէր, տալով նմա զելս իշխանին
Սահակայ աներոյ նորա, Ալուի գաւառ

(1) Երկու օրէ. խօսին։

զուժգնապէս յաւարի առնուլն առհասա-րակ, և զյափշտակութիւնն 'ի նոցանէ ամ-րոցացն՝ որ 'ի Չորափոր, տանել զգաղթ յաշխարհն յամրոցս իւրոյ տէրութեանն, և զիւր արձանանալ և կալ նստել զլեռնակող-մանբ գաւառին :

Զայս լուեալ ամենահարուստ և բազ-մահանճար Թագաւորն Վրաց Ադրներսեհ, լքեալ թողու 'ի բաց որ առձեռն կայր պատրաստ՝ զգործն Գուրգենայ քեռ որդւոյ իւրոյ, իբր պատրաստ գոլ զայն հոգ՝ և յայ-լում՝ տեղւոյ թողլի է. և փաղփաղակի պատ-րաստաբար իմն յուղարկէ առ 'ի յիւրմէ զԱ-շոտ Թագաւոր Հայոց յամբոկ գործոյն իշ-խանին Սահակայ : Բայց նորա զզօրս յետս զթիկամբք իւր թողեալ, և ընտրեալ արս իբրեւ երեք հարիւր, միայն սաստիւ հապ-ճեպով գան հասանեն 'ի Չորափոր, և տե-սանեն նախ զԿայեանն կոչեցեալ բերդ յա-փշտակեալ իշխանին Սահակայ, և որ 'ի նմա կայր դիպահող, Վասակ տէր Սիւնեաց՝ հա-նեալ արձակեալ զնա 'ի տուն հօր իւրոյ. և զայլ ևս ազատ կանայսն որ 'ի նմին բա-սակի գերելոց՝ սա անց փարատեալ, և պա-հակն զիւր ամրոցն կացուցեալ: Այս և ըզ-միւս ամրոցն որ էր մերձ 'ի նա, և զայն ևս

գրաւեալ տագնապաւ տարակուսից, և որ-
լոյ ձայնակ զբերդապահականն տուեալ, և խաղաղացեալ զգաղթ բնակչաց երկրին առհասարակ աղխիւ իւրեանց յամուրս ամրութեան իւրոյ. և զարտորայս նոցա որ մերձ էր 'ի հունձս՝ տարաժամ զայն հնձեալ գերանդիւք. և հրաբորբոք հրակիզեալ, զի մի կռուեցին կալ զետեղեալ 'ի նմա ուժք թագաւորին բնակութեամբ ։

Արդ՝ իբրև զայնպիսին տեսանէր տաղտկալի տառապանս, և զաղմուկ շփոթի զեղեալ զաշխարհաւ տէրութեան իւրոյ, այնուհետեւ ոչ զանգիտեալ 'ի բազմութենէ զօրաց իշխանին. և ոչ զնուազունս իւր գունդ 'ի միտ եդեալ. չուէ գնայ 'ի հանդիպումն նոցա. վասն զի բանակեալ զետեղեալ կային 'ի ծործորս լեռնակի միոյ ըստ արեւմտեայ կուսէ ձորոյն Տաւրիշոյ (1) վարանեալ յափշտակել և ձգել (2) յորոգայթս իւրեանց զթագաւորն ։ Իսկ անդ ապա գըտեալ բլրակ մի, որ ունէր զլնչքեամբք քարաժեռ շրջապատ, 'ի նմա ելեալ բնակէր զօրն ողջոյն և զգիշերն ամենայն ։ Իսկ պատգամ առաս զմի ոք եալխկողքաացն առ իշխա-

(1) Գրի և Տաւուշոյ կամ Տաւշոյ ըստ այլեւ այլ օրինակաց ։
(2) Երկու գրի. յափշտակեալ և ձգեալ ։

նըն Սահակ տառապէր տանելով. Ո՞րպիսի ինչ չար, կամ ո՞րպիսի ինչ վնաս առ 'ի յինէն քեզ բերաւ արդեամբք, զի փոխանակ ա-նըր արժանի 'ի քէն գտայ այսպիսւոյ ինն ծա-նըր աշխատի՝ զոր տեսի գործեցեալ, և ոչ յետակայ երդմամբն քո ածէր զքեզ 'ի զղ-ջումն. կամ ընդէ՞ր այժմ զըասխնդիր լինիս, հեղուլ զարիւն իմ՝ առանց բանի պարտա-պանութեան: Բայց արդ՝ դարձ 'ի բարկու-թենէ այտի, և դարձո 'ի բարիս զ'ի նանիր թագուցեալ որոգայթ ապականութեանդ. և միայն զերկու ամբոցս զոր յափշտակեալ է քո՝ այսօրէն տուր ինձ. և զգայթ աշխար-հիս դարձո. և յայնմհետէ եղիցի միաստապր խաղաղութիւն 'ի մէջ մեր՝ որպէս հօր հա-րազատի և որդւոյ սիրելւոյ:

Իսկ իշխանն զայսպիսի լուեալ բանս պատ-գամի, և ոչ պատասխանւոյ թերևս արժա-նի համարեալ, այլ ևս քան զեւս մոլեալ առ եպիսկոպոսն ասէր. Դու նախ առաջ յի-մումս խորանի, և ես առ նա սրով իմով չու-եալ գնացից՝ վաղվաղակի պատասխանիս պատգամաց նմա հատուցից: Եւ զայս ա-սացեալ՝ գումարեալ բազում զօրսն իւր առ-նէր, աւելի քան զութ հազար արանց, և յառաջ կոյս մղեալ, և հանդէպ բլրակին

հորդան տուեալ՝ յորոյ վերայ կայր Թագա-
ւորն, հրամայէր հետեւակամարտ գնդին
վահանափակ լինել. որ տեսութիւն խիտ բե-
րէր յինքն որպէս զանպարտելի պարիսպ, և
'ի Թիկանց կուսէ նոցա զհեծելազօր գուն-
դըն պատրաստէր՝ սպառազինեալս և վա-
ռեալս 'ի զէնս և 'ի զարդս: Եւ առաջա-
պահքն առաջի վահանափակ սպային որավար
երկվարօք խաղացեալ՝ յայս կոյս յայն կոյս եր-
Թային, և գային: Իսկ յեղանել առաւանկին՝
փայլատակունք 'ի մերկապատեան վաղակա-
ւորացն բազմութենէ հատանէին, և 'ի սա-
ղաւարտացն և 'ի Թիկնապահ և 'ի լանջա-
պահ պղնձի տախտակացն և 'ի պահպանա-
կացն բարձից և բազկաց:

Իսկ զայնպիսի տեսեալ բազում զօրս կու-
մարեալս զիւրեաւ զեղեալ Թագաւորն, ա-
պա և նա զհարիւրսն իւր յետս կոյս Թողեալ.
որ լքեալն էին. յերկայն ուղւոյ ճանապար-
հաւն, միայն երկերիւրօքն իջանէր 'ի բլրա-
կէն ընդդէմ նոցա: Եւ անդ ապա տարա-
ծեալ զյետակար երդմանն իշխանին առաջի
երեսաց Աստուծոյ, այսպէս և յինքեան ա-
սէր. Եթէ ես ինչ սխալեցի, կամ ստեցի յայս-
միկ երդման, հատո Տէր Աստուած զվնաս
ստութեան իմոյ 'ի գլուխ իմ. և եթէ իշխանն

տուընդանեաց սմա․ ՚ի նա հաստատեցաւ ըղ-
ձիւոս խոր՝ փրկեալ զիս ՚ի տարապարտ մա-
հուանէս զոր նիւթեալ ածեալ են ՚ի վերայ
իմ։ Եւ ապա գլխաւոր քարաժին ՚ի գրաստս
խոյժին որբոց կապեալ, զոր սովորն էր միշտ
սուաքի իւր չըլեցուցանել, յանկարծակի զմի
զինուորութիւն երկերիւր նոքա զինու որեալ.
և ՚ի ձայն բարձր աղաղակեալ ձի ՚ի ներքս
տանէին։ Նախ ինքն յասպարիզին շահատա-
կեալ, և յական թօթափել իբրև հողմ ինչ
զնոսա փախթորկեալ, և ոչ մի ոչ մնաց որ
՚ի անեզի ճակատուն. և ոչ բնաւ իսկ երկուք
՚ի միասին ՚ի նոցանէ գտանէին, այլ ցան և
ցիր սփռեալ ընդ գլուխս կոհակացն և ընդ
հովիտս և ընդ խորաձորս և ընդ անտառա-
խիտ մայրիս, ոչ թերեւս առ ՚ի նոցանէն
վրիպեալ ոք ՚ի փոքուէ մինչեւ ցմեծն, բայց
միայն երկուք նոքա, իշխանն Սահակ և Գը-
րիգոր որդի նորուն՝ զոր ձերբակալ արարեալ
տանէին։ Եւ ապա զամրոցն առհասարակ
զԳորդմանայ Թագաւորն ինքն գրաւեալ,
և զբովանդակ աշխարհն յիւր անուն նուա-
ճեալ հնազանդէր։ Իսկ ապա ՚ի նանիր պա-
կուցումն իմն երկիւղի մահու ՚ի մտի ե-
դեալ Թագաւորն, զի թէ թողից, ասէ,
զիշխանն և զորդի նորուն, զմահն իմ այս

գուշակէ. և եթէ 'ի դիպահող զայգապիաւ երեւելի առս կայուցից. և զերծ յայլոց ձեռաց լինիցի դոցա՝ զոր օրինակ Սատակայն. և այնպէս անշուշտ մահ իմ առ դուրս կայ։ Եւ այնպէս անխափանուրդ երկիւղիւ զզածեալ՝ կուրացուցանէ զաչս երկոցունց նոցա ոչ առեալ 'ի միտ զպայծառութիւն Աստուծոյ, որ յայնժամ նուագին զնա ապրեցոյց, եթէ կարող եւս է նոյն Աստուած ոչ տալ թոյլ դաձեալ դատաստան կրել 'ի խափանեալ երկիւղէն։ Եւ այսպէս գայթեալ իր դառնութեան անփոխաւ զսիրտ ամենեցուն կացոյց. քաջէ (1) 'ի նմանէն տարահեալք։

## ԳԼՈՒԽ ԿԱ.

Յաղագս ապարանճելոյ Յովսեփայ, և ապիրատութեան Եղբարց և գործոց նորին։

Ետոյց փոքր ինչ յառաջ քան զայս ուախկանն Յովսեփ ապաստանութեամբ քաղմաւ ընդվզեալ յիմաստելեան ամիրապետէ, և 'ի պարարտութենէ պորտոյն անդուշեալ.

(1) Մէ օրէ. քաջ 'ի նմանէն։

առաքէ այսպէս զոմն 'ի նախարարաց իւրոց ամիրապետն անհուն իմն զօրօք հրաման նմա. որ թէպէտ զմի նուագ և զերկուս ընդդէմ զինեալ՝ հարուածս 'ի վերայ զօրացն արքունի հասուցանէր, սակայն ոչ կարացեալ ընդդէմ՝ ունել. ձերբակալ զնա առնէին, խաչացուցեալ տարեալ կապանօք առ ամիրապետն: Եւ այսպէս այց ելեալ շնորհացն Աստուծոյ՝ փրկեաց զԹագաւորն Գագիկ 'ի գազանական չարաչարող ապստամբելոց նորա:

Բայց իբրև կալան զՅուսուփ, ընկենեալ լինէր յամիրապետէն անտի: Այս ումն 'ի ծառայիցն յաւէտ իմն 'ի պատուականաց Աբրուք անուն, որ իշխան և հրամանատար էր ամենայն տան նորա, բռնազբօսաբար տիրէր տէրութեան աշխարհին Յուսփայ. և յետ սակաւ աւուրց այսպէս և յամիրապետէն իսկ փոխանակ Յուսփայ ոստիկան հաստատեցաւ: Եւ այսպէս նա ևս առաւել քան զՅուսուփ ըստ նմին սակի դնէր ուխտ միաբանական խաղաղութեան ընդ Աշոտի, և Շահնշահ զնա անուանէր:

Բայց ոստիկանն Աբրուք դեռևս ոչ մոռացեալ 'ի սրտէ զմախանս չար թունիցն՝ զոր 'ի Թագաւորն Գագիկ հնարէր միշտ թափել, յետ ոչ բազում ինչ աւուրց հորդան

ձուրց զօրուն տուեալ՝ առաքէ զկողմամբք Ճ՚ուաշ գաւառաւ։ Որ Թէպէտ բնակիչք գաւառին խրապղած յառաջագոյն չար հենին քինէին, սակայն ոչ կարացեալ սպառնալեաց գայթել յամբոխն, նոքա իբրեւ զկայծակն ՚ի վերայ հասեալ, և անպատրաստս ընդ երեսս գաւառին սփռեալ, բազում աւարառութեամբ կապուտ կողոպուտ առնէին. այլ եւ զոչ կարացեալն աճապարել անկանել յամրոցս վայրացն՝ ՚ի գերութիւն վարէին զներքեւեալ արան և զկանայս և զմատաղ մանկունս։ Իսկ ապա զայն տեսեալ Թագաւորին Վրացկաց, և ըստ համաձայնախոհութեան խորհուրդ ՚ի մտի եդեալ զոչ կարողելն կալ ընդդէմ Թուրքաց մարտիւ պատերազմի, ՚ի հնազանդութեան պայման ընդ նմա իւր փոխադրէ։ Եւ ապա զմին Գէորգ Ճաւանունի ՚ի կրօնաւորականաց կարգէ՝ բազում ընծայիւք և պատարագօք առ Տաճկանն Ռուսաց առաքէ, խնդրելով զհաշտութիւն առ ՚ի նմանէ. որոյ առեալ և ընկալեալ՝ տայ յետակոյ երդման ոչ եւս յաւելուլ կալ ՚ի նոյն յորդորդ (1) միում ընդ Թագաւորին։ Եւ դադարեալ այսպէս ապստամբ հենին, հարթայամար համբերէին աշխարհ տէրութեան Թա-

(1) Երկու օր. ողորդ։

զաւորքն Գագկայ 'ի կայս հանգստեան իւրեանց, յապահովացեալք յարտաքնոց յայնմանէ հրոսակաց ։



## ԳԼՈՒԽ ԿԲ.

Յաղագս ապստամբութեան Սասնոյ և նուաճելոյ ընդ ձեռամբ Աշոտոյ ։

Բայց յետ այնորիկ տասուցեալ մերկացեալ երեւէր ապստամբութիւն քանանիտ (1) զնթունեայն Սասնայ, որում հաւատացեալ էր պահպանութիւն ամրոցին Համշուլդէր. և 'ի դերբեւ ելանէր նորայն խոկացեալ գաւաձանութիւն, և Թիկունս Աշոտոյ դարձուցանէր՝ որ Հանանշահն անուանէր. և անձնատուր 'ի Գուրգէն իշխանն Սրոց լեալ, նմա զմեծ ամրոցն տալ խոստտանայր, միայն թէ իւրում նահանգին տայցէ նմա այլ եւս ամրոցն կրուստ քան զնա (2) ։ Իսկ նա զհայցեալն 'ի Սասնայ վաղվաղակի կատարեալ, և յետկար երդման կնքեալ տայ

(1) Մի օրի . քանանամիտ ։

(2) Այսպէս ունին երեւին օրինակք, մի օրի . կորուստ ։

տանել նմա. որոյ հաւատարիմ բան 'ի ձեր-դմանն եղեալ, և եղեալ յամրոցէն չու էր գնայ առ իշխանն Գուրգէն: Իսկ վասն զի նախ-քան զայս սպանաւ Աշոտ եղբայր Վասա-կայ 'ի ապստամբոյ զօրացն իւր 'ի յաշխարհի (1), սակս այնորիկ 'ի ձեռն ձեռնասուն կրտսե-րացն իւրոյ հաւատայ զամրոցն 'ի չուել իւրում:

Իսկ 'ի համբաւել սորա իշխանին Գուրգե-նայ, իսկ և իսկ առեալ զնա ընդ կրունկն անդրէն դարձուցանէ, ածելով 'ի դուռն ամ-րոցին՝ առ ինքն տալ հայցէր: Իսկ պահապա-նքն ամրոցին ոչ կամեցան տալ նախ քան զառնուլն առ ինքեանս զԱշոտ. Իսկ իբ-րեւ մարտ ընդդէմ մարտկան ամրոցին իշ-խանն յարդարէր, վաղվաղակի սոքա պահա-նակքն զգացուցին Շահանշահի, և նա ա-ճապարեալ գայ յամրոց գործոյն: Իսկ իբ-րեւ եկն 'ի տեղին, 'ի բաց քշեցեալ եղեւ Գուրգէն 'ի դրանէ ամրոցին. բայց պահա-նակքն և ոչ առ նա եւս կամեցան տալ զամրոցն՝ մինչչեւ առ ինքեանս առեալ իցեն զԱշոտ. իսկ նա պատանէշ պաշարման շուրջ զամրոցաւն եղեալ՝ 'ի ժամ դիպող առնուլ սպասէր: Բայց Գուրգենի բազում երդ-

(1) Գուցէ ընթեռնլի է՝ իւրոյ աշխարհի:

մանր զպահնուկսն հաւանեցուցեալ, վասն զի առնել տալ ցնոսա, հրաւիրեցաւ այս զօր առաքել զի առ նոսա զամրոցն տայցեն (1)։ Իսկ իշխանքն առաքեալ իբրեւ արս երեք հարիւր․ քաջակորովս աղեղնաւորս եւ վահանաւորս եւ սուսերաւորս, որք իբրեւ հասին՝ զվայրս մօտ գաղտնի դրանն բացեալ նոցա՝ առ հասարակ յամրոցն զեղան։ Իսկ մարդիկ ամրոցին իմացեալ զմահառիթ նենգաւոր շունչ պատրանաց նոցա՝ զոր հանդերձեալ էին կատարել, եւ ՚ի բաց զներքնաբերդըն լքեալ թողեալ, ՚ի վերնաբերդ անդր․ համագունդ հորդան տային՝ սաստիկ մարտ ընդ զօրուն Պուրգենայ եդեալ, զի թերեւս արտաքս զնոսա կարասցեն կորզել։ Իսկ Աշոտոյ ոչ գիտելով զգործ իրին, այսպէս նմա կարծեցեալ թուէր, իբր թէ ընդ միմեանս մարդիկ ամրոցին ընդհարեալ մարտնչին․ եւ ապա ինքն իսկ արտաքուստ ՚ի ներքըս մարտ ընդ վերնաբերդն դնէր։ Իսկ նոցա բացագանչութեամբ ձայն վերուստ ՚ի վայր զգայուցանէին արքայի զառորկուածըն իւրին․ իբր թէ վասն նորա առ ՚ի նոցանէն այն բան պատերազմի ընդ սպային Պուրգենայ իրագործի։ Իսկ նա ձայն առ

(1) Ծեռ․ օրի․ առաքէր՝ զի առ նոսա զամրոցն տայցեն։

նոսա արձակէր , զի Թէ վասն իմ , ասէ , նորու-տիք յայդպիսի մրցմունս , ասէ՝ ընդէ՞ր ոչ ինձ բացցի դուռնդ , զի ես մտից և դիւրաւ վճարեցից զայդ հանդէս , և բազմապարգև զձեզ արարից 'ի բոլոր բարութիւնս ։ Իբրև ապա բացաւ նմա դուռն ամրոցին , և մտեալ խոկ և խոկ առ հասարակ զզօրն Գուրգենայ ձերբակալ առնէին . և յետ փոքր ինչ աւուրց առ հասարակ զամենեսեան զնոսա անպիտանս առնէ յաչաց և յընչից և յականջաց ։ Իբրև այնու հետև ապա հիւսիսական ազգքըն այնոքիկ ընդ ձեռամբ նորա նուաճեալ հնազանդէին 'ի ծառայութիւն , և ըստ աջողակ այցելութեանն Աստուծոյ երթալով երթայր և զօրանայր ։



## ԳԼՈՒԽ ԿԳ.

Յաղագս ապստամբութեան Ատրոմայ իշխանին , և պարտելոյ 'ի նմանէ Աշոտոյ շահանշահի ։

Յետ այսց եղելոց և գործեցելոց իրաց դարձեալ անտի Շահանշահն կոչեցեալ՝ գայ հասանէ յՈւտի գաւառ . և անդ առեալ ըզ-

նուաճեալսն առ ինքեամբ զաղխատորոյգն քա-
նիւք համոզեալ․ և եթէ ոք սիրէր զպաշտա-
մըն խորհրդոց աղքատութեան՝ նշմարէր
զայն․ և որպէս սանձիւք ոմամբք քարեզգեաց
բանիւք 'ի բաց ճնշեալ զխեցբեկազգայն քարա-
նոցա՝ ածէր ընդ ինքեամբ 'ի հաստատուն
խորհուրդս։ Իսկ ապա զոր 'ի նոցանէ գու-
մարեալ չուէր գնայր երթեալ հասանէր 'ի
կողմն Կատոյս գաւառի․ և խիկ և խիկ հրա-
ւիրեալ յառաջընթաց անուի առաքէր առ-
միւս եւս կոչեցեալն Աշոտ որ թագաւո-
րեալն էր՝ որդի հօր եղբօր նորան․ զի նախ-
նականն իւրեանց բնականօքն շարժմամբ քա-
ղաքականին առ 'ի յօգտակար վայելսն ճեպես-
ցին գալ հանդիպել միմեանց սիրոյ և խա-
ղաղութեան արգասեօք․ և տիրական կեանք
նոցա հասարակաց մի՛ անխնամեսցին, և աշ-
խարհ նոցա մի՛ եղիցի խապանեցեալ ապառ-
ապուռ փշաբեր և մացառախիտ, և լինել
'ի դադարս եղուզակաց։ Այսպէս և առ խ-
եւս յետոյ գրոյ տուեալ՝ զի մի դանդաղե-
ցին երբէք երթալ դիւրել պատրաստել 'ի
մէջ նոցա զքաղաքավայելուչ խաղաղութեան
պայման․ և մի մայցեմ թոյլ զթագուցեալ
հաղքան եւ զխառնթարթութիւն խռովութեան
յինքեանս շաղաշարել։

Իսկ Թագաւորն Աշոտ եւս հաւանեալ միտս ստացեալ, եւ սիրով սրտի զբանն ըն-կալեալ, եւ փաղփաղակի չու յուղի անկեալ երկրպագանչիւք մեք չոգաք 'ի հանդիպումն առաւանեցելումն Շահանշահի : Եւ անդ ա-պա խնամով թելադրութեամբ եւ բանի խորա-տով՝ որ դիմեալ 'ի լսելիս յողղացն հանգչէր, զպաշարումն մտաւախալապատ միգապատ ախ-շութեան մտաց չարին յանձանց 'ի բաց մեր-կացեալ, ամենայն իրօք յարակցէին յինքեան-նըս զկատարեալ խաղաղութեանն դաշինս՝ առհաւատչեայ երդմամբ զնոյն հաստա-տեալ : Եւ իսկ եւ իսկ երկրպագանչիւր նորա ե-կեալ հասեալ 'ի դուռն մայրաքաղաքին Դըւ-նայ, եւ անդ զմոլորութիւն պաշտօնէիցն հե-թանոսաց յինքեանս զրաւեալ՝ ընդ ձեռամբ նուաճէին, եւ բազում կայտառս եւ խնձոյս ցըն-ծութեան զմիմեամբք զեղեալ, եւ ընդ կը-րունկն դարձեալ Շահանն կոչեցեալ շահ՝ խաղաղ գնայ անդէն 'ի սիրեցեալն իւր յԱ-տի գաւառ :

Եւ մինչդեռ զճանապարհայն երթայր, ձայն գուժի աղմկի ընդառաջ եղեւ նմա 'ի նմին իսկ յայնմ մարզէ . զի Սմբատն այն ա-նուանեալ, որ ըստ ուժեղականութեան ան-ձինն՝ Ձիւկ 'ի բազմաց յորջորջէր, եւ զնա իսկ

կացուցեալ էր Շահանշահն հրամանատար ՚ի վերայ գործոց աշխարհին, իսկ նա չարե-մացութեամբ ՚ի մուտ (1) Թաւալեալ, և այլապէս զինքն կերպարանեալ ՚ի բաց որոշէր ՚ի հնազանդութենէ Շահանին կոչեցեալ շահ, և լքեալ խոտեալ անարգեալ զինքն ուէ-րութիւնն իւր. հաճէր հաւանէր մտանել ընդ լծով ծառայութեան անքննին Գուրգենայ, որ իշխան իշխանաց էր Գամրաց աշխարհին. նա և զայլս ևս զբոլոր նախարարութիւն այնմ նահանգի դաւոյթ ինքեան առեալ ՚ի նոյն յարդարէր յապստամբութիւն: Նա այս առ ձեռն պատրաստ զամրոցն Տաւրիշոյ առեալ, ՚ի նմա ամրապահեստ առնէր զբնականիս տան իւրոյ, զի ինքն և իւրքն պարապորդ գտեալ ժամանեսցեն ամբառնալ զինքեանս յամբոխ գործոյն, և զթագուցեալ հաղբան դիւրաւ վճարել:

Իսկ Աշոտ երկթեալ չուեալ գնացեալ հասեալ աշխարհն Ուտէացւոց, և տեսեալ զի առհասարակ յետս կայր առ ՚ի նմանէն մղեալ անցեալ զանցեալ և թիկունս դարձուցեալ էին. և ոչ ոք այնուհետև գտանէր օգնական, բայց ՚ի սակաւուց ոմանց աննշանից: Այսպէս ահա բացածանօթացեալ

(1) Առմենայն օրէ. ասէին՝ ՚ի մուտ Թաւ Թաւալեալ:

լինին յորջորջեալ, և ընդ նմա այլ ևս ապըս-տամբ որիկայքն, զոր բազում յօգնականու-թիւն խուժանից յամենայն ուստեք գումար-եալ արարեալ, որջացեալ ամրացեալ կային 'ի մէջ անտառախիտ մայրեաց առ ափն Կուր գետոյ։

Իսկ Աշոտոյ իբրև ոչ աջողեցաւ մարտ ընդդէմ Թշնամեացն յարդարել գնել, ապա և ինքն իսկ հորդան իւրոյ զօրուն տուեալ՝ անխորհրդաբար արկանէր յանձուկ և 'ի նեղ-ղուց վայրս ամրոցի միոյ. զի ոչ ումեք լինէր հնարս եղանել 'ի տեղւոջէ անտի առնել(1) տակս շուրջանակի մացառախիտ մորացեալ թաւալոյյացն, բայց միայն 'ի միոյն յայն 'ի նեղ և յանձուկ վայրացն՝ յոր մտին։ Իւ այսպէս կամաւ իբրև 'ի բանս ըմբռնեալ, ոչ բաւէին կարել արտաքուստ 'ի ներս տա-նել առճիկս և ուտել, կամ ջուր 'ի ըմպա-ցուցին, կամ խաղ երկխելաւորաց։ և 'ի խորհր-դոցն անհաստատութենէ նեղեալ տառա-պեալ տագնապեալ տարակուսեալ լինէին առհասարակ զօրքն ամենայն։ Իւ այսպէս զմիտս իւրեանց թուլացուցեալ՝ բանս գաղ-տնիս յուղէին Թշնամեացն արկանէին, չէ զԱշ-ոտ կալեալ կապեալ տայցեն նոցա, և իւ-

(1) Այսպէս տեսանել օրինակս, Բերեա Գրեալ է անեղ։

րաքանչիւր 'նոքա առանց ամենայն վնասուց ելեալ չուեալ գնացեն յիւրաքանչիւր տեղիս ։ Նայժմ իրազեկ Աշոտի լեալ, և ահիւբազմաւ ըմբռնեալ, առ ինքն լռելեայն բըմերձաւորսն եւ գլխորհրդածութեան իւր կապակցէր դաշանց երդմամբ, և իբրեւ օգապարիկ իմն սրավար երիվարս պատրաստեալ, յեղակարծումն ժամու 'ի մէջ գիշերին հեծեալ հատեալ ընդ մէջ սպայակոյտ զօրուն՝ անցեալ դէմ եդեալ յամրոցն որ կոչի Կաքաւաքար, և անտի ուր յաջողեսցի երթալ ։ Զայն տեսեալ թշնամեացն, և զկիրճն միտիցն տեղւոյն այնմ պաշարմամբ կալեալ, առհասարակ զզօրսն կապուտ կողոպուտ առնէին, մինչ զի ոչ մի ոք 'ի նոցանէն կարէր ճողոպրել․ բայց միայն մարդասիրեալ 'ի նոսա, որպէս և քրիստոնէից իսկ կարգք պահանջեն, ոչ մի ոք մեռցի 'ի նոցանէ՛ն և մի իսկ ։ Եւ ապա յայնմ օրէ հետէ ոչ յաջողեցան հետեւանք արշաւանաց Աշոտի՝ որպէս յերեկն և յեռանդն ։ Թուի ինձ եթէ զողջախոհութիւնն զայն՝ զոր նախն էր ասացեալ․ յանմաքուր յողջախոհութիւն փոխարկեալ․ և զքաղցրութիւն պաշտամանն Աստուծոյ յանձնէ 'ի բաց վարակեալ(1), և ըստ

(1) Մէ օր․ 'ի բաց վարկեալ․ Նոյն չէնէ՝ 'ի բաց վարատեալ։

օրինի փարիսեցւոյն զանքարտաւան կամս կամեցուցեալ իւր, վասն այնորիկ Թերեւս դատապարտեալ անկանէր, ոչ ժամանեալ 'ի կատարս փրկութեան իւրոյ։



## ԳԼՈՒԽ ԿԴ.

Յաղագս բարեկարգութեան արքային Պռագիկոյ. և արքայելոյ Յովափայ ոափէկանին և չարութեանց նորա։

Բայց Թագաւորն Պռագիկ սատանայ իբրեւ զմձիտ իմն միտս զգաստացեալ (1) իմքեան մաքուր խորհրդով, զանգոյն 'ի գոյ ածէր, և զմերձակայն իւր կեանս օգուտ բազմաց դաստիարակէր. վասն զի նկրտէր միշտ 'ի սրտի իւրում 'ի չարութենէ անխզելի մնալ, եւ առ նմանութիւն սատացողին մերձ գալ. եւ ըստ առաքելական բանին՝ եթէ հնար իմնչ լիցի, ընդ ամենայն մարդկան ըզխաղաղութիւն ունել։ Այսպէս ապա սովորակի իմաստութեամբն հանձէր հաւանեցուցանէր զբագձաձեալ դրացիս իւր, և զմերձաւորս լաւակամ համամիտ համախոհու-

(1) Մէ օր. զգաստացուցեալ։

թեամբ 'ի սէր իւր և 'ի հնազանդութիւն կապակցելով, և բարգաւաճանս հարուստս թշնամիսն ցուցանէր ոխերիմ եղբարբն իւրով Գուրգենաւ, և այլ ևս համազգօք և առ իւրմէն հանապազատուելովքն. զոմանց ձեռաձիր ընծայիւք զմիտս հաճեալ հաւանեալ ըստ համբաւոյ խաղաղութեանն. իսկ այլոց խժականաց և անզգամաց ատեցողացըն զբարին յեղափոխ պատերազմաւ եւ մարտիւ ամբոխից 'ի դիմի հարեալ 'ի հարկէ ոտին կացուցանէր։ Այլեւ զահ երկիւղի ամիրապետին ոչ զանխղանայր, այլ ըստ ակամանց հարկիսն սակի հանէր հաւանեցուցանէր պարտավճար լեալ բռնաւորին. և առ վշտի վտանգին ուսեալ զհնարաւորութիւնն, զի զապքուստ անձին եւ զբազմաց օգուտ գտանել մարթասցէ։ Այլ ասա հարուստ մի զայս արարեալ, սուրբ հիմունք եկեղեցւոյ անփորձ մնացեալ կանգնէին. և շինութիւն և խաղաղութիւն և նորոգութի և յաջողութիւն աշխարհի բնաբար բերէր. և լինութիւն և պայծառութիւն 'ի շնորհացն Աստուծոյ պարգեւէր, և իւրեյանքոյթ իմն նաւահանգիստ՝ այսպէս զետեղեալ բնակէին 'ի կայս հանգստեան իւրեանց. և ըստ իմաստնոյն բանի՝ գովեցա

պետութեան իւրոյ ։ Նոյն այսպէս համօղեալ զամբարտաւանն եւ զհրամանն ընկճեալ, այնուհետեւ հանեալ արձակէ եւ առաքէ զնա գումարտակաւ զօրու յառաջին գահ կուսակալութեան իւրոյ ։ Նոյն այսպէս ձեռնըն-դեալ Սմբատ զՅուսափն իւր առնէր, եւ համակամ համախոհ եւ կամարար իւր եւ օժանդակ՝ ՚ի թշնամիս իւր թափել զթոյնս մըրժուց չարութեանն ։ Իսկ նա իբրեւ զուառուցեալ մեծոյ չփոթեալ, եւ վարդիչ (1) իւրն օգնով սրավարեալ, եւ յորդաշու լեալ ընդ միջագետս Ասորւոց, եւ ընդ այլ եւս բազում օթեւանս անցեալ զանցեալ գայ հասանէ վաղվաղակի յաշխարհն Կորդուաց ։

Բայց թագաւորն Գագիկ վաղվաղ նախ-վաղ ուրեմն խռովեալ լեալ նորայն գալըստեան, եւ առհասարակ աշխարհի տէրութեանն իւրոյ հորդան տուեալ ՚ի փախուստ՝ ընդ ինքեան առեալ տանէր զգաղթ կարասին. եւ ամրացուցեալ զնոսա ՚ի ծործորս լերանցն Կոգովտի եւ Ոաղկոսան, ՚ի մէջ դըներ զմխիթարութիւնն՝ որ առ ՚ի նմանէ բերիւր. զի թէպէտ եւ սոսափեալք յեղափոխութեամբք զչարիցիմք (2) առէ, սակայն ժա-

(1) Մի օր. յաւելու՝ վարդիչ եւ վարիչ ։
(2) Ամենայն օրինակք ունէին՝ չարիցիմք ։

զամանուրդ Քրիստոսի ոչ անկցի թերեւս 'ի ձեռս գերչացն, և ոչ տացին 'ի կերակուր գազանաբարոյ խամաչէլական երկաթոյն, և ոչ փարատեսցի կանոնուածս քրիստոնէական օրինաց՝ յանկանոն կրօնիցն (1) Հագարու։ Իսկ այսպէս զգացեալ կարաւանքն 'ի Թիֆլիզոյ կուսէ կացուցեալ Թագաւորն, և եղբայր նորուն Գէորգէն ազատագունդ բանակաւն և հեծելազօր գնդիւն 'ի վէնս և 'ի պարզս և 'ի տէգս նիզակաց վառեալք, մէջս յառաջապահք լինէին՝ իբր անկիթիթ իմն ակամբք և մեծաւ զգուշութեամբ։ Այնպէս և մեծ իշխանն Ընձեւացեաց Ըստամ՝ հանճարիմաստ խոհականութեամբ վառելոցփոյթ վաղահօդակ խորհրդով (2) զաշխարհս անէրութեան իւրոյ անձառնայր 'ի գլուխ ամուր լերանց աշխարհին, ամրապահեստ ըզնոսա առնելով 'ի խորաձորս և 'ի խորխորակ (3) վէհս փոսոց, և 'ի ծործորս քարոց, առաջապահս եւս և նա զաղթին լինելով իւրայովքն զօրօք բազմի վառեալք։

Բայց սատրկանն Յուսուփ փոքր ինչ աւուրս զետող առեալ 'ի սահմանս Կորդուաց,

(1) Մէ օրէ. կանոնիցն։
(2) Ըմինայն օրէ. անհէին՝ խոհականութեամբ։
(3) Երէշոս օրէ. և ձի խորախոր վէհս։

և չունեւալ անուրի գայ հասանէ բանակի յաշ-
խարհն Ընձեւացեաց. ոչ Թերևս գրգռեալ
անդ զաղմուկ չարութեան, այլ երբեւ օձի
զԹոյնս 'ի բաց եղեալ՝ դեսպանս առ իշ-
խանն Ստոմ առաքէ տալ նմա զսակ հար-
կացն ազգութեանն. և ըստ սովորակի հրաման-
դացն տուեալ այս(1) զօժտութիւն նորա, որ-
պէս զի ընկալեալ երԹայցէ 'ի բաց գնացէ՝
անվտանգ և անվնաս զաշխարհն Թողլով:
Իսկ նա ենԹադրելով խմաստութեամբ ըզ-
մերձակայ զպաշտպանութեանն բռնութիւն
առ 'ի յօգուտ բազմաց գնել, ոչ եւս խը-
նայէր 'ի գանձս կարասոյս, և վաղվաղակի
հատուցանէր նմա ըստ ձեռին բուռականք
զմնասս հարկին կրկին յաւելուածով. այլ և
ընծայս ձեռնաձիրս առատապէս պարգեւէր.
և մնացելոց հարկաց ըստ ծանուցանս խոստո-
բոլքն՝ պատանդս յազգատոհմէ. տուեալ ըն-
նէր: Զոր առեալ ընկալեալ չուէ գնայ ընդ
կողմն լեռինն Սկանեաց, 'ի գաւառն Ադ-
բակոյ. և տեսանէ անդ զաշխարհն ամենայն
առ հասարակ Թափուր և ունայն 'ի բնակչաց
մնացելոց: Այլ և տեղեկացեալ և ստուգա-
պէս իմացուածիւ, Թէ ոչ կարէ ժամանել
հասանել չարիմացուԹեան խորհրդոյն՝ զոր

(1) Երեւ օրէ. տուեալ տալ:

յօղեալ եղեալ 'ի մէջ իւրում վասն Թա-
գաւորին Գագկայ, եւ այնուհետեւ ապա
իբրեւ Հնդիկ իմն զաեւութիւն թխութեն
յանձնէն 'ի բաց մերկացեալ, յընտանի ս-
պիտակութիւն սրտի զկերպն փոխաբերէր,
և դեսպանս առ Թագաւորն առաքէր մօ-
տալուտ եւ դիւրագորով հաշտութեան:
Սակայն ըստ ընչաքաղցն լինելոյ և օգտածա-
րաւ՝ 'ի բանտի անդ զքաղցումն ամաց զհարկս
արքունականս, այլ և զօժտութիւնս եւս ըն-
ծայից անձին առանձին հայցէր տալ նմա.
յաւէտ եւս նմա արարեալ միանգամայն իսկ
զերախտիս Թագաւորութեանն, և ձեռ-
ներէց (1) զնա առնել՝ առ 'ի տիրելոյ նմա բո-
լոր Հայաստանեայցս: Իսկ Թագաւորն ծա-
նուցեալ զպատուամն խորհրդոցն Յուսիկայ,
եթէ ոչ գոյ նմա կար հակամէտ լինել 'ի
վաատթարն, եւ կամ ուղղել ինչ զնպատակ
չարիմաց խորհրդեանն, սակայն քաջավայե-
լուչ իմաստիւ անխղճելի զմիտս իւր 'ի չա-
րութենէն պահանջեալ պատրաստէր. և վա-
րանակամօք ումամբք ընտրելի առնէր զեր-
կրպագն, տալ կրկին կամ երեքկին զաւելի հար-
կին՝ բեկարս արքունիս, և ոչ հարկանել ընդ-
միմեանս տուրականս կատարածիւ 'ի պատճա-

(1) Մէ օրէ. զձեռներէց:

ուրս ընդհանրականութեան վրիժուց. զի այր-
տուղ պատերազմաց մահ է, ասէ, և մահու
հրաւիրանս յատակս դժոխոց հայի։ Եւ այ-
նուհետեւ անխնայ զխուրն ստացուածս ա-
ռաջի արկանէր, եւ առհասարակ յամենե-
ցունց 'ի մերձաւորաց և յազատաց և յը-
ռամկաց և յանուամկաց ժողովեալ արծաթ
և ոսկի և կարասիս բազումս. և ձիս և ջորիս՝
տայր տանել նմա առատաձեռն ձրիւք (1)։
Զոր առեալ ընկալեալ մեծաւ շնորհակա-
լութեամբ, փաղփաղակի չու եդ յուղի անկեալ
գնոյ զկողմամբք Հերայ եւ Զարեւանդ-
գաւառի 'ի նահանգս Ատոկաց։ Եւ վասն
զի ինքն 'ի մեծ քաղաքն դէմ եդեալ էր եր-
թալ Ամա՝ որ 'ի Պարս անդ է, առաքէ զմին
Նսր անուն ոստիկան 'ի Հայս, որ Սբուքն
'ի բազմաց յորջորջէր. և ինքն կայ մնայ անդէն,
մինչեւ ոստիկանս և պետս և գործակալս
յարդարեալ կացուցանէ 'ի կողմանս Աղուա-
նից և Ատրպատականի։

Ի սմին իսկ յայսմ ամի ազգքն ապստամբ-
քըն այնոքիկ, զորմէ կանխեցաք յառաջագոյն
և ասացաք, օր վրիժուց հատուցման գը-
տեալ, և կալեալ զկէրձս ուղեգնացաց ա-
նապատին Հագարու, զոր 'ի նոցանէ՝ տուն

(1) Երեք օրի. առատաձեռնաձրիւք. Մի օրի. առատաձրիւք։

Եբրոհամու ստաքանի (1), առհասարակ ՚ի տուր սուսերի զնոսա մաշէին. որ աւելի առեն լեալ քան զերեսուն հազար ոգիս զկոտորելոցն։ Եւ զկանայս ամիրայեոին և զայլս եւս պատուաւորսն, որ մնացեալ փախստակ ազնութեամբ ուղեւորէին զանվարձ պողոտայն, զնոսա գերի առեալ տանէին. և բազում կապուտ կարասեաց և զգանձս ոսկւոյ և արծաթոյ յաւարի առեալ գնացին յիւրաքանչիւր յաշխարհս իւրեանց։

Իսկ փոքր ինչ յառաջ քան զպատմել սորա զայսոսիկ, մի ՚ի պատուաւոր ծառայիցն Յուսիայ Սարուքն անուն, այն որ ըզկնի արկանելոյն ՚ի բանտ զՅուսուփն՝ զառտիկանութիւն քաղաքավարութեան նորա կալեալ ճոխացուցանէր, նա սատակեալ մեռանէր Արտաւիլ քաղաքի, ուր և ժամանակ իսկ լինէր Յուսուփն՝ առնուլ (2) զընդդարձակ թանգարանն գանձուց և կարասեաց նորա ՚ի լինելն ընչաքաղցութեանն իւրոյ։

(1) Մի օր՝ սուրգարանի։

(2) Ընտիրն օր. առնէին առնէր. կամ առնել։

## ԳԼՈՒԽ ԿԵ.

Յաղագս վտանգելոյ Մխիթարեանց իշխանաց, և զանգիտելոյ Յովհաննու Կաթողիկոսի:

Բայց Գէորգն որում Մորուքն փաղաքշաբար յորջորջէին. և ոստիկան 'ի Հայս 'ի Յուսուփայ առաքեցաւ, իբրև չու էր երթայ հասանել 'ի Նախճաւան քաղաք, զեռեղեալ 'ի նմա աւուրս ինչ սակս 'ի նմա կնոջ նորա գոլոյն՝ անդի սոյ հաշտութեանն հեթանոսական սովորութեանց: Նորա փաղփաղակի ընդառաջ լինէր նմա Գաբկէն կրտսեր եղբայր Աբլբառոյ սիսական իշխանին, անհաստատ իմն երեւմունս երակեց 'ի սրտի իւրում սանդղանելով, զի թերեւս 'ի գնել նորա ուխտ ընդմահու՝ առցէ ընկալցի յինքն զհայրենի ժառանգութիւնն, զոր միապետական իսկ եղբայր նորուն Սահակ, և զկեանս զայս իւր վարկանէր: Իսկ Գէորգն առժամայն բանայր նմա զդրունս գթոց խորամանկ խորհրդով, և հակիրճ և համառօտ բանիւ խոստանայր տալ նմա զվիճակ ժառանգութեան իւրոյ: Սակայն զի դէտակն կալեալ սպասէր և եղբօր նորուն Իսահակայ ըստ սմին սակի գալ առ նա. զի զերկուքանչիւրսն առ նա դաւածա-

նեղս կայեցէ . եւ այնուհետեւ կոչեցաւ եւս եւ նա 'ի Եզրայ տէրն Սիւնեաց Սահակ ուրախակիր սրտի գթովք : Իսկ նորա յօժարեալ իբր 'ի կոչումն իմն արքունականս, փութափաղակի գայ հասանէ առ Եզրն բազում օժտութեան ընծայիւք . եւ իբրեւ թմբրութեամբ իմն անզգայացեալ՝ դնէ դաշինս ընդ դժոխոց, ոչ սկսեալ 'ի սրտի իւրում զիմաստութիւն, եւ ոչ 'ի մտի եդեալ զկատարեալ գիտութիւն, եւ ոչ նայեցեալ 'ի վախճան խորհրդոյն :

Իսկ Եզրն խարդաւանեալ զխորաման-կութի, եւ զերկաքանչիւրս զնոսա չրթամբք՝ այլ ոչ սրտիւ իւրեանց յարակցեալ, հրաւիրէ երթալ նոքօք 'ի մայրաքաղաքն Դվին . զի յապահովացեալք, ասէ, 'ի նմա իւրաքանչիւր ումեք, զիւրաքանչիւրոցն զօգուտն հա-գալ մարթասցուք : Այսպէս ապա դաւոյ դրժողութեամբ չու յուղի անկեալ գնային : Իբրեւ մօտ եղեն 'ի քաղաքագիւղն Բարնջոյ, ընդ առաջ լինէին նմա գլխաւոր գահերէցք եւ հոյակապ նահապետք եւ ազգատոհմք 'ի քաղաքէն Դվնայ : Իսկ նա իբրեւ ետես զառձեռն պատրաստ եկեալ հասեալ յաջողութիւն իւր, 'ի բաց մերկանայր այնուհետեւ յանձնէ զգաղտնի պատրուակ չարին, ձե-

ուրն զնոքօք արկեալ 'ի կապանս երկաթի շղ-
թայից առհասարակ զնոսա պաշարեալ, իբ-
րեւ արս աւելի քան զքառասուն դնէր 'ի
բանտի ։ Եւ այն օր երեկօթս յորում՝ էր՝ ա-
բարեալ դարէր դադարէր ։ Եւ իբրեւ լոյսն
զգիշերն մերկանայր, այնուհետեւ յուղոս
և 'ի Ջորիս զկապեալսն բարձեալ՝ մտանէ 'ի
քաղաքն Դվին, ընդ իւր տանելով զՍահակ
Սիւնեաց տէրն եղբարբն իւրով Բաբկենիւ ։
Իսկ 'ի մտանել նորա 'ի քաղաք անդր և դի-
պահոջ զկապեալ հեթանոսան դնել, ապա
զՍահակ և զԲաբկէն 'ի միասին ըմբռնեալ՝
և վարեալ 'ի տուռունս և 'ի շղթայս երկա-
թի կապանաց դնէ 'ի բանտի. և այսպէս մա-
հաշունչ (1) հարուածող խաբէութիւնն
զանձինս նոցա մատնէր 'ի բանտս և 'ի կա-
պանս և 'ի պատիժս մահու ։

Զայսպիսի աղէտս պղտորութեան և ըզ-
մուր դառնութեան լուեալ իմ՝ զոր ար-
բին հաւատոցեալ տեարք մեր, այլեւ հե-
թանոսք եւս՝ զրահեղեղ ամպրոպաց չարու-
թեան Հագարացւոյն. ոչ սակաւ ինչ փղձ-
կեալ եղէ նեղութեամբ ես՝ որ ըստ բը-
նութեան մարդկութեանս են ճահաւորու-
թիւնք ։ Յետ որոյ և գոյժ եւս աղմկի 'ի հա-

(1). Եղեւ օրէ. համաշունչ ։

ւատարմանց ամաց հնչէր յականջս իմ. փախչել խոյս տալ և 'ի բաց գնալ 'ի պատմէշ պաշարմանէն՝ որ սպառնացեալն էր մեզ։ Իսկ որ ընդ իմն էին կղերք եկեղեցւոյ. առեալ զահ երկիւղի դեգերէին 'ի դուրս տան իմոյ, աղաչէին զիս գնալ երթալ 'ի բաց, և տեղի տալ բարկութեան, յուշ արարեալ զտէրունական հրամանն՝ հալածել քաղաքէ 'ի քաղաք, և մի կալ հակառակ չարին։ Այլ ես տառապեալ ոչ եթէ յառժամանակեաց 'ի մահուանէ ինչ պակուցեալ խուսափեցի, այլ 'ի մօտ եղեալ զանհնարին մերձենութի հեթանոսական մոլորութեանն, զի մի թերեւս թագուցեալ հաղբք զխաւարախառ պատրանաց նոցա անկցի զմանկամբք եկեղեցւոյ. կամ թէ խառնումն ինչ չփոթից ընդ անարգութիւնս հեթանոսաց մեզ բերցի, որ արտաքոյ է բոլոր կրթական քաղցրութեան։ Եւ այսպէս իբր յիմարեալք իմն 'ի մտաց՝ զայժամն հայցեմք 'ի շնորհացն Աստուծոյ ածել (1) մեզ 'ի ցուցակութիւն։

Եւ իբրեւ խաւար գիշերին 'ի բաց եղեալ (2), և լոյս առաւօտին ծագեցաւ, յան-

(1) Երկու օրին. 'ի մեզ 'ի ցուցակութիւն։ Մի օրին. 'ի մեզ զցուցակութիւն։ Այլ օրինակ՝ զմեզ 'ի յաւակցութիւն։

(2) Մի օրին. 'ի բաց եղեալ։

կարծալքի յակման Թօլթախէլ դարձեալ խաւար գիշերային զմեօք արկաւ. ընդ որս և առհասարակ սքանչացեալ մեր՝ տեսաք զի խաւարեալ էր արեգակն առաւօտին պահուն. եւ այս բաս ընտրողութեան իւրն խորհրդածեաց և ծանուցեալ՝ եթէ ոչ է ժամանակ խաւարելոյ արեգականն, իմացաք հաւաստի նշան բացերեւակի մեզ (1) ՚ի Տեառնէ Աստուծոյ ցուցեալ. և այնուհետեւ շըտապ տագնապի եղբայրութեանն հասարակաց ստիպէր զիւրաքանչիւրսն ՚ի բաց գնալ ՚ի սպառնալեաց փորձութենէ անտի: Զայս սկսի տարակոյս այս ոչ Թերեւս հեղգացայ լուծանել, և ոչ կապել ՚ի գործապարս մեղաց նոցա, այլ անձապարեցի գնալ ՚ի բաց անտի՝ բացորոշութեամբ նախ քան զհաստանել վտանգին, առաջին տարացոյց լինձ հիմն եղեալ՝ Եղիա մարգարէ, և Պետրոս գլուխն առաքելոց: Այսպէս ապա ելեալ ՚ի վանաց անտի Այրեաց ՚ի կայորդից որբոյն Խաչակայ, որ ՚ի ծործորս լերինն Գեղայ՝ ՚ի ձորակի միոջ, դէպ ուղիղ գնացաք և ելաք ՚ի վերին վանս՝ ուր կոյսանքն անասնոցն էին. և անտի չուեալ գնացաք ՚ի միանձնացելոցն կուսակրօնից միայնարանս (2) որ ՚ի Սեւան

(1) Եւս օր. բայց երեւակ ՚ի մեզ: (2) Մի օր. մենարանս:

կղզւոջ, ունայնացեալ 'ի բոլոր ստացուածոց ասնոց և անասնոց, և միայն զփրկութիւն անձանց հոգացեալ. և 'ի նմին միանգամայն խսկ զհասարակաց եղբայրութեանն զերդուս ընդ մեզ եւս շարժեալ 'ի յօրհնութիւնն Աստուծոյ՝ աներկբայ յուսով կատարեցաք անդ աւուրս չորս: Այս ամենեցուն մեր միաք իբր 'ի մակոյկ ինչ վերելակել, և խուրաքանչիւրոք յիւր խորհուրդս սրտին նաւավարեալ վաղվաղակի՝ իբրեւ յշտեմարանէ իմիքէ զծածկեալսն յառաջ բերէաք բանիւառ 'ի յայտնել զ'ի խորոջ կայսն. և էր այսպիսի՝ զի դարձեալ ընդ կլուինկն երթիցուք 'ի կողմանսն (1) վայրս ուրեք՝ մերձ 'ի հայրապետանց եկեղեցին սուրբ: Եւ զոր ակամայ կամօքն թողաք լքաք 'ի բաց զինչսն և զստացուածսն և զպաշար անասնոց, զայն կամաւորաբար տացուք յընծայումն Հայարացւոյն Նլուրայ, թերեւս 'ի կամացն Աստուծոյ հաճեալ հաւանեսցին միաք նորա, և մի եւս սպառսպուռ անզաւակեսցի մայր Սիօն 'ի մանկանց առագաստի. և մեք 'ի սըրբարան մեր դարդարեալ՝ օրհնեսցուք զանուն Աստուծոյ մերոյ. եւ այսպէս ընտանեգոյն տեսողացն և լսողացն այս (2) խորհուրդ հա-

(1) Երկ. օր. կողմանսուր: (2) Երկ. օր. զայս:

մարեալ եղեւ ։ Եւ դարձեալ չեւ յուղի անկեալ չոգայք մինչեւ 'ի ձեռակերտ ամրոցին իմ Միհրականն, զոր ստացեալ էր իմ գանձիւ գնոյ, ուր և չինեալ և յարդարեալ իսկ և եկեղեցի հաստահեղոյս կոփածոյ քարամբք պերճապաճոյճ տեսութեամբ (1) և նկարակերտ յօրինուածով, և վանս կուսակրօն միանձնացելոց զնա հաստատեալ ։

Իսկ 'ի հասանելն մերում անդ՝ խոկոյն իսկ հրովարտակ առ Վլօրն առաքեցի. յուշ առնելով նմա զզարհուրեցուցանող իրագործութիւն որ առ 'ի յիւրմէն ինձ յայլ ոմանըս (2) ներգործեցաւ, բանտ և կապանք և չարչարանք անհնարինս մահու. և եթէ՝ վասն ոյսպխուոյ իւրք բռնմանց պակասեալ 'ի բաց գնացի. եւ արդ՝ եթէ արդէն իսկ տայցես ինձ յետկար երդման, աներկբայ մտօք զետեղեալ կացից մնացից 'ի դրունս եկեղեցւոյ տան իմոյ՝ օրհնել զԱստուած 'ի սրբութեան նորա. և ըստ ձեռին բաւականի՝ միշտ անդանդաղեցից զընծայս բարօրութեան առաքել տրիտուր քեզ ։ Ընդ ընթեռնուլ նորա զգրեալըն առ 'ի յինէն՝ վաղվաղակի յետկար երդման գրէ ըստ իւրեանց Կուրանին օրի-

(1) Երես օր. Ներքութեամբ ։
(2) Գրուտք յայլ նուազս ։

նոցին, որ ինչ միանգամ վստահելի են բանք դենսին նոյա. և այնպէս ապա զմիտս իմ առնէ 'ի բոլոր երկիւղէ կարծեաց, և 'ի մարտից արտաքնոց և յարհաւրաց ներքնոց՝ որ 'ի մարմնի են փոխանդք, և որք արտաքոյ մարմնոյ ։ Եւ այնուհետեւ ապա կարծեցեալ եղեւ ինձ այնուիկ յեռակարիւ եւ յօգտակարն ձեւել, և դարել դաղարել 'ի դդրունս մերոց որքարանաց 'ի կամս Աստուծոյ ։

## ԳԼՈՒԽ ԿԶ.

Յաղագս առման Բիւրակեան ամրոցին, և հարուածոցն որ եղեն 'ի նմա ։

Իսկ ոմն հնացեալ աւուրբք չարութեան և դառնաւոր անկանոն կրօնից Մահմետի, կատարեալ ատելութեամբ միշտ ջանայր եղծանել զքրիստոնէութիւն. եւ զօրացուցանել զհեթանոսական աղանդն, եւ այսպէս զայլանդակ մոայն զխղճմտութիւնս եւ զդառն մաղձութիւն սրտին յանկն Նորայն արկանէր ։ Ոչ պարտ է, ասէ, քեզ և ոչ արժան ուխտ խաղաղութեան ընդ քրիստոնէից վնա-

Թափելոյ զնել, մանաւանդ ընդ օրէնսդրին նոցա խոստրից աղանդոյն, որ միշտ վարդապետն զհաւատոյն մերոյ դաւանս հայհոյել, եւ շունս եւ գայլս Արաբացիս զաշակերտեալսն... անուանէ: Արդ՝ ընդէ՞ր այդպէս ուխտիւ խաղաղութեան քո ընդ նմա առաւել եւս տաչփրես, և յորդագոյնս եւս տարածես զպարանոց նոցա. իսկ եթէ ընծայաբեր զխուլթեան (1) նորա ցանկայոցի անձն քո, աստանապատիկ տուժեսցի քեզ այն, միայն թէ լուիցես ինձ: Այսուհետեւ առաքեա զօր բազում, զի նախ զխանս ածիցին Արին առցես քեզ. վասն զի ՚ի նմա կան գանձք և կարասիք բազումք, և զարդք գեղեցկայարմարք եկեղեցեաց չարափառն Կաթողիկոսին. եւ ապա զնոյն ինքն զմրրտամբոխս ժողովս ընդէսն զօրուն իսկ և իսկ ընթացեալ փութացուսցես ՚ի խնդիր առաջնորդի մոլորութեանն քրիստոնէից, զի կալեալ կապեալ ածցեն քեզ, և ընդ նմին զինչս եւ զստացուածս յաւարի առեալ բերցեն քեզ. և թէ երբէք խառնաղանջ ամբոխս ընդդիմացի, բազմահեղ արեան կոտորուածս (2) ՚ի

(1) Երկու օրի. ընծայս բերաւ զխուլթեան: Մի օրի. ընծայս բերաւ. ընծայաբեր զխուլթեան. իսկ Չզխուլթեան Ներքևս ընթեռնլի է օգտութեան:

(2) Մի օրի. կոտորածս:

վերայ նոցա հատուցեն անխնայաբար ։ Ի դը-
սոյն զայս և որք ընդ նմայն համամտութեանն
էին խորհողք՝ ասէին . և այսպէս իբր զգա-
զան չարի խածատել զնա զարթուցեալ . և
յանարգել բանս հեթանոսութեան զնա
յորդորեալ, փաղփաղակի առաջէ զօր բա-
զում՝ հեծելովք և լեգէոն վառելովք ՚ի
վանս կուսակրօնիցն՝ որ յայրի անդ յարեւե-
լից հիւսիսոյ գեղաքաղաքին Գառնւոյ ։ Եւ
իբրև չոգան, յեղակարծումն ժամու երթեալ
մտեալ յայր անդր, ըմբռնեցին զմիանձունսն
որ ՚ի նմա, և բազում գանից և չարչարանաց
վնասս մտնեալ՝ զատացուածս թագուցեալս
՚ի նոցանէ պահանջէին . մինչեւ ամանք ՚ի
չարչարելոյ անտի թէպէտև ոչ առ ժամայն՝
սակայն յետոյ յօգնապատիկ սուժի անդ (1)
աւանդեցին զոգիս իւրեանց ՚ի Քրիստոս .
և հասին երանելի յուսոյն՝ որ կայ պահի սի-
րողացն Աստուծոյ ։ Եւ այնուհետեւ զքնա-
բարեզարդութիւնս եկեղեցւոյ Քրիստոսի ,
և զաւետարանական և զմարգարէական և
զառաքելական Կտակարանս սուրբս . այլ և
զամենայն ստացուածս և զպաճար անասնոց
բազումս, միանգամայն իսկ զյօգնապատիկ
պարս մեղուաց բազմաց յասարի առեալ,

(1) Եղեւ զի . անտի ։

և զգեղեցիկ շինուածս չքնաղագեղս որ 'ի կուսաստանի անդ հրակիզեալ հրդեհեալ` չոգան գնացին 'ի բաց:

Իբրև յանդիման եղեն Նորայն, և իրն գործեցեալ պատմեցաւ նմա առ 'ի նոցանէ, վասն այնորիկ իսկ յիմարութիւն ցաւութե բարոյիցն յայլանդակ միտս զնա փոխաբերէր. ուստի վաղվաղակի իսկ զմրցարան մահու և կենաց նպատակ անձին եդեալ` և մարտամբոխ բազմութեան զօրաց հորդան տուեալ. զի գտնեա գաղտնիս իմն ծածկաբար 'ի վերայ ամրոցին Բիւրականու հասեալ` 'ի կապանս կալեալ տարցեն զիս, և որ ընդ իս էին կղերիկոսք, և զայլ բնակիչս ամրոցին սրակոխ արարեալ սպանցեն և գերեսցեն և աւար հարցեն: Իսկ իմ զմտաախոհապատ միգապատ մոլորութիւն նոցա նախ վաղվաղ իսկ ծանուցեալ. և ըստ առաջնոյ նուագին խորհրդածեալ` խոյս 'ի չարէն ետու առ 'ի լցումն տէրունական հրամանին: Եւ երթեալ չուեալ ճողոպրեալ գնացաք յարքունական ապարանս Բագարանու առ Թագաւորեալն Աշոտ, որպէս զի մանկունք մօր Սիոնի մի հեղեղեալ ողողեսցին սպառսպուռ 'ի հարաւահողմ խաբէութենէ հեթանոսաց: Բայց դրան մերոյ սուրբ եպիսկոպոսն

Յոհան, այլ երկու քահանայիւք ոմամբք և սարկաւագօք և կուսակրօն միանձնայելովք անդրէն 'ի նմին տեղւոջ անդեկացեալ[1] մինացեալ՝ յաղագս ցաւակիր ներքեւման մարմնոյ եպիսկոպոսին և այլոց եւս ոմանց. կամ թէ շաւթափութիւն ժամուն ոչ ետ թոյլ ժամանել զկնի մեր, կամ թէ առելն խոկ զայն՝ եթէ կոչումն ընծայութեանն Աստուծոյ և կանխագիտութիւն նորին յայն վնաս մերձ բերէր 'ի մարտս հանդիսի յաղթութեան. և պսակացն երանութեան՝ որ իմ բանս է, զոր և փոքր ինչ յետոյ բացայայտաբար ասասցուք:

Բայց զօրն խմայելեան իբրեւ իմացեալ ծանեան՝ թէ զաղանի նետից նոցա ձգումն ոչ եղեւ զանխուլ առաջի իմ, և թագուցեալ հալէք նոցա ոչ ծածկեցան, և խոյս եւս տալն իմ յայտնի եղեւ նոցա, այնուհետեւ զետղ առեալ գաղտարկէին. Թերեւս և զօր բազում գումարտակ արարեալ ապարատապաշտնս զինքեանս կալ կազմեցեն, և այնպէս վառեալք զթոյնս իժանման չարութեան 'ի հաւատացեալս Քրիստոսի թափեսցեն:

(1) Այսպէս ունին ամենայն օրինակք. Ընդ որոյ կամ տեղեկացեալ, Եւ կամ զտեղի կալեալ:

Իսկ ընակիչք Սիւրակուսանու ծանուցեալք զանբժշկելի միոս հեթանոսայն, և զջրահե-ղեղ ուղխիցն զսաստկութիւնն որ գալոցն էր, եթէ ոչ գոյ ճար ճողոպրելոյ փախստեամբ առկա քաղցում կանանց և մատաղ մանկտւոյ, այլ ծերոց ևս անաւագից՝ որոց անկարելի էր և անհնարին, և տեղի փախստեան ևս կորուսեալ. այսու ըստ դիպեցելումն՝ խոյս առեալ գնացին յշտեմարանս իւրաքանչիւր նոցա, և փակեցին զդրունս առաջի իւրեանց, և խառնափնեալք փախուցեալք թագուցան ընդ ապաստանարան պարսպի իւրեանց ՚ի քէն ամբարշտութեանն, աղաչական եղեալք յօգ-նականութեան ամենազօրին Աստուծոյ։

Իսկ ոմանք և յեկեղեցին յամրոց անդր կղ-րականք՝ որք իշխանաց աշխարհակալին էին զինուորեալք. քանզի իբրև լուան զչարա-շշուկ դժխեմաց զխորհուրդս իսմայէլակա-նացն. դիմեալ ուստեք ուստեք մտանէին յամրոց անդր թիկունս թիկունս տալ հա-ւատացելոցն, մինչ ՚ի կէս մղձման հանդիսի մահու։ Այսպէս առ հասարակ նորա ասա-ցեալ այր ցընկեր իւր. Մինչ ցայս վայր, ասէ, զօրավարաց մերոց հանդիսացաք հան-դիսանալ ՚ի կեանս կենցաղօգուտս, իսկ այ-ժմ իբրև զգառունք զինուորս վշտակիցք

լիցուք Քրիստոսի և հաւատացեալ ժողովր-
դեան նորա ։ Եւ այսպէս գնաց ընդ կեանս
խառնեալ՝ զքարոզ պատուիրանին զընթացս
ըղձանայքն լնուլ ։

Իսկ ապա զօրքն խմբեցեալ ըստ օրինի
բքոյ իմն չփաթեալ փոթորկեալ եկին հա-
սին 'ի դուռն ամրոցին անհնարին անօրէն
դղրդմամբ, և հեթանոսական անարգել մո-
լորութեամբ ․ և ապա ապարափակ լեալ
շուրջանակի լեգէոն հետեւակ զօրուն, և
թիկնապահ նոցա լեալ հեծելազօր վառելոյ
գնդին 'ի մէջ անցելոյ, այնուհետեւ շահա-
տակէին զազանաբար 'ի վերայ յարձակեալք ։
Զայնպիսի մահառիթ ոճիրս իբրեւ տեսա-
նէին մարդիկ ամրոցին 'ի քանութենէ իմն
հարկեալք լինէին, այր առ այր և մարդ առ
մարդ կուտակել եղանել 'ի գլուխս պարըս-
պացն ․ և այն օր տակաւ ինչ ընդ կոյս հա-
րեալք ընդ միմեանս, մինչեւ գիշերն մեր-
ձեցաւ և տիւն մերժեցաւ ։ Իսկ 'ի միւսում
առաւօտուն մինչդեռ էր աղջամուղջ ․ առ-
հասարակ մարդիկ ամրոցին 'ի դուռն քաւա-
րանին սրբոյ մերձ եկեալ հայցէին 'ի սրբոյ ե-
պիսկոպոսէն տալ նոցա զմեղքաքաւիչ մար-
մինն և զարիւն Տեառն ։ Իսկ նա հրեշտակա-
կան շրթանցն շարժմամբ և նազելի բարբա-

ռով տուեալ քան զմեր բանս վարդապե-
տէր Նոցա՝ որոց աշակերտեալն էր զճշմար-
տութիւնն, և միանգամայն իսկ զմիջնակա-
ւոր կղերիկոսսն հանդերձ զինուորաւն գն-
դիւ, և այլ ևս աշխարհակոյտ մարդկան
յարդարէր 'ի խորհրդածութեան պաշտօնն՝
ամբառնալ զմիտս իւր առանց ամենայն վնա-
սուց. և խնդրել զհաստատութիւն հաւա-
տոյն՝ որ 'ի Քրիստոս, զի մի դրդուեսցին
սիրտք ձեր 'ի միաբանութենէն որ 'ի Քրիս-
տոս՝ յաղագս պատերազմին որ նեղէ զմեզ,
և մի կացուցանիցիք զսոսա ձեր յանցաւորիս
կատուցմամբ իբրև յաւխտենականի: Այ-
սպա Տէր ինքնին իսկ յայց ելեալ ձեզ իւ-
րով մարմնովն և արեամբ զոր ընդունելոց էք՝
զմեղաց զկարծան դատապարտեսցէ վասն
մարմնոյ իւրոյ՝ որ է եկեղեցի, որ էք դուք:
Այլ տացէ ձեզ զգաստութիւն յաղթել աշ-
խարհակալին խաւարի այսու չարութեան՝
որ շուրջ զմեօք կան մածեալ, զի մի յակա-
նեսցեն (1) զզգեստն լուսոյ, որ Քրիստո-
սիւ զգեստաւորեցայք 'ի մկրտութենէ նա-
խահօրն. և մի յափշտակեսցեն յանձանց մե-
րոց զքրիստոսադրոշմ զկնիք աւազանին սրբ-

(1) Երկու օրի. ակամնեսցեն: Մէ օրի. արկանեսցեն զզգեստն լուսոյ 'ի բաց:

քոյ։ Եւ այսպէս զմիտս նորա կրքեւ հրով վառեալ, զամենեցուն զերգս շարժէր յօրհնութիւնս ամենեցունցն Աստուծոյ. այլն-դանկալ՝ ընտա առնելով ՚ի մշտնջենաւոր աղօթսն։ Եւ ապա մատուցեալ զպատարագելի զպատարագն զառ ՚ի Քրիստոս, եւ զխորհրդն փրկական մարդկան բաշխէր առհասարակ ծերոց եւ տղայոց. արանց եւ կանանց եւ ամենայն չափու հասակի խորհրդականս աւանդութեամբ, ըստ սակի յետին Թոշակի։

Իսկ բոմբիւն (1) աղաղակի եւ մարտամբուխի խմբելեան զօրուն եւս քան զեւս առաւկանայր, եւ հնչմունք եւ կայթմունք եւ կաքաւք զինուց նոցա եւ վահանաց հնչեցուցանէին զերեսս երկրին ըստ գիւղոյ բնակչացն Նակովեան գաւառի։ Ապա եւ մարդիկ ամրոցին բազմաձեւալ շրջապատեալ ՚ի գլախոյս պարսպացն, եւ ակնակառոյց առ Աստուած լեալ՝ զի օգնեսցէ նոցա ՚ի պատերազմի նեղչայն, եւ մի դրդուեսցին ՚ի դիւախոխս մոլորութենէ հեթանոսացն։ Եւ այնպէս ապա մարտ ՚ի վերուստ ՚ի վայր եդեալ, բազում արեան ճապաղիս ՚ի թշնամեացն հեղուին, եւ ըղաղումն թաւալգլոր խաղացուցանէին։

(1) Մի օ. բըբիւն։

Իսկ եպիսկոպոսն սուրբ հանդերձ այլ և կղերիկոսօք հանապազօր կանխէր յաղօթս և խնդրուածս, զի արիւնռուշտ և անգառա-գեղ գաղանացն մի եղծցի վարատել օծանել(1) զպատուութիւն հօտի Տեառն, զոր և ընտրեաց Իսկ Իւր Տէր ՚ի ժառանգութիւն. և ժողովուրդ սեփհական՝ մարմնին իւր և անդամ անուանեալ. այլև խրախոյս եւս քաջալերութեան ամենայն իրօք մարդկան մատուցանէր, մի կալցիլ ՚ի տուռունս մեղաց որ ըստ մարմնոյ, և մի մնել ՚ի վախից(2) յառժամանակեայ մահուանէս. այլ զհոգւոյն մաքրել զպատուութիւն, և հայել յերս գնացից իւրեանց, և չարչարակից Քրիստոսի լինել, և նմանող հաւատոյն որ առ Աստուած : Նաև աշակերտացն եւս Թէոդորոս, որ վերակացու շինուածոյ եկեղեցւոյն էր, և մարզիչ մարդկանն, ոչ սակաւ ինչ թելադրութիւն նոցա ընծայէր ասելոցն. Հիւանդացեալքն, ասէ, ՚ի մարդկանէ թէ և ՚ի մահ, ասէ, աշխատանցին, սակայն առողջութեանն յուսով թեթեւանան : Որդ՝ մի աճապարեսցէ այս վտանգ հիւանդութեան որ զմեօքս է՝ տարապարտ մեռուցա-

(1) Երկ. օրի. մի հեղձի վարատեալ օծանել կամ ձգտել :
(2) Մէ օրի. ի վաղից :

նել զձեզ մարմնով, այլ հոգւով զօրանալ, և ճգնել 'ի մարտն՝ որ ըստ օրինին Քրիստոսի է, զի ընկալջիք զբրաբիոնն յուսով կենացըն յաւիտենից։ Արդ՝ այսպիսի խրատու բարբառոյ առհասարակ նոքա զանձինս տուեալ, այնուհետեւ ոչ միայն ինքն հեշտութիւն անձանց շնորհէին՝ որք ըստ մարմնոյն են ճահաւորութիւնք. այլ զքարուոք պատերազմին պատերազմէին 'ի վերայ հօտին Քրիստոսի և զաւակաց իւրոց՝ հոգեհրաշ ճգնութբ վառեալ զինու զօրութեամբ հոգւոյն Տեառըն իւրեանց։

Իսկ թշնամիքն որ 'ի խաւարի և 'ի մութ փրփրուց հաստուցման զմիտս թաթաւեալ էին, թէպէտ և աւուրս եւթն ստէպ ստէպ զմարտ հինէին 'ի վերայ հեղուին, և ոչ կարէին սասանել ամրոցին։ Ապա ոմն 'ի լերդէոն զօրացն ամրոցին 'ի բաց եղեալ զկերպ կենածին յուսոյն, և զողորմութիւն և զհաւատս ուրացեալ, փաղփաղակի տայ զամրոցն 'ի ձեռս ժպիրհ և անօրէն Հագարացւոցն։ Իսկ նոքա յաւէտ ինքն խրախ լեալ, և խրնճոյս մնաց իւրեանց մատուցեալ, փաղփաղակի գրոհ տային, և սանդղօք ոտամբք 'ի վեր ելակեալ հեղուին յամրոցն։ Ապա զթագուցեալ հաղբան յայտ ածեալ՝ գաղանաւ֊

քար ընդդէմ բախէին մարդկան զխորհուրդ֊
ոյն չարութեան, և անընտանի չարախօսա֊
վար (1) մտօք սկսանէին զամենեսեան անո֊
ղորմ սրոյն տալ ճարակ. և հեղումն տարա֊
պարտ արեան նոցա բղխեալ յորդեալ ոռո֊
գանէր զառատորէն ամենայն, և դիակունք
անկելոց շեղջակուտեալք 'ի վերայ միմեանց
անկեալ դնէին :

Իսկ եպիսկոպոսն սուրբ հանդերձ այլ
եւս ժառանգաւորօք եկեղեցւոյն ամենա֊
գիշեր տքնութեամբ և բազմատարած ար֊
տասուօք և պաղատանօք աղօթս առ Աս֊
տուած մատուցանէին, ոչ 'ի բացէ առնել
'ի նոցանէ զայցելութիւն իւր : Ու այսպէս
վայելչացեալ է, գերազանցեալ է յամենայնի
'ի սրբոցն (2) նմանութիւն : Իսկ անօրէն դահ֊
ճացն եկեալ գտեալ զնոսա յաղօթս 'ի քա֊
ւարանումն որքում. ահս պակուցանողս ըդ֊
նոքօք ջանային արկանել սուսերացն շողա֊
մամբ, և փահանացն թնդմամբ, եւ ատա֊
մանցն կրճտելով. և երեսաց տարագոյն շա֊
ռագունութբ. այլ նոքա ոչ ինչ զարհուրե֊
ցան, և ոչ երկեան սիրտք իւրեանց յար֊
հաւրանաց անօրէ մոլեգնելոցն, զի այցելու֊
թիւն Տեառն էր շուրջ զնոքօք, եւ պահէր

(1) Երէք օր. չարախօսաւոր : (2) Երէք օր. սրբոցն :

զնոսա ։ Նորա արտաքոյ զնոսա միանգամայն ՚ի քառասնամենէն հանեալ՝ մերկացուցին ՚ի նոցանէ զզգեստսն՝ ՚ի մահ զնոսա փարակելոյ. և ՚ի մէջ անխղճապատ սառնորաց խառնայրի զաչասրտից իւրեանց հեղեալ՝ զհեղեղսն ՚ի վերայ նոցա. և նախ զեղխակղապան սառըն փաղակաւորօքն կարկաձակոտր անձինն, իբրեւ սապարօք չեչասկի չերտեալ (1) զծառ. եւ զկնի այս հատեալ եւս սուսերաւ զգլուխ նոցա ։ Իսկ դքահանայս սուրբս և զկուսակրօնս միաբանութեան և զաստղմասերգութեան իբրև զոչխար ՚ի սպանդ վարեալ ՚ի գենումն՝ նաւերական անուշահոտ պատարագաց Քրիստոսի փառաւորելն, հատեալ եւս զիւրաքանչիւրոցն նոցա զգլուխն ։ Եւ այսպէս առհասարակ սոքա իբրեւ զպատուականս զգանձից զհաւատոյ ճշմարտութեան զգեցեալ զփառացն զլուսոյ պաճուճանս զգեստաւորել արժանի գտան, և անթառամ պսակօքն պայծառանալ ։

Բայց սարկաւագն Թէոդորոս ոչ էր ընդ նոսա ՚ի ժամ կատարմանն նոցա, զի նախ քան զայն ՚ի թշնամեացն նեղաձգութեանցն վիրաւորեալ անկեալ դնէր ։ Իսկ չար դահիճքն խնդրէին և զնորայն եւս հատանել զգլուխն, այլ նա ոչինչ կրէր զվիշտն, և ոչ եւս նե-

(1) Մէ օրէ․ չերտ կրտեալ ։ Այլ օրէ․ Վ չէր կտեալ ։

զուարթութեամբ փղձկէր ըստ մանկական ակաց , քան թէ ախորժ յօժարութեամբ ըզ-պարանոցն կարկառէր ։ Նոյն այսպէս հա-տեալ զգլուխ Նորա , զմահ եդ կնիք հաւա-տարիմ ճշմարտութեան հաւատոյ իւրոյ , և վերագրեցաւ յորդիս Աստուծոյ ։

Իսկ զայլ ևս մարդիկ ամրոցին խոնարհ արարեալ 'ի տեղի չարչարանաց , և ածեալ իբրև զոչխարս 'ի սպանդ իսմայէլեան եր-կաթոյն՝ որ ոչ ևս առնու յագուրդ , այլին կերակուր . և հատեալ զգլուխ բնաւից նո-ցա , զի առեալ տարցեն ոստիկանին , և պար-ծանս քաջութեան Նոքօք իւրեանց ստասցին . որք այսպէս և Նոքա առհասարակ 'ի ժամ կատարմանն ասէին . Տէր Աստուած ամենա-կալ ամենագութ ամենախնամ , գոհանամք զքէն՝ որ ետուր համբերութիւն ժուժկա-լութեան 'ի պատերազմիս . զի մեք զքեզ ոչ մոռացաք , և ոչ ստեցաք ուխտի քում , և ոչ դարձաք յետս սրտիւք մերովք . և արժա-նի արարեր զմեզ հասանել մասին վիճակի սրբոցն 'ի լոյս ։ Արդ՝ ընկալ զմիաբանութիւն մեր 'ի խաղաղութեան , և շահեա դու զոր-դիս ապանելոց քոց ։ Նոյն այսպէս բարեբա-րութեամբք բարեաց 'ի բարեբարէն արժա-նի գտան ։

Դրին ոմանք և հեթանոսք 'ի բնակչաց տե-
ղւոյն հողագործ մշակութեան պարապեալ.
և հարկս մեզ հարկանէին ։ Եւ իբրեւ այս
եղեւ, նոքա 'ի մի վայր ժողովեալ ձայնս առ
Թշնամիսն արձակէին յիւրեանց լեզուն, Թէ
մեք ձեզ նմանեալ 'ի ժողովրդեանն Մահմետի
առաջելոյ եմք. և այնպէս 'ի լսել գահճացն,
ամենեւին 'ի բաց 'ի նոցանէն գերեցին ըզ-
սուրս իւրեանց, զի ոչ և մի ոք 'ի նոցանէ
վրիպէր ։ Եւ սոյն այս հեթանոսք խանդա-
ղատանօք ողջէին զմի մի հաւատացելոցն,
երթալ խառնիլ 'ի նոսա, և ապրիլ յանհնա-
րին մահուն երկիւղէ ։ Բայց նոքա բացէ 'ի
բաց գնացեալ ասէին՝ մեր կեանքն Քրիստոս
է, և մեռանելն շահ է ։ Եւ այսպէս մահա-
շունչ սուր ծարաւին ոչ կարաց երկմտեցու-
ցանել և ոչ զմի ոք 'ի նոցանէ 'ի սիրոյն Քը-
րիստոսի. և այսպէս 'ի միում աւուր 'ի մի-
ում ժամու առհասարակ ամենեքեան նոքա
զենմունք կատարեալք ընծայեցան Քրիստո-
սի 'ի հոտ անուշից ։

Սուրբ եպիսկոպոսն Սահակ, որ զանուն
պտղոյ քաղցրութեան իւրոյ յաշխարհի Թող-
լով՝ արտախուրեցաւ քրիստոնեան պսակովն,
և սուրբ քահանայքն որ ընդ նմին հանդիսա-
ցան ։ Սոյնպէս յամուսնացելոց, և եղբարք

ամուսնացելոյն Մովսէսի քահանայք՝ Դա-
ւիթ 'ի կրօնաւորական կարգէ և Սարգիս
յաշխարհական ։ Իսկ Սահակ որ 'ի տղայա-
կան հասակէ աչացու գոլով , և կատարեալ
գիտութեամբ և ամենայն առաքելական վա-
րուք էր պայծառացեալ . և սա իբրև զոչ-
խար 'ի զենումն ածեալ՝ անմատոյց և անմա-
հական լուսոյն լուսաւորեցաւ ։ Սոյնպէս և
երանելի այրն Աստուծոյ Սողոմոն , որ 'ի Սա-
գաստան աշխարհէ եկեալ բնակէր առ մեզ
խստամբեր վարուք , և առաքինահրաշ կար-
գօք քաղաքավարէր 'ի մարմնի իբրև անմար-
մին , և զնա 'ի նմին ժամու գլխատեալ , աս-
տուածապայծառ և անճառելի լուսերանգ
պսակաւն պսակեցաւ ։ Յետ ամենեցունց
սոցա և սարկաւագն Թէոդորոս՝ վարժէ կան-
խեցոյց ատացաք , որ 'ի Թիւ սրբոցն վերա-
գրեցաւ համբերութեամբ բազմաւ , ընդ ա-
մենեսին սոքա ութ թուով ։ Իսկ այլ բազ-
մութիւն արանց որ յայնմ աւուր սպանան՝
'ի զինուորական կարգէ և յաշխարհական ,
աւելի քան զերկերիւր հոգի , որոց անուանքն
նոցա գրեալ են 'ի դպրութիւն կենաց . եւ
գրեթէ ոչ ոք ապրեցաւ յարանց տեղւոյն
այնորիկ՝ բաց 'ի սակաւուց ոմանց , որ նախ
քան զհնձումն սոյն ելեալ գնացեալ էին 'ի

գործ վատառակոց ձեռաց իւրեա՛ց։ Իսկ յեկեղեցւոյ մանկանցն սարկաւագ մի Գէորգ անուն այրեցաւ յանհնարին մահուն երկիւղէն, զի վայելչացեալ այրն ճանաչիւր 'ի ժառանգաւորս եկեղեցւոյն, և վասն այնորիկ ոչ արկին զնա 'ի բոցս եռանդեան չարութեանն, զի մերթեւս ասցեն ինչ 'ի նմանէ ըստ բարուց օգտի առ 'ի ծծել զպատիւն նորա։ Իսկ նա ոչ կացեալ հակառակ չարինգոյն չափ զկեանս իւր 'ի նոսա թողեալ, ինքն չուէ գալ առ մեզ։ Եւ սա իսկ զհետաւանս բանի զրուցացս այսոցիկ մեզ բացայայտէ մի ըստ միոջէ։ Այս ամենայն եղեւ յի թուականութեանն Թորգոմեան, և ահեկի ամսոյ՝ որ օր Ժ էր։

Իսկ չարալլուկ խամայէլեանն զօր զկրապուտ կողոպուտ սպանեալցն և զառ և զաւար և զպաճարանս անասնոց բազմաց 'ի մի վայր ժողովեալ ջոկս առեալ, այլ և զարղաս սպանելոցն և զկանայս գերի առեալ, և զպատուական գլուխս կոտորելոցն 'ի գըրաստի բարձեալ՝ խորախոյս տաղին խաւարային գդշմամբ (1) և լկտի երգօք և պարուք։ Եւ այսպէս առհասարակ զամենայն ինչ զոր և ըմբռնէին՝ առեալ չուեալ գնացին։ Ընդ

(1) Մէ ռէ. գղըդմամբ։

էր ապա տեսանել զձայն աղաղակի, և ողբս անհանգուրժելի. և արտասուաթոր կականումն և սաստիկ պաղատանօք կանանց եւ տղայոց բազմաց. և սարսափելի սասանումն հարուածելոցն տանջանէր զսիրտ ամենայն լըսողացն, և 'ի դառն արտօսր զարթուցանէր: Իսկ նոցա ըստ բազում ցաւոց սրտից իւրեանց՝ ոչ այլ ինչ բերիւր 'ի մխիթարութիւն, քան թէ հարց և եղբարց, արանց և որդւոց նոցա տարապարտ արեանցն հեղումն, որք Քրիստոսի ընծայեցան նուէրք. և այսպիսի յուսով զօրացեալք, և ձեռս 'ի վեր ամբարձեալք՝ խնդրեցին 'ի Տեառնէ ապարեցուցանել փոսս յանօրէն գերչացն անարգել պղծութեանցն. ասելով այսպէս. Մի՛ եկեսցէ 'ի վերայ մեր ոտք ամբարտաւանից, և ձեռք մեղաւորաց մի՛ դողացուսցեն զմեզ:

Ունէին եւս ընդ գերելոյն զօրն խաժայելեան արս երկուս բեռնակիրս առաջի իւրեանց, մի 'ի զինուորական կարգէ, իսկ միւսն յաշխարհական, որոց անուանք երկոքանչիւրոց նոցա համանուանաբար Կիւրակոս ճանաչիւր: Երբեւ յանդիման եղեն ատիկանին պղծոյ, և առաջի մատուցին զգեբեալն և զպատուական գլուխն ընտրելա-

ցըն Աստուծոյ, և զկապուտ աւարին, յաւէտ ինն զուարթացեալ զուարճանայր. իսկ և իսկ հրամայէ զգերեալսն առհասարակ լուծանել թողուլ 'ի բաց՝ ուր և կամիցին երթալ, զի խնդրուածք որոց սպանելոցն յիշատակեցան առաջի Աստուծոյ. և այցելութիւն նորա փրկագործել ետ գնաս 'ի գթութիւնս առաջի ամենայն գերչաց նոցա: Իսկ սակաւք ինչ իբրև ոգիք տասն՝ որք թագուցան 'ի թշնամեացն անտի՝ տղայք հասակաւ, զոր սուղ ինչ յետոյ առաքայ ես գնաաս 'ի գինս արծաթոյ, ազատեալք այսպէս(1) յանկանոն կրօնից նոցա: Իսկ 'ի միւսում աւուր անդ զերկուս արսն համանուանս՝ զոր զկնի գերելոցն բեռնակիրս իւրեանց ածեալ էին. հրամայէ զնոսա առաջի դատապարա դատաւորացն կացուցանել, զի կամ պաշտեսցեն զանօրէն օրէնս նոցա, և կամ սրով վախճանեսցին: Իսկ իբրև ածան և հարցան 'ի դատաւորաց անտի, նոքա զուարթագին աչօք ճառագայթեալք. և 'ի վեր ելս 'ի սրտի դնելով ասէին. Ոչ օրէն է մեզ քրիստոնէից ուրանալ զՔրիստոսի աստուածութիւնըն, և դառնալ յանաստուած աստուածածանօթութիւնն . . . և մեք վասն անուանն

(1) Ցեղինա օր. ՆԻԴ այսպէս: Մի օր. այսպիսիք:

Քրիստոսի պատրաստ եմք 'ի մեռանիլ՝ և ոչ կեալ խղճիւ ։ Իսկ իբրեւ ծանեան զանհը-րապոյր միտս Նոցա , այնուհետեւ հանեալ զիւրաքանչիւր զնոսա 'ի Թէատրոն անդր , ձարակ անողորմ որոյ տայրն . և այսպէս 'ի բովս հրաբորբոքս կամաւոր փորձեալք մա-հու , և զտեալք և քննեալք՝ որպէս և քննի արծաթ , բարձրացան 'ի բարձունս բարձ-րութեան երկնից՝ ընդ հրեշտակս դասակ-ցելով . առեալ զպսակն լուսոյ և կենաց յան-ձինս իւրեանց ։ Այլեւ կատարումն սրբոցս այսոցիկ յամսեանն ահկի՝ որ օր ժէ էր ամսոյն։

Բայց զկենսաւորսն զայնոսիկ որք մասնե-ցին զամբոցն 'ի ձեռս հեթանոսաց , զնոսա եւս առեալ ընդ ինքեանս զկնի գերելոցն՝ տարան առ ոստիկանն , զի զդարձ փոխարինի երախտեացն զոր ցուցինն՝ հատուսցէ Նոցա , այլ և զդահեկանացն եւս տարեւորս բաշ-խեսցէ տացէ Նոցա ։ Եւ իբրեւ յանդիման ոստիկանին եղեն , և ակն ունէին փոխարինին վարձուցն հատուցման , Նա իսկոյն իսկ հր-րամայէ սրով սատակել զնոսա . և այնպէս ըստ արժանի իւրեանց կոչկոճամահ լեալ՝ հատաւ յոյս կենաց Նոցա . և առ Նոսա լցաւ իմաստնոյն սուետրիկոսի բան հաւատարիմ , եթէ՝ Յոյսք առ կենդանեօք՝ անյոյս մեռանին։

# ԳԼՈՒԽ ԿԵ.

## Յաղագս վտանգելոյ իշխանացն Ռուբինեանց և Սա-տակայ։

Ըստ այսմ հրամանն հանեալ առ Լևոն ի Յուսփայ ոստիկանէն մեծէ՝ չուել գնալ յԱտրպատական աշխարհ. և զապստամբեալ Գաբաւծնացին կողմանցն այնոցիկ կամ ի հնազանդութիւն նոցա հաճոցել, և կամ մարտիւ պատերազմի օրակօք առնել։ Իսկ նա զմի ի ծառայից իւրոց պատուաւորաց Օրչէ անուն ոստիկան ի Դվին քաղաքի հաստատէր, նմա յանձն արարեալ զՍիւնական տէրսն՝ զՍահակ և զՆաքկէն, զի մնիցին ի դիպահոջ ի բանտի և ի կապանս մինչև ի դարձ իւր այսրէն. և ինքն չուեալ գնայ ըստ հրամանի ոստիկանին Յուսփայ։

Իսկ Օրչէն այն որ յետ ընդ կրունկն թողու, ժողով սպասականօք զօրու բազմի գումարեալ արարեալ՝ ելանէ զկողմամբք Գեղամաչէն գաւառին Մազազայ, քննախնդիր լինելով Շահան կոչեցելոյ շահոյ՝ վասն ոչ հնազանդելոյ նմա նոցա։ Եւ վասն զի նա յանմարանչելի ամրոցն ի Սևան կղզւոջ առկայանայր, և Օրչէն զոր խնդրէր՝ այնմ ոչ եհաս, այնուհետև խորհէր ձեռն զգաւա

ռօքն արկանել, և զաւկաւսմանեայ մնա-
ցորդս մարդկան գերել և աւար հարկանել,
և ճարակ սրոյ տալ. վասն զի աւերեալ եւ
անմարդացեալ էր 'ի բնակչաց աշխարհն ա-
մենայն յաւարառութենէ թշնամեացն. սա-
կայն և այնպէս ոչ յաջողեցան նմա չարիմաց
խարդաւանութեան խորհուրդքն։ Վասն զի
ոմն 'ի պատուաւորաց անտի Շահանն կոչե-
ցեալ շահայ՝ Գէորգ անուն, ելեալ չոքէր
զգուշաւորօքն տակաւսամանեայ շինութիւն
աշխարհին ամրացուցանել 'ի հինից թշնա-
մեաց։ Իսկ Ներսէսն 'ի դիմի նմա հարեալ յե-
ղակարծումն ժամու, խոկայն առնոյր Գէոր-
գըն զահ երկիւղի, զի ոչ աւելի քան զքսան
այր ընդ նմա էին, և Ներսէսն այն՝ իբր զհա-
զար այր. սակայն 'ի Տէր յուսացեալ՝ 'ի կըռ-
թութիւն յաղթութեան ընդդէմ նոցա
դեգերէր։ Ու ապա քաջապինդ քաջողջու-
թեամբ սրտի ընդդէմ նոցա արիաբար շա-
հատակեալ՝ ձի 'ի ներքս տանէր, և բաղում
'ի նոցանէ թաւալգլոր խաղացուցանէր.
և թէպէտ և յիւրոցն եւս արանց սակաւք
ոմանք արտախարեալք 'ի թշնամեացն անկա-
նէին, սակայն մոլորահողմ խաբէութիւն
մոլաց իսմայէլականացն ընդ կրունկն 'ի փա-
խուստ զնոսա առաջի նորա դարձուցանէր։

Իսկ նոցա անարգել մոլեգնութեամբ զմաւախուղ ատուերաց խաւարի զանձամբ արկեալ, զոր միանգամայն գտանէին զճանապարհայն՝ որոյ ճարակ տային զգօն և զանպարտ քահանայսն և զերկրագործ մշակս և զխաշնարածսն և զճանապարհորդսն և զաղքատսն ևս: Իսկ այսպէս զանպարտն պարտաւոր մահու արարեալ, և հատեալ զգլլուխս նոցա՝ ընդ իւր առեալ տանէր ՚ի Դըվին քաղաք, փոխարէն պարծանաց՝ իբր թէ անձին քաջութեամբ և մարտիւ ռազմազայն գործեալ էր նորա յաղթութիւն, որք էին թուով աւելի քան զքսան տարապարտ հատեալ գլուխքն:

Իսկ ապա աւուրս հարուստ մի դարեալ դադարեալ, զօրու բազմի դարձեալ հորդան տայ կրկին քան զառաջինն. և ասպազէն առնազէն զնոսա վարեալ՝ չուէ զնոյ յեզր ծովակին հանդէպ ամրոցին Սեւան կղզւոյն, թերեւս անզգուշաբար ՚ի վերայ հասեալ Շահանն կոչեցեալ շահայ, որոգայթս մահու կամ կապանաց նմա մարթացէ հատուցանել: Իսկ նա իբրեւ ետես զայն ուժգնութեան առ դուռս եկեալ հասեալ, փաղփաղակի պատրաստ նաւս տասն մի, և ամբառնայ ՚ի նաւս անդր եօթանասուն ա-

զատոս և զծառայս իւր լայնալիճ աղեղամբք. առս քաջակորովս և հմուտս 'ի ձգտումն նետաձգութեանց, որ գրեթէ 'ի մազոյ ոչ վըրիպէին: Նոյա եւ ինքն եւս ընդ նոսին 'ի նաւսն վերելակեալ՝ գնայլին ծովամարտիկ առ Թշնամիսն. և միջամուխք լեալ յաջողաձեւն նետաձգութիւնս, զամենս միակամնիս 'ի Թշնամեացն առնէին, և զայլս բազումս կարեվէր վիրաւորեալ սատակէին. և այնպէս հատեալ ջարդեալ 'ի բաց զմարտ ռազմին բազմութեան Թշնամեացն՝ 'ի փախուստ առաջի նորա դառնային:

Իսկ Ներսէն այն ամօԹ զանձամբ արկեալ՝ ջանայր վրէժս փոխանակ այնր պահանջել. և դէպ ուղիղ գնացեալ յամրոցն Պեղայոյ, Թերեւս անզգուշաբար 'ի վերայ հասեալ՝ առնանել զինչ նմա մարԹասցէ. սակայն և անտի եւս ձեռս 'ի գլուխ ելանէր: Վասն զի Պէորգն այն՝ զորմէ նախ պատմեցաք վասն մարտի քաջութեան նորա, ըստ դիպաց իմն յամրոցի անդր հանդիպեցաւ. և իբրեւ ետես զայն ամբոխ հասեալ մերձ 'ի դուռն ամրոցին, ապա վառեալ 'ի զէնս և 'ի զարդս և 'ի տէգ նիզակս, և այլ եւս արս սակաւս ընդ ինքեան առեալ՝ արտաքս առ 'ի Թըշնամիսն յամրոցէն ելանէր. և ապա միամա-

առեալ ընդ ապաշխարողս զօրութիւն, նախ կարթակոտոր զերիվար Երբրայն առնէր նրանաս որոյն, մինչ զի հազիւ յայլ ձի աշտանակեալ փախչէր։ Իսկ ապա այլոցն եւս մարտակցացն աջակցեալ Գէորգայ՝ տապաստ արկանէին զյոլովս 'ի թշնամեացն, եւ 'ի փախուստ զնոսա դարձուցանէին. եւ առ նմին յարառոցեալ լինէր զնահատակութիւն միայն առ բազումս՝ ասել թէ, Դաւիթ արուարագոյն քան զԳեթացիսն։ Իսկ կարաւան թշնամեացն այսպէս ձաղանօք գնացեալ մտին 'ի Դվին քաղաք, եւ բազում սպառնալեօք ջանային վրէժս 'ի բնակաց ամրոցին պահանջել։

Իսկ ես՝ որ նախ չոգայն 'ի թագաւորազանց բողբոջն Աշոտոյ, առ նմին կացեալ մնացի մինչեւ ամառնայինն յաշունն յեղանակեալ յեղափոխէր, բազմաբար բարեաց մտաց բարութիւն եւ լրութիւն որքոյ առ 'ի նմանէն ընկալեալ՝ առատաձեռնութեամբ 'ի բոլոր մասունս պիտառութեանց. եւ ապա առ 'ի նմանէն յուղարկեալ չոգայ առ թագաւորն Հայոց Գագիկ ըստ միշտն հրաւիրման կոչման նորա։ Ասան զի հայրապետանց տունն հանդերձ գեղօք եւ գերդաստանօք առհասարակ ընդ ձեռամբ նո-

ւածեալ էր Նորայն , և մեք անդնանկ իմն վայրակացեալ[1], և ոչ ոք էր այն՝ որ գուն 'ի վերայ գործէր հոգւով չափ սակս նորոգ-ման մայրաքաղաք եկեղեցւոյն , և հոգեւոր մշակութեամբ հանդիսանայր , առ 'ի դար-ձուցանել զպերճութիւն Նոր Սիոնի . զի յայժմ ապականութիւն և լքումն լինէր ամենայն պա-տերազմաց ձեռին : Իսկ իմ եկեալ առ Թա-գաւորն Գագիկ , և նա ընդունէր ածէր և յանձնանձէր զմեզ ամենայն հոգեւոր սիրոյ հարազատութեամբ և հաստատուն հաւա-տով և աներկբայ յուսով . և աներկեւան սիրով պաշտպանեալ հանդերձ եղբարբն իւ-րով Գուրգենաւ՝ անկարօտ զհարկաւոր պէտս մարմնոյ լցուցանէր : Նա ապա զամբո-բական իմաստութիւնն քաղցրացուցեալ իւր աներկբայ մտօք յուսացուցանէր զմեզ , զի հոգւով չափ ջան 'ի միտ եդեալ հոգացի վասն գործի մերոյ 'ի բնակութիւնս մեր-մանաւանդ եթէ վասն խաղաղութեան ա-մենայն աշխարհի , և հաստատութեան սըր-բոց եկեղեցեաց , որպէս և քրիստոնէից իսկ կարգք պահանջեն ամբողջ զհաւատոյն սըր-բոց պահել զկօրութիւն . այլ այս երբ Տէր կամեսցի :

(1) Մէ օէ : վայրակեաց լեալ :

Բայց տատանօր ոստիկանն Նսր եկեալ 'ի Պարս ատրպատականէ. գայ չուէ ընդ կողմն Սիւնեաց սպայակոյտ մարտիկ զօրու հանդերձ։ Եւ վասն զի իշխանն Սիւնեաց Սմբատ 'ի սեփհական իւրում գաւառի անդ դարձեալ դադարէր 'ի Վայոց ձոր, 'ի Ճահ առնոյր ոստիկանն ըստ խոստորնակ մտացն՝ կամ ծածկաբար 'ի վերայ ընթանալ առ 'ի ըմբռնել զիշխանն, և կամ մարտամբօխ վառելովք վանել զնա առ 'ի գերել և յափշտակել։ Բայց իբրև ետես զնա յաւէտ ըզգուշացեալ բազում հեծելազօր գնդիւ եւ ամրոցօք եւս վայրիցն բադձաձեալ, այնուհետեւ խաղաղութիւն ընդ նմա խօսէր. և բազում օժտութիւն զիշխանէս Սմբատայ ընկալեալ, և յանձն եւս առեալ արձակել թողուլ զեղբարս նորա 'ի կապարանէ բանտին, և ինքն չուէ գնայ 'ի Դւինն քաղաք. և իսկ և իսկ առեալ զտարապարտ սակն պարտուց դահեկանաց 'ի կրտսերոյ եղբօրէ անուամբ Բաբկենի և արձակէ առաքէ զնա առ իշխանն Սմբատ։ Իսկ զՍահակ եղբայր նորուն դեռևս 'ի դիպահոյն թողեալ, մինչև առցէ 'ի նմանէ ևս զդահեկանացն պարտապանութիւն խոստման և ապա արձակեսցէ. և տայէ նըմա 'ի ձեռս զսեփհական տէրութիւնն իւր։

Բայց բնակիչք ամրոցին Բեղեայ իբրեւ
լուան զպատուհաս ոստիկանին, եւ 'ի միտ ե-
դին զայժմ մռմռումն զապառնութեանն առ
'ի նմանէն նոցա, զահի հարեալք եւ ահիւ ըմ-
բռնեալք, եւ կարծիս 'ի միտ եդեալ ան-
հաստատ խորհրդով՝ թէ գուցէ մատնեսցի
ամրոցն 'ի ձեռս ոստիկանին, եւ այնպէս ան-
հնարին տանջանաց եւ մահու մատնեսցին,
եւ տալ այսպիսի անզգուշալի երկիւղի
զանձինս տուեալ՝ ամենեքին բնաւին իսկ
ունայնացեալ լքին 'ի բաց զամրոցն 'ի բնակ-
չաց անտի: Եւ ապա զօրականքն զինուորացն
եւս եղեալ գնացին 'ի կամս անձանց զինչպի-
տութեան իւրեանց: Իսկ ոստիկանն յետ
երկեամ մի աւուրց իմացեալ զթափրանալ
ամրոցին 'ի բնակչաց անտի, յինքն գրաւէ
առնու եւ ընդ ձեռամբ նուաճէ առանց իմիք
աշխատութեան, եւ շուրջանակի զգեօղս եւ
զաւանս եւ զագարակս յիւր անուն պայա-
զատէ:

Այսուհետեւ մի բացածանօթացի թե-
րեւս 'ի մէնջ՝ յարակցեալ 'ի մեզ հունձք չար
մշակացս, որ մառախլապատ միգապատ պա-
շարմամբ զմեզ հնձէ. զի թէ ըստ սահմա-
նելումն (1) 'ի մեզ Ստեղծողին 'ի վեր յերկինս

(1) Մէ օր. սահմանեցելումն.

զհայեցուածս մեր պատրաստեալ էաք, և ան-
նմանութիւն կերպարանի աստացողին ընթա-
ցեալ, ապաքէն կեցուցանող զօրութեամբ
Տեառն փրկեալք լինէաք, և ոչ եւս մատ-
նեալք 'ի ձեռս թշնամեաց մերոց. այլ եւ
տապաստ եւս ոտիւք արկեալ զհակառակորդ-
սն, և տկարութեամբ աղաւաղեալ ընկե-
ցեալ յերկիր. եւ երանելի զմեզ 'ի վերայ
երկրի բազմաց քարոզեալ: Զի թէ ժողովր-
դեան իմոյ, ասէ, լուեալ էր ինձ, կամ Իս-
րայէլ զճանապարհս իմ գնացեալ էր. որպէս
զոչինչ մի (1) խոնարհ արարեալ էր իմ զթըշ-
նամիս նորա, և 'ի վերայ նեղչաց նորա ար-
կեալ էր զձեռն իմ: Այլ վասն զի բաւ կար-
գի պատճառաց եւ անանանց անձնոց երկրա-
պիշ եղեալք, եւ այսպէս 'ի մեզ խնքեան
ցուցաք զօրինակ պատկերին նմանութեան
Տեառն, վասն այնորիկ թշնամիք Տեառն
ատեցին մեզ. և յանտառաբոյծ խոզից եւ
յանցաւորաց ճանապարհի կոխեցաք. իբրեւ
զկաւ գռեհաց, և 'ի գլուխս մեր կուտե-
ցան քարինք ձորոյն Նաքովրայ:

(1) Մէ օէ. որպէս ոչինչ մի: Այլ օէ. զոչ մի ինչ:

Բանք ինքնուրոյն՝ սակս յիշատակի անուան իւրոյ։

Թագաւորք աստուածատէրք և բարեպաշտօնք, իշխանք և պետք և հրամանատարք Հայոց, եղբարք մեր և առաքեալք եկեղեցւոյ, և փառք Քրիստոսի, աղերս առաջի մատուցանեմ ձեզ զղխտառութիւն զայս բանի (1), զի իբրեւ ցուցող հայելի 'ի միտս անբասիրս սովաւ զձեզ հրաւիրեալ, և զյանդուգն և զանկարգ ձամարտակելն արտաքսած արտաքեալ, անպատուհաս ես մնացից յահեղ մրրկէ ատտի, և յահաւորին ալեացս փոփոխեցելոց և դիզացելոց 'ի վերայ Ընքանազեանս գրոհի։ Սարսափեալ զօփացեալ դողացաւ սիրտ իմ, զի միգօք աչաց խաղաց Տէր 'ի վերայ մեր սակս անօրէնութեանց մերոց։ Եւ վասն զի ցորդ ես յարակայեալ յուզումն անդնդապտոյտ ալեացն յորդութիւնք խորդութեանց, և ոչ հանդարտեաց, վասն այսորիկ ես բռնադատեցայ գալ յայս, և առնել տալ տաղնապեալ պատմութիւնս։ Նախ 'ի կրից սատի փութացեալ․ որ շուրջ պատեալ պաշարեաց զմեզ․ և ապա

(1) Մէ օրէ․ աղերս առաջի յեր զղխտառութեան զայս բանի մատուցանեմ։ Երկու օրէ․ աղերս առաջի ձեզ։

'ի հրամանէ Թագաւորաց 'ի վերայ հասեալ. որ զինս ճմլեալ բախեաց զիմաստիցս գործարան, և հաւանեցոյց ոչ ինչ գոլ ինձ յայսմիկ դանդաղելի։ Սակայն ոչ գրաւորական անձայն տառիւք միայն որ 'ի վեր քան զիս է՝ ձկտումն իրի զմտաւ ինչ ածեալ, այլ բոլորաձայն հնչմամբ հոգապատիւ աձայնիւ դարուց 'ի դարս զայս ձեզ աւանդեալ ուղղափառ իմացուածիւ, զի մի անհաւատութիւն ծերունեացն զրուցաց այլոց ամանց վէպս ինչ խարեալ(1) խղճիւ մտաց՝(2) կարօտ ձեզ կացուսցէ. այլ զի զաչս արձակեալ յարտադրութիւն բանիս մաքրական մտօք անբաղդատապէս 'ի մանաւոր ասացելոց առուի՝ տեսցի զկնի եկելոցն իւրաքանչիւրոցն անձնուրոյն զրուցաց ստուգագրութի ըստ ընթերցութեան հանդիսի բանիս։ Եւ այս ցայս վայր հերիքասցի։

Այլ ես այսուհետև 'ի մաղթանս առաջի ձեզ(3) ընթերցողացդ մատուցից. մի բերել ձեզ եւս վերստին յայս տեղի տանջանաց՝ յորս և այժմ առհասարակ թմբրեցաք 'ի

(1) Մի օրէ. և էր անի շէպաս խարեալ. որ հիմնաւոր ընդհա գնէ խարեալ։

(2) Ամենայն օրէ ամենին խղճի մտաց։

(3) Երէ+ օրէ. առաջի ձեր։

ձեր զհնի սպատրանաց պատրողին . վասն զի յերկոցունց կողմանց դարանակալ է սա-տակաց բազմութիւն, և մահ է բաժին ան-կելոցն 'ի ձեռս նոցա : Մ՛ի մերձիցէ ձեզ կար-ծեցեալ արեգական տունջենային, և կամ լու-սին գիշերոյ դիւամոլար խռովութեամբ, որ մերոյին բնութեանս կրիւք խաբեացն զմեզ և խաբէ . այլ զանց արարեալ զփաղաքշա-կան խորհրդովք անխորժից յողդողդելոցն, զի ճշմարիտ արեգակն արդարութեան ծա-գեսցի 'ի սիրտս ձեր սիրովն աստուածայնով: Մ՛ի քրէիքուր[1] փարուց չարութեամբ նուա-թեկեալք՝ ապաշաւեսջիք զուղիղ և զճշմարիտ զձեր փարս, և կախանս գաեհաց եղիջիք իբ-րեւ զաղն անհամեալ, այլ ողջ ամբողջ և անխախուտ մնասջիք 'ի պարսաւագրեն դըր-ժողէ, խնդութեամբ ժամանել 'ի նաւա-հանգիստ կենաց : Մ՛ի զպարծանս հարցն առաքինութեանց ձեզ բաւական վարկեալ; և 'ի նոյն ապաստանեալ, պղերգութեամբ անձանց 'ի վիհս խորափիտս ընկղմեսջիք . զի թէ հօր հմտաբար տեղեկութեամբ զեկա-վարեալ իցէ, զինչ օգուտ յայնմանէ որդւոյ թերիցի՝ եթէ 'ի նաւաբեկութեան կործանես-ցի . վասն զի ոչ ինչ շահ զհօրն հմտութիւ-

(1) Ցամենայն օրէ . քրէիւք :

Նորին կարծեմ լինել որդւոյ նաւաբեկութեան։ Մի՛ օտարացեալք եղիջիք ՚ի մօրէ, որ վերս-տին զձեզ ծնաւ նորոգութեամբ բանիւն կեն-դանականաւ ՚ի յոյսն կենդանի։ Մի՛ խաբի-ցիք յարգանդէ վրիպեցեալք, կամ թէ մեր-կացեալք յանձնմանէ լուսաւոր և փրկական զգեստուն, որով վայելչապէս զգեստաւորե-ցաք յարգանդէ աւազանին։ Մի՛ խոտեցիք ստութիւն՝ զառեալն երբեմն զչառեալ նան-բաւէս. համարեալ, և ժխտող լինել Որդ-ւոյն սիրելոյ աստուածական պատուականացն լեռնացելոց. այլ եռանդ.առէք պահել ջերմու-թեամբ հեռանալ յանձնմանէ՝ որ ինչ փառ-աւոր և հակառակ է հոգւոյ, և ՚ի բաց զմոլորութիւն տարերցս մնասցուք մերկանալ մաքուր մտօք։ Ո՛, յայտէս թերես և ՚ի սրով-բէականացն և երրեակ դասուց խորին խոր-հրդս թեւակոխեսջիք և դուք, և վեց-թեւեան երադաշարժ գործեօք իմն զօրհնա-բանականն ըստ սխոյս քաջանեսջիք. ո-տամբք (1) խուճապելով զսպիղ, ոչ և ս արժա-նի ըստ որում վարկեալ (2), և ոչ (3) զաչս ՚ի յերկինս ամբառնալ. իսկ այլովք ոտամբք վերշարժիլ ՚ի մշտնջենական փառաւորութիւ-

(1) Այլ ոմն օրի. ոտնէին՝ ոտամբք։ (2) Մի օրի. վարանեալ. (3) Երեք օրի. և որպէս զաչս։

նըս , ըստ պատահելոցն (1) պարագայութեանց ՚ի պաշտօն աստուածային փառացն ։ Որպէս հանդիսապէս արժանի գովելիք յետ սուրբ ժամադրութեան կենացս , մտանել յանկից խնանոյն սենեկական ընթրեացն ։ Ոչ ՚ի փոքր հացց ՚ի վայր բերեալ ըստ պայմանի խաւարոյ յաւուրըն ընտրութեան , այլ ամփոփաշու թեւօք սըլացեալք ՚ի վերին Սիօն՝ ՚ի հայցել զանեղութիւն Տեառն , ոչ միմեալ ծերայի վերջինել , և զյետայսն միայն տեսանել , այլ զբովանդակ նկարագիր փառացն Հօր դէմ յանդիման նկատել ։ Եւ զայժմու փոքր ՚ի շատէ խնդրամտութեանց զանց արարեալ՝ ծանօթք եղիջիք պատրաստական փոյթչութեանն . և յայնժամ զխոստմունքն՝ որպէս և նոյն ծանեաւ զձեզ (2) ։ Արդ այսքան քան ձեզ (3) բաւականացի . բայց անարժանս ես և հեղգ ապաշխաւս Յովհաննէս Նուաստ Կաթողիկոս Հայոց (4) աղաչանս առաքի մատուցանեմ ընթերցողացդ ձեզ և ըստողաց բանի պատմու-

(1) Երկր. օրի . վասահելոցն ։

(2) Երկր. օրի . յայնժամ զխոստմունքն եթէ որպէս նոյն ծանեաւ զձեզ ։

(3) Մի օրի . Ձեզ խոստովան բաւականացի ։

(4) Ամենայն ձեռագիր օրինակք յայս ձևէն զբանն՝ կաթողիկոս Հայոց աղաչեմ ։ Թող որ ենչ գիտեր գեղ աղաչանաց բանին եղեալ ըստ կիրն պատշաճութեանս ։

թեանս. արժանի յիշատակի զինս վարկանել անուն 'ի մաքրամատոյց նուիրական աղօթս ձեր. զի երկաքանչիւրոցս ինձ և ձեզ թերեւս և 'ի Տեառնէ տացի վարձս հատուցման յետնումն աւուր պայծառութեան նորա. որ է օրհնեալ միշտ և փառաւորեալ յամենայն արարածոց յաւիտենից յաւիտեանս. ամէն:



# ՅԱՆԿ ԳԼԽՈՑ

